



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 11
ՆՈՅԵՄԲԵՐ
1960 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՋԱԽՆԵՐԸ



### ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՁԱՅՆԸ

## СОДЕРЖАНИЕ



# ՏՈՆ ՄԱՔԱՌՄԱՆ, ԽԻԶԱԽՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿԻ

*Այս վեհացնող օրերին, երբ ստեղծագործ հայ ժողովուրդը պատրաստվում է ջերմ խանդաղատանքով տոնելու Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման քառասուներորդ տարելիցը, դժվար է առանց ծանր ապրումների գնահատել մեր վշտալի անցյալը։ Ակամա հիշում ենք այն մղձավանջային տարիները, երբ հայկական բնաշխարհը թպրտալով արյունաքամ էր լինում իմպերիալիստական գիշատիչների սարքած թակարդում։*

*Հայկական հա՜րց...*

*Որպիսի՜ դառն հեգնանք և կծու ծաղր հայ աշխատավորության պատմական բախտի նկատմամբ։ Արևմտյան գաղութարարների լկտիությամբ և քսու ու վարձկան հայ բուրժուազիայի անճարակությամբ հերյուրված քաղաքական այդ առասպելը որքա՜ն զոհեր խլեց դժբախտ հայությունից։ Ինչպե՞ս մոռանալ այն ահավոր չարիքները, որոնք թափվեցին Նաիրյան երկրի գլխին դաշնակ բախտախնդիրների մանդատ մուրալու «դիվանագիտության» հետևանքով։*

Ս ո՜ վ, ա վ ե՜ ր և մ ա՜ հ։

*Սա չէ՞ր հայ ժողովրդի վզին փաթաթած դաշնակցության բեմադրության վերջին գործողությունը, որը «Հայաստանի հանրապետություն» էր հորջորջվում։ Այդ իսկ օրերի մորմոքը չէ՞ր տանջում մեծանուն հայ պոետին, որը գրում էր.*

Հայրենիքում իմ արնաներկ
Գիշերն իջավ անլույս և լուռ.
Այնտեղ, ուր կար այնքան սիրերգ
Եվ վարդի բույր, և արտի հուր։
Ամեն մի միտք՝ հիմա մի վերք,
Ամեն հայացք հատու մի սուր,
Արնոտ դիերն են համր ու մերկ
Նայում երկինք անզոր ու զուր։

. . . . . . .

Ահա՝ որպես ծաղիկ բեկված
Մեր հին հոգին՝ համր ու մոլոր,
Ա՜խ, և՛ անզոր, և՛ անարգված...

*Նախասովետական վերջին տարիների այս ճշմարիտ նկարագիրը, որը նզովք և ատելություն էր բորբոքում տանջահար ժողովրդի սրտում կեղեքիչների հանդեպ, մի չառաչուն ապտակ էր իմպերիալիզմի համհարզ դաշնակցության անզգա երեսին։*

*Երկթև ճորտության կնիքը ճակատին՝ հայ ժողովուրդն իր ծանր հոգևարքն*

էր ապրում, երբ աշխարհով մեկ հնչեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթության ավետիսը։

Եկի՛ր, ում կյանքը անիծել է,
Ով նո՛րտ է, մե՛րկ է և սոտո՛ւկ։

Միանգամայն բնական է, որ աշխարհահաստատ հրդեհներում ծնված այդ կոչը ջերմ արձագանք պիտի գտներ շնչահեղձ հայ ժողովրդի սրտում։ Դրանից հետո նրա մարտական շարքերն ստվարացան, ռևոլյուցիոն սրտերը թունդ ելան։ Ունկնդիր լենինյան ավետաբեր կանչին, Հայաստանի աշխատավորներն իրենց շահերի միակ պաշտպան Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Սոցիալիստական Ռուսաստանի եղբայրական օգնությամբ 40 տարի առաջ, նոյեմբերի 29-ին տապալեցին բուրժուական իշխանությունը և երկրում սովետական սոցիալիստական կարգեր հաստատեցին։

Նոյեմբերի 29-ի նվիրական օրը դարերով կեղեքված հայ ժողովրդի վերջնական ազատագրության և պայքարի մեծ տոնն է։

Սովետական կարգերի հաստատմամբ հայ ժողովրդի բովանդակ կյանքի արմատական վերածնության հաստատուն հիմքերը դրվեցին։ Երկրում իշխող դարձավ աշխատավորական մասսան, ազատագրված աշխատանքի պաթոսը փառաբանող մեղեդին։ Ազատ մարդու ձեռքերը շաչյունին և թշվառների ողբ ու կականին փոխարինեց ազատ մարդու, ազատագրված աշխատանքի պաթոսը փառաբանող մեղեդին։

Միայն Սոցիալիստական ռևոլյուցիան քանդեց, այսպես կոչված, հայկական հարցի գորդյան հանգույցը։ Հայ ժողովրդի կյանքի ծաղկման համար ստեղծվեցին սոցիալ-տնտեսական բոլոր պայմանները։ Լիաթոք շնչելով կարմիր դրոշի ներքո, Հայաստանի աշխատավորական զանգվածներն իրենց անսպառ ստեղծագործական եռանդն ի սպաս դրին երկրի տնտեսության վերականգնման, կուլտուրական ռևոլյուցիայի ծավալման և սովետական նոր պետականության հաստատման պատմական գործին։

Այո՛, հայ ժողովրդի ազատագրության, նրա պատմական բախտի համար վճռական նշանակություն ունեցավ այն, որ ՌԿ(բ)Պ, հանձին իր առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի, քաղաքական, ռազմական և նյութական աջակցություն ցույց տվեց տակավին ռևոլյուցիոն խանձարանում գտնվող Սովետական Սոցիալիստական Հայաստանի կառավարությանը։

Կոնտրռևոլյուցիոն դաշնակցության կողմից նյութված քաղաքացիական արյունալի մարտերում ևս Հայաստանի բոլշևիկները փայլուն հաղթանակներ տարան։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման փառավոր քառասնամյակը՝ դա հայ ժողովրդի կատարյալ վերածնության տոնն է։ Փարելով Հոկտեմբերի ազատաբեր դրոշին, Հայաստանի աշխատավորները լենինյան ինքնորոշման սկզբունքի կիրառումով դարձան սովերեն, իրենց բախտը տնօրինող մարդիկ և, սովետական բոլոր ազգությունների եղբայրական դաշնադրության պտուղներից օգտվելով՝ ծաղկեցրին իրենց նոր, սոցիալիստական Հայրենիքը։ Մեր ռեսպուբլիկայի հոյակապ նվաճումների մեջ խոշոր լումա ունեն սովետական կարգեր հաստատած բոլոր ժողովուրդներն, առհասարակ, ռուս ժողովուրդը՝ հատկապես։

Ահա թե ինչու, հպարտությամբ կարող ենք ասել, որ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման քառասնամյա տոնը, դա միաժամանակ ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների խնդության օրն է։ Նշելով իր պատմական հաղ-



թության քառասուն տարին, հայ ժողովուրդն ըստ էության իմաստավորում և բարձր է գնահատում այդ օրը որպես իր բուն պատմության սկիզբը։

***

Հեռավոր Շվեյցարիայում բոցկլտացող լենինյան «Իսկրա»-ի ճաճանչները շուտով թափանցեցին Անդրկովկաս, լուսավորեցին և հայկական լեռնաշխարհի հովիտներն ու կիրճերը։ Սթափվեց կեղեքվող մասսաների «նիրհող» միտքը։ Մի խումբ լենինյաններ, Ստեփան Շահումյանի ղեկավարությամբ հիմնադրեցին «Հայ սոցիալ-դեմոկրատական բանվորական Միություն», որն արժանացավ Լենինի ջերմ հավանությանն ու աջակցությանը։

Առաջավոր և գիտակից աշխատավորները զինվորագրվեցին բոլշևիկների զորացող պարտիային։ Սա արդեն հայ աշխատավոր մասսաների սոցիալիստական գիտակցության հունկու զարթոնքն էր ազդարարում։ Բայց կռիվը դժվար էր, որովհետև տակավին նվազ էին երկրի պրոլետարիատի շարքերը։

Ռուսական առաջին ռևոլյուցիայի ալիքները հեղեղեցին և Հայաստանը։ Դասակարգային դաժան մարտերում կոփվեց և առնացավ Լենինի դրոշի ներքո համախմբված մարտիկների գունդը։ Համառ և հետևողական պայքար մղելով հայ իրականության մեջ գործող նացիոնալիստական-հակառևոլյուցիոն պարտիաների ու մտայնության դեմ, Հայաստանի լենինյանները կազմակերպեցին և ամրապնդեցին Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան. մի պարտիա, որն սկզբից ևեթ հանդիսացավ ՌԿ(բ)Պ փառապանծ ջոկատը, որը 40 տարի առաջ իր կազմակերպական մկրտությունն ստացավ։

Տոնելով Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասուն տարին, ռեսպուբլիկայի աշխատավորներն առանձին հրճվանքով նշում են նաև այդ կարգերի համար մղվող պայքարի ղեկավարի՝ Հայաստանի կոմունիստների հզոր բանակի գոյավորման և հաղթանակի 40-ամյակը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը, որի 43-րդ տարեդարձը մեծ բերկրանքով ու երախտագիտությամբ մեկ անգամ ևս նշեցին Հայաստանի աշխատավորները, մասսայական թափ հաղորդեց Հայաստանի կոմունիստական շարժմանը։ Մայիսյան ապստամբության գոռ մարտերում թափված ռևոլյուցիոներների արյամբ Հայաստանի կոմունիստները սրբագործեցին լենինյան վեհ գործի համար մղված պատմական կռիվը, ցույց տալով ժողովրդին վերջնական ազատագրման միակ ճանապարհը։

Մայիսյան ապստամբությունը որպես Հայաստանում սկսվող սոցիալական մեծ վերածնության փայլուն նախերգանք, որպես մեծ Հոկտեմբերի անմիջական արձագանք, արդար կովի մղեց աշխատավորական լայն զանգվածներին։ Լուրջ դասեր քաղելով ժամանակավորապես պարտված մայիսյան քաջամարտից, Հայաստանի կոմունիստները դիմագրավելով դաշնակցության վայրագություններին, արագորեն վերակազմեցին ու համալրեցին ռևոլյուցիոն գնդերը և քառասուն տարի առաջ իրենց երջանիկ կյանքի հիմքերը դրին։

Հանդիսանալով մեծ Հոկտեմբերի զավակը գաղութացված Արևելքի շեմքին, Սովետական Հայաստանը, ինչպես ՍՍՌՄ-ի մյուս ռեսպուբլիկաները, դարձավ ճնշված ժողովուրդներին ուղենիշ փարոս։

Սովետական կարգերի հաստատմամբ Կոմունիստական պարտիան ռես-

պուբլիկայում ձեռնամուխ եղավ սոցիալիստական արտադրական հարաբերու-
թյունների, սովետական նոր պետականության հաստատման, կուլտուրական
ռևոլյուցիայի ծավալման մեծ խնդիրների լուծմանը։ Սկսվեց ավելի դժվարին,
ավելի երկարատև մի մարտ հին աշխարհի, խավարի ու տգիտության, շահա-
գործողական կարգերից մնացած վարք ու բարքերի դեմ։

Երկրով մեկ ծավալելով մարքսիզմ-լենինիզմի վսեմ գաղափարների պրո-
պագանդան, կազմակերպորեն և քաղաքականապես ամրապնդելով սեփական
շարքերը՝ Հայաստանի Կոմունիստական պարտիան նո՛ր մեթոդներով և նո՛ր
ձևերով պայքար ընձեռեց սոցիալիզմի կառուցման համար։ Հետևելով մեծ
Լենինի պատգամներին, Հայաստանի կոմունիստները, գլխավորելով աշխա-
տասեր հայ ժողովրդի անսպառ եռանդը, կարճ ժամանակամիջոցում վերա-
կանգնեցին և յոթմղոնանոց քայլերով առաջ մղեցին ռեսպուբլիկայի էկոնոմի-
կան։ Բռնելով երկրի ինդուստրացման լենինյան ուղին, Հայաստանի բոլշևիկ-
ները վիթխարի քաղաքական և կազմակերպական ջանքեր թափեցին, ագրա-
րային հետամնաց երկիրը դնելով զրնգացող պողպատե ռելսերի վրա։

Ռեսպուբլիկայի ինդուստրացման տարիներին, երբ նոր կյանքի վիթխարի
օջախներ էին կառուցվում, երբ գյուղատնտեսության սոցիալիստական վերել-
քի և դասակարգային պայքարի սրման պայմաններում խոշոր դժվարություն-
ներ ծագեցին, Հայաստանի բոլշևիկները, հավատարիմ ՍՄԿՊ Կենտկոմի վարած
գլխավոր գծին, հետևողական պայքար մղեցին հակալենինյան հոսանքների
դեմ, մերկացրին ու ջախջախեցին սոցիալիզմի հաղթության նկատմամբ բոլոր
թերահավատներին և ֆրակցիոններներին։

Համաքայլ ընթանալով եղբայրական կոմունիստական պարտիաների հետ,
ՍՄԿՊ Կենտկոմի ղեկավարությամբ և անմիջական օգնությամբ, Հայաստանի
բոլշևիկները կարճ ժամանակում ստեղծեցին կուռ և մարտունակ մի պարտիա՝
ցեմենտված լենինյան միասնության մեծ գաղափարով։

Այդ խիստ պայքարում, զինվելով լենինյան մտքի հարուստ գանձարանի
զենքերով, կոմունիստները աճեցին գաղափարապես և անվարան առաջ մղե-
ցին մեր երկրում սոցիալիզմի կառուցման գործը։

Ընձեռելով երկրի ինդուստրացման հնգամյակների կատարման պատմա-
կան գործը, Հայաստանի կոմունիստներն ընթացան աներեր և համարձակ
ՍՄԿՊ-ի մշակած ուղիով. անօրինակ անձնազոհությամբ Հայաստանի կոմու-
նիստները վարեցին պայքարը բուրժուական աշխարհի վերջին մնացուկների
դեմ։ Հաղթահարելով բոլոր դժվարությունները, նրանք պատվով ավարտեցին
գյուղում սկսված մեծագույն ռևոլյուցիան՝ գյուղի արմատական վերափոխման
ռևոլյուցիան։ Ռեսպուբլիկայի 160 հազար մանր գյուղացիական տնտեսու-
թյունները միավորելով կոլեկտիվ տնտեսությունների մեջ, Հայաստանի կոմու-
նիստները պատմական հաղթանակ տարան։

Սովետական Հայաստանի նվաճումների թվին պետք է դասել այն, որ
հնգամյակների հաջող իրագործումով արմատապես փոխվեց արդյունաբերու-
թյան և գյուղատնտեսության պատկերը. արդյունաբերությունը ձեռք բերեց
լիակատար համաժողովրդական բնույթ, իսկ գյուղը սոցիալիզմի կառուցման
ճանապարհին պատմական հաջողությունների հասավ։

Հայաստանի Կոմունիստական պարտիան կարճ ժամանակամիջոցում
գաղափարապես և բարոյապես դաստիարակեց հայ աշխատավորությանը



լենինյան մեծ գաղափարների ոգով։ Եվ այդ ոգով էլ մեր ժողովուրդը դիմա-
գրավեց Հայրենական պատերազմի ծանր փորձություններին։

ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հետ մի անառիկ պատնեշ կազմած,
հայ ժողովրդի զավակները Հայրենական պատերազմի ռազմաճակատներում և
թիկունքում անթիվ սխրագործություններով իրենց խոշոր լուման մուծեցին
թշնամու պարտության գործում։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի քառասուն տարիները նշանա-
վոր են և նրանով, որ Ադրբեջանի և Վրաստանի եղբայրական կոմպարտիանե-
րի հետ ձեռք-ձեռքի, Հայաստանի կոմունիստները ակտիվորեն մասնակցեցին
Անդրկովկասի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Ֆեդերացիայի
ստեղծմանը։ Կամավոր կերպով մտնելով ՍՍՌՄ և Անդրֆեդերացիայի սոցիա-
լիստական ազգությունների ընտանիքում, Սովետական իշխանության տարինե-
րին հայ ժողովուրդը սովետական բոլոր ժողովուրդների հետ բարեկամության
և եղբայրության այնպիսի մի դաշն կռեց, որի մասին չի կարող երազել որևէ
ժողովուրդ բուրժուական հասարակարգում։ Եվ դա Հայաստանի Կոմունիստա-
կան պարտիայի թափած ջանքերի խոշորագույն արգասիքներից մեկն է։

Հանդիսանալով ՍՄԿՊ հավատարիմ ջոկատներից մեկը, անցած քառասուն
տարիներին Հայաստանի Կոմունիստական պարտիան աճել ու դարձել է խո-
շորագույն մի ուժ, շուրջ ութսունչորս հազար լենինյանների միասնական կազ-
մակերպություն, որն անշեղորեն վարում է մեր երկիրը կոմունիզմի կառուցման
ճանապարհով։

Անցած քառասուն տարիներին իր ազնիվ և անձնուրաց գործունեության
շնորհիվ, Հայաստանի Կոմունիստական պարտիան նվաճել է ռեսպուբլիկայի
աշխատավորության անսահման սերն ու համակրանքը։ Ուստի և պատահական
չէ, որ իր հարազատ պարտիայի կոչերին և մեծագույն ձեռնարկումներին ժո-
ղովուրդն արձագանքում է անհատնում ոգևորությամբ և նոր մեծագործություն-
ներով։ Ահա թե ինչու Հայաստանի Կոմունիստական պարտիայի ձևավորման ու
պայքարի քառասուն տարին մեր ժողովուրդը նշում է ցնծագին ոգևորությամբ։

***

Կովկասի կոմունիստներին հղած իր պատմական նամակում, Վ. Ի. Լենինը
խորհուրդ էր տալիս ամեն կերպ զարգացնել երկրի արտադրողական ուժերը
էլեկտրիֆիկացման հիման վրա, բարձրացնել հողագործության և անասնապա-
հության կուլտուրան, լավ հիմքերի վրա դնել ոռոգման գործը և բարելավել
ժողովրդի կենսամակարդակը։

Անցած քառասուն տարիներին մեծ առաջնորդի այս պատգամների անշեղ
իրագործմամբ, Հայաստանի Կոմպարտիան փայլուն քննություն բռնեց ռես-
պուբլիկայի զարգացումը վարելով հենց այդ ուղիով։ Առաջնորդի մատնանը-
շած խնդիրների լուծման համար նախ և առաջ անհրաժեշտ էր զարգացած ին-
դուստրիա և հզոր գյուղատնտեսություն։ Մի բան, որից Հայաստանը դեռևս
զուրկ էր 30-ական թվականներին։ Սակայն կարճ ժամանակամիջոցում, շնոր-
հիվ Հայաստանի կոմունիստների կատարած քաղաքական և կազմակերպա-
կան վիթխարի աշխատանքի, լուծվեցին և այդ խնդիրները. երկու հնգամյա

պլանների իրագործմամբ և գյուղի կոլեկտիվացմամբ ռեսպուբլիկայում սկսվեց սոցիալիզմի հզոր վերելքը։

Հիրավի, նայեցեք մեր ռեսպուբլիկայի քարտեզին և դժվար թե նրա վրա նշմարեք անցյալի մի եզր, որի հետ կարելի լիներ բաղդատել այսօրվա Հայաստանի ծաղկած էկոնոմիկան։ Ընդամենը չորս տասնամյակում մեր ռեսպուբլիկան տնտեսական-տեխնիկական առումով կտրեց և անցավ ավելի շատ ճանապարհ, քան անցել է կապիտալիստական ժամանակակից առաջավոր որևէ երկիր մեկ և կես դարի ընթացքում։ Գիտության նոր խոսքով կազմակերպված հսկա արդյունաբերություն, սոցիալիստական սկզբունքներով ամուր զոդված խոշոր գյուղատնտեսություն, առողջ և տաղանդավոր մի ժողովուրդ, որն իր փայլուն ապագան է կռում։ Այդպիսին է Սովետական Հայաստանն այսօր։ Այսպես է դիմավորում Հայաստանի աշխատավորությունը երկրում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման ու պայքարի փառավոր քառասնամյակը։

Դժվար է տվյալ դեպքում մեկ առ մեկ թվարկել ռեսպուբլիկայի վիթխարի նվաճումները։ Արդյունաբերության այնպիսի ճյուղեր, որպիսիք են՝ էներգետիկան, քիմիականը, մեքենաշինությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը, հաստոցաշինությունը և այլն, մեր ռեսպուբլիկան բարձրացրել են այնպիսի մի մակարդակի, որը նրա հարևան բուրժուական պետությունների նախանձն է շարժում։ Հայաստանի ինչպես ծանր, այնպես էլ թեթև արդյունաբերության արտադրանքը ոչ միայն իրացվում է ՍՍՌՄ ներքին շուկայում, այլև արտահանվում է արտասահմանյան շատ երկրներ։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը 1959 թվականին, 1913 թվականի համեմատ, աճել է ավելի քան 70 անգամ, իսկ 1940 թվականի առնչությամբ՝ 7 անգամ։

Մի՞թե կարելի է համեմատել այսօրվա ծաղկած լեռնային արդյունաբերությունը նախասովետական խղճուկ կոնցեսիաների մի քանի ձեռնարկությունների հետ։ Ղափանը և Ալավերդին այսօր դարձել են բարեկարգ քաղաքներ իրենց հսկայական արդյունաբերությամբ։ Քաջարանն ու Դաստակերտը հանդիսանում են մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության խոշոր օջախներ։

Բավական է նշել, որ 1959 թվականին ռեսպուբլիկայում գործել են 100 էլեկտրակայաններ, որոնց կարողությունը 195 անգամ գերազանցում է 1913 թվականի մակարդակը։ Ռեսպուբլիկայի արտադրությունն այժմ միավորում է 500-ից ավելի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ և կոմբինատներ։

Ահա և մեկ այլ խոշոր ապացույց մեր պատմական նվաճումների։ Անցյալ տարի մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը 1940 թվականի համեմատ, աճել է ավելի քան 2 անգամ։ 1940 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատում էր 34 458 մարդ, մինչ 1959 թվականին՝ 119 219 մարդ։ Այս մի քանի թվերում ցոլում է սովետական կարգերի վեհությունը, նրա անկապտելի հաղթանակը հնի հանդեպ։

Ի՞նչ է իրենից ներկայացնում նոր Երևանը։ Ճարտարապետական հոյակապ կոթողներով հարուստ մի արևաշող քաղա՞ք։ Ո՛չ միայն։ Հայ ժողովրդի դարավոր կուլտուրական գանձերի և նոր սոցիալիստական կուլտուրայի մի կենդանի թանգարա՞ն։ Ո՛չ միայն։ Երևանը հանդիսանում է Սովետական Հայաստանի մայրաքաղաքը, արդյունաբերության մեծ սիրտը, որն արյուն ու կյանք է տալիս ողջ ռեսպուբլիկային։ Իսկ Լենինակա՞նը, Կիրովակա՞նը։ Այս



քաղաքները ևս փարթամ աճելով Սովետական իշխանության տարիներին՝ իրենց արդյունաբերական արտադրանքով նշանակալի տեղ են գրավում մեր ռեսպուբլիկայի տնտեսական կյանքում։

Խոշոր արդյունաբերության ծավալուն բազայի հիման վրա միայն կարող էին բուռն կերպով աճել ու զարգանալ Հայաստանի քաղաքները, ավանները և գյուղերը։ Արդյունաբերության հսկայական աճի պայմաններում միայն կարող էր ծնվել և հասակ առնել նոր բանվոր դասակարգը, տեխնիկական ինտելիգենցիան՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան կերտողների այն պատկառելի բանակը, որով այսօր իրավամբ պարծենում է Հայաստանի մեղվաջան աշխատավորությունը։

Պատմական այս կարճ ժամանակամիջոցում որպիսի՜ մեծ առաջընթաց, որքա՜ն ոգևորիչ և հուզումնալի սխրագործություններով է լեցուն վերածնված Սովետական Հայաստանի տարեգրությունը. մի փառավոր տարեգրություն, որը գրված է ամբողջ ժողովրդի ձեռքով, Կոմունիստական պարտիայի անմիջական ղեկավարությամբ։

Կանցնեն տարիներ, և կոմունիզմ վայելող սերունդները խոր երախտագիտությամբ կհիշեն իրենց Հայրենիքի այս փառավոր օրը որպես կոմունիզմի մեծ պալատի կառուցման նախատոն։ Նրանք կհիշեն, որ մեր փոքր ժողովրդի մեծագույն սխրանքների համար մենք պարտական ենք ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդներին՝ ամենից առաջ ռուսական ժողովրդի մեծ օգնությանը։

Ապագա կոմունիզմի տարեգիրը չի մոռանա նշելու, որ Հայաստանի ժողովրդական տնտեսության վերջին տարիների անկանգ վերելքը բացատրվում է նրանով, որ Հայաստանի Կոմունիստական պարտիան անշեղորեն կիրառեց ՍՄԿՊ XX և XXI համագումարների ու պարտիայի լենինյան Կենտկոմի պլենումների որոշումները մեր կյանքի այրող հարցերի վերաբերյալ։ Արդյունաբերության կառավարման վերակառուցման և գյուղատնտեսության հզոր վերելքն ապահովող ՍՄԿՊ Կենտկոմի պատմական որոշումների կենսագործմամբ Հայաստանի աշխատավորները պատվով են կատարում յոթնամյա պլանի առաջադրանքները։ Ապագա կյանքի տարեգիրն անպայման կընդգծի, որ մեր ռեսպուբլիկայի տնտեսական արագ վերելքի պատճառներից մեկն էլ այն է, որ Հայաստանի աշխատավորությունը ջանքեր չի խնայում գործով պատասխանելու պարտիայի պատմական կոչին՝ ամենակարճ ժամանակամիջոցում շնչին հասանելիք արտադրանքի չափով հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Կոմունիզմի ապագա տարեգրքի առաջին գլուխը հարկավ նվիրված կլինի մեր կյանքի հիմքի՝ արդյունաբերության բուռն ծաղկման նկարագրությանը։ Այնտեղ մենք կկարդանք, թե ինչպես Հայրենական Մեծ պատերազմից հետո գործարաններն ու ֆաբրիկաները մեր ռեսպուբլիկայում աճեցին սունկերի նման։ Քառասնամյա տոնին Հայաստանի աշխատավորության 50 տոկոսը բնակվում է քաղաքներում։ Ռեսպուբլիկայի բանվորների և ծառայողների թիվը այս տարի հասավ 400 հազարի։ Իսկ դա երեկվա արորի երկրի համար աններևակայելի մեծ թռիչք է։

Ապագա պատմագիրը, ուսումնասիրելով մեր ռեսպուբլիկայի քառասնամյա հարուստ պատմությունը, անպայման կընդգծի Հայաստանի աշխատավորության բարօրության, նրա կուլտուրական և հոգեկան կարողությունների զար-

մանալի վերելքը։ Օրավուր բարձրանում է աշխատավորական մասսաների կենսամակարդակը, մարդիկ ապրում են բարեկեցիկ ու խնդալից կյանքով։ Աղքատությունն ու սովը, սոցիալական ու համաճարակային հիվանդությունները, հազարավոր որբերն ու արտագաղթը, որոնք բնորոշում էին նախառևոլյուցիոն Հայաստանը, շատ վաղուց անցյալ են դարձել։ Սովետական իշխանությունն ամեն տարի հարյուր միլիոնավոր ռուբլիներ է ծախսում ժողովրդի առողջապահության պահպանման, սոցիալական ապահովագրության, ժողովրդական կրթության ու ֆիզկուլտուրայի կազմակերպման վրա։ Աշխատավոր մարդն ունի բարձր վաստակ, ապահով ու հանգիստ ծերություն, աշխատանքային ամենակրճատ օրն աշխարհում։ Եթե նախառևոլյուցիոն շրջանում հայ աշխատավորը ցուպը ձեռքին ստիպված էր պանդխտություն գնալ՝ տարագիր հայրենի հողից, ապա միայն վերջին 15 տարում Հայրենիք են վերադարձել աշխարհով մեկ սփռված ավելի քան հարյուր հազար հայեր։

***

Սովետական կարգերի հաստատմամբ հայ ժողովուրդը ձեռք բերեց նոր պետականություն, մի հանգամանք, որը հույժ բարերար ազդեցություն ունեցավ հայ ազգի սոցիալիստական վերափոխության ընթացքի վրա, մեծապես նպաստեց նրա կոմունիստական նկարագրի ձևավորման, աշխատավորներին հանրակեցության կանոնների վարժեցման, հասարակական դասակարգերին՝ բանվորներին և կոլտնտեսական գյուղացիներին մեկ մեծ նպատակի ուղղությամբ առաջ մղելու գործում։

Անշեղորեն իրագործելով Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան, Սովետական պետական օրգանները, որպես ռեսպուբլիկայի աշխատավորության կամքի հարազատ թարգմաններ, մեծագույն դեր են խաղացել մեր Հայրենիքում կոմունիստական շինարարության ծավալման ասպարեզում։ Անցած քառասուն տարիներին ռեսպուբլիկայի աշխատավորների դեպուտատների Սովետները որպես ժողովրդի բարձրագույն իշխանության և դեմոկրատիայի մարմիններ, անսահմանորեն ամրացել ու կատարելագործվել են։

Սովետական պետականության ծաղկման դրական կողմերից է անշուշտ և այն, որ սոցիալիստական արտադրական հարաբերությունների տիրապետումով, ավելի սերտացավ Հայաստանի բանվորների և կոլտնտեսականների դաշինքը, որն, անկասկած, մեծապես նպաստեց հայ ազգի սոցիալիստական վերափոխության պատմական ընթացքին։ Սովետական պետական օրգանների ճկուն գործունեության, նրանց մասսայական աշխատանքի միջոցով մեր երկրում երկու և կես տասնամյակ առաջ վերացվեցին շահագործող դասակարգերի մնացորդները քաղաքում և գյուղում։

Հայաստանի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի պետական օրգանները՝ սկսած Գերագույն Սովետից և վերջացրած գյուղական և ավանային Սովետներով, իրենց փառավոր գործունեությամբ բազմիցս ապացուցել են, որ աշխարհի ամենադեմոկրատական և ամենաաշխատավորական իշխանությունը դա բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի շահերն արտահայտող Սովետներն են։ Սովետական իշխանությունն իր ուրույն օրենսդրությամբ, դատական և դատախազական մարմիններով, մայրենի լեզվով պետական գործերի վարմամբ, հասարակական բարիքների արտադրությամբ



և արդարացի բաշխումով հանդիսանում է ամենաինքնուրույնը և ամենասովետականը, որը երբևէ հայտնի է պատմությանը։

Ներգրավելով տասնյակ հազարավոր աշխատավորներին կոմունիզմի կառուցման վեհ գործում, անցած քառասուն տարիներին Սովետները հանդիսացել են մեր երկրի կառավարման, ժողովրդին կոմունիզմի ոգով դաստիարակելու անփոխարինելի օրգաններ։

Մեծ է և անգնահատելի Սովետական պետական օրգանների դերը բոլոր քաղաքացիներին սովետական հայրենասիրության և նոր իրավագիտակցության ոգով դաստիարակելու բնագավառում։ Պետական-հասարակական կյանքի մեծ և փոքր հարցերի ամենօրյա լուծման պրոցեսում սովորեցնելով յուրաքանչյուր խորհրդարանում երկիր կառավարելու բարձր արվեստը, իր կարճատև գոյության ընթացքում սովետական պետական դպրոցը առաջ է քաշել նոր, լենինյան տիպի գործիչների մի ակնառու սերունդ, մի սերունդ, որի վրա հենված Հայաստանի Կոմունիստական պարտիան հաջողությամբ կենսագործում է կոմունիզմի կառուցման ՍՄԿՊ մշակած հոյակապ պլանը։

Լենինյան ազգային քաղաքականության ուղն ու ծուծը՝ ՍՍՌՄ բոլոր ազգությունների փաստական (տնտեսական, քաղաքական և կուլտուրական) հավասարության հաստատումն էր։ Դարաշրջան կազմող այդ մեծ գաղափարի իրագործման քաղաքական և պետական լավագույն ձևը՝ ՍՍՌՄ և Անդրկովկասյան Ֆեդերացիայի կազմակերպումն էր։ Այդ իսկ ձևի շրջանակներում եղած համագործակցության հողի վրա հաղթահարվեց մեր ռեսպուբլիկայի թե՛ հետամնացությունը, և թե՛ անցյալից մնացած ազգային թշնամանքն ու անվստահությունը։ Եվ դա, հայ ժողովրդին բերած սովետական կարգերի ամենախոշոր և շոշափելի բարիքներից մեկն է։

Սովետական իշխանության քառասուն տարիներին վառ կերպով դրսևորվեց կառավարման սովետական սիստեմի խոշորագույն առավելություններից մեկը՝ կին աշխատավորների մասսայական ներգրավումը պետության կառավարման գործում։ Բավական է նշել, որ ռեսպուբլիկայի Սովետներում այժմ ընտրված են 7383 կին դեպուտատներ։ Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին մասնակից անելով երկրի սոցիալ-տնտեսական, կուլտուրական և օրինապաշտպանության հարցերի մշակմանն ու իրագործմանը, Սովետները հանդես են գալիս որպես բուն դեմոսի լավագույն ձգտումների հարազատ կիրառողները։

***

Իր հաստատման առաջին իսկ օրից Սովետական իշխանությունը ծավալուն պայքար կազմակերպեց տգիտության ու խավարի, անգրագիտության և անկուլտուրականության դեմ, նպատակ դնելով ստեղծել ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։ Կարճ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում վերացվեց անգրագիտությունը, երկիրը պատվեց դպրոցների խիտ ցանցով։ Այսօր ռեսպուբլիկայի մատաղ սերնդի դաստիարակությամբ են զբաղված 20500 ուսուցիչներ։ Սա մեծ նվաճում է հայ ժողովրդի համար։ Ռեսպուբլիկայի 11 բուհերը տասնյակ հազարավոր բարձրորակ կադրեր են պատրաստել մեր երկրի համար։ Ճարտարապետներ, ինժեներներ, քիմիկներ, մեխանիկներ, բժիշկներ, գյուղատնտեսներ և հարյուրավոր

այլ պրոֆեսիայի մարդիկ ակտիվորեն լծված են կոմունիզմի կառուցման գործին։ Տասնյակ հազարավոր մասնագետներ այսօր ավելորեն մասնակցում են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման բարդ պրոցեսին։

Գիտությունների Ակադեմիան ինստիտուտների և լաբորատորիաների պատկառելի ցանցով և գիտնականներով խոշոր դեր է խաղում երկրի բարգավաճման, մասսաների լուսավորության բնագավառում։ Ծաղկող գրականություն, թատերական բարձր արվեստ, ազգային կինեմատոգրաֆիա, խոշոր քայլերով առաջ ընթացող երաժշտություն, կերպարվեստ, կուլտուրայի համալսարաններ, օպերա և, վերջապես, ո՞ր մեկը թվել։ Սովետական Հայաստանի կուլտուրական կյանքն աննախընթաց հարուստ է և բազմաբեղուն, այն սքանչելի կերպով ծառայում է աշխատավորների հոգեկան աշխարհի կատարելագործման շնորհակալ գործին։

Քննադատորեն յուրացնելով հայ ժողովրդի անցյալի հարուստ կուլտուրան, սովետական կարգերի օրոք մասսաների համար և մասսաների ուժերով ստեղծվեց նոր, սոցիալիստական կուլտուրա։ Պատմության մեջ առաջին անգամ աշխատավորական լայն զանգվածները հնարավորություն ունեցան լիովին տիրապետելու կուլտուրայի բարիքներին։ Բավական է վերցնել ռեսպուբլիկայի թերթերի, ամսագրերի և գրքերի տիրաժը, որպեսզի հստակ գաղափար կազմել Հայաստանի աշխատավորության կուլտուրական մեծ վերելքի վերաբերյալ։ Ռեսպուբլիկայում լույս են տեսնում 64 ամսագիր, տեղեկագրեր և այլ պարբերականներ, մոտ 100 թերթ, տարեկան տպագրվում է ավելի քան 7 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով 1.168 անուն գիրք։ Հայաստանի աշխատավորները վաղուց ի վեր լիակատար հնարավորություն ունեն թե մայրենի, և թե ռուսաց լեզվով լայնորեն հաղորդակից լինելու համաշխարհային կուլտուրային, մարքսիզմ-լենինիզմի կլասիկների անմահ գործերին։ Սովետական իշխանության տարիներին Լենինի աշխատությունների տիրաժը կազմում է ավելի քան 2 միլիոն օրինակ։

Սովետական Հայաստանի աշխատավորությունն իր փառավոր տոնը դիմավորում է մի նոր և ավելի մեծ սխրագործությամբ։ Տասնյակ հազարավոր պատանիներ և երիտասարդներ մեծ ոգևորությամբ և անկեղծ ձգտումներով հավաքագրվում են ապագա կյանքը կերտող կոմունիստական աշխատանքի բրիգադաներում։ Նրանք այսօր արդեն սկսում են աշխատել և ապրել կոմունիստաբար։ Սա այնպիսի մի նվաճում է, որն արևի փայլով է պսակում Հայաստանում սովետական կարգերի հաստատման քառասնամյա տոնը։

Խաղաղասեր, տաղանդավոր և կոմունիզմի ոգով տոգորված Հայաստանի աշխատավորությունը, ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների ընտանիքում նորանոր սխրագործություններով կոմունիզմի մեծ պալատն է կառուցում։

Թող քառասնամյա տոնը խնդության նոր լիցք, ոգևորության մեծ ալիք և ստեղծագործական հուժկու թափ հաղորդի դեպի կոմունիզմ ընթացող Սովետական Հայաստանի աշխատավորությանը։

Թող հավերժ լինի Հայաստանի վրա բացված լենինյան դարի ջրալ առավոտը։

---

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՅԾԱՌ ԱՌԱՎՈՏԸ


**Ա. ՔՈՉԻՆՅԱՆ**

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի նախագահ


Հայաստանի աշխատավորները հսկայական ոգևորությամբ են դիմավորում իրենց պայծառ-ու բերկրալից տոնը՝ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը։

Պատմականորեն համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հայ ժողովուրդը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի և Սովետական Միության մյուս ժողովուրդների հետ եղբայրական համագործակցությամբ, հասավ այնպիսի պատմական հաջողությունների, որոնք արմատապես փոխեցին անցյալում հետամնաց, ճնշված ու թշվառացած երկրի կերպարանքը։

Այդ ժամանակաշրջանում կենսագործված քաղաքական, սոցիալիստական և տնտեսական վերափոխումները Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան առաջ մղեցին այնպիսի ռեսպուբլիկաների շարքը, որոնք ունեն զարգացած սոցիալիստական արդյունաբերություն, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն և առաջավոր, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա, ապահովեցին աշխատավորների կենսամակարդակի շեշտակի վերելքը։

Բուռն տեմպերով զարգացավ բազմաճյուղ սոցիալիստական արդյունաբերությունը, որը 1960 թվականին հասավ այնպիսի մակարդակի, որը 70 անգամ գերազանցում է 1913 թվականի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը։

Օգտակար հանածոների բազայի վրա լայնորեն զարգացավ գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը։

Բարձր տեմպերով զարգացան առաջին անգամ ստեղծված ծանր ինդուստրիայի այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը և, հատկապես, հաստոցաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն ու սարքաշինությունը, շինանյութերի արդյունաբերությունը, ինչպես նաև թեթև ու սննդի արդյունաբերությունը։

Անչափ աճեց էլեկտրաէներգիայի արտադրությունը, որ հիմնված է ռեսպուբլիկայի հիդրոռեսուրսների օգտագործման վրա։ Արդյունաբերության զարգացման համար էլեկտրական բազայի ստեղծման գործում վճռական դեր խաղաց բարձր-լեռնային Սևանա լճի դարավոր, հարուստ ջրային պաշարների օգտագործումը։ 1960 թվականին Հայկական ՍՍՌ-ում կարտադրվի ավելի

քան 2700 միլիոն կվտ ժամ էլեկտրաէներգիա 1913 թվականին արտադրված 5,1 կվտ ժամի դիմաց։ Էլեկտրաէներգիայի արտադրության աճը թույլ տվեց կենսագործել երկրի ինդուստրացման վիթխարի ծրագիրը, որպիսի հանգամանքն ապահովեց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի բազմակողմանի զարգացումը։

Բազմաճյուղ արդյունաբերության հզոր զարգացումը արմատապես փոխեց մյուս եղբայրական ռեսպուբլիկաների հետ Հայկական ՍՍՌ-ի տնտեսական կապերի բնույթը։ Եթե մինչև Սովետական իշխանության հաստատումը Համառուսաստանյան շուկայում Հայաստանից կատարված մատակարարումը ինչպես ապրանքների քանակի, այնպես էլ դրանց ասորտիմենտի տեսակետից խիստ աննշան էր, ապա այժմ Հայկական ռեսպուբլիկան մեծաքանակ արդյունաբերական արտադրանք է մատակարարում ո՛չ միայն մեր Հայրենիքի բոլոր տնտեսական շրջաններին, այլև արտասահմանյան շատ երկրների։ Ռեսպուբլիկայից արտահանվող արտադրանքների թվում կան ալյումին, մոլիբդենային կոնցենտրատ, սինթետիկ կաուչուկ, կալցիումի կարբիդ, պղնձարջասպ, մուլիտ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, մետաղահատ հաստոցներ և շատ այլ մեքենաներ, ճշգրիտ չափիչ և հրաչափական սարքեր, ավտոմոբիլների պահեստամասեր, հեծանիվներ, ժամացույցներ, շինանյութեր, բամբակյա, մետաքսյա և բրդյա գործվածքներ, տրիկոտաժ, գինի, կոնյակ, ծխախոտ և արտադրանքի այլ տեսակներ։

Հայաստանը մինչև 60 տեսակի արդյունաբերական արտադրանք է մատակարարում ավելի քան 36 արտասահմանյան երկրների։

Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքը բարձր տեմպերով է աճում նաև ներկայումս։ Ստեղծագործաբար ու հմտորեն կենսագործելով ՍՄԿԿ XXI համագումարի պատմական որոշումները 1959—1965 թվականներին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման մասին, Սովետական Հայաստանի աշխատավորները արդեն յոթնամյակի առաջին երկու տարում ապահովեցին արդյունաբերության համախառն արտադրանքի աճման այնպիսի տեմպեր, որոնք զգալիորեն առաջ են անցնում յոթնամյա պլանի նախատեսումներից։ Ըստ նախնական հաշիվների արդյունաբերական արտադրանքի աճման միջին տարեկան տեմպը 1959—1960 թվականներին կկազմի 12,1 տոկոս, յոթնամյա պլանով նախատեսված 8,4 տոկոսի դիմաց։

Զգալիորեն ավելացել է արդյունաբերության համախառն արտադրանքի բացարձակ աճը։ 1959—1965 թվականների ընթացքում նախատեսված աճի յուրաքանչյուր տոկոս իր բացարձակ արտահայտությամբ կրկնակի անգամ կգերազանցի 1952—1958 թվականների այդ ցուցանիշը։

Կոլտնտեսային կարգը, որն ամուր հիմք է ստեղծել գյուղատնտեսության արտադրողական ուժերի բազմակողմանի զարգացման համար, անցած ժամանակաշրջանում ապահովեց ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հզոր վերելքը։

Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացավ 22 տոկոսով։ Գյուղատնտեսական արտադրության մեջ արմատավորված են այնպիսի արժեքավոր կուլտուրաներ, ինչպես՝ շաքարի ճակնդեղը, ծխախոտը, խորդենին։ Խոշոր աշխատանքներ են կատարված ռեսպուբլիկայի ոռոգելի տարածությունների ընդարձակ-



ման ուղղությամբ։ Հայկական ՍՍՌ չորային կլիմայի պայմաններում այդ միջոցառումները ժողովրդատնտեսական հսկայական նշանակություն ունեն։ Զգալիորեն ընդարձակվել են կարտոֆիլի և պտղա-բանջարանոցային կուլտուրաների տարածությունները։ Խիստ ուշադրություն է հատկացվում կերային կուլտուրաների տարածության ընդարձակմանը, որը 1913 թվականին 4,4 հազար հեկտարից 1959 թվականին հասել է 117 հազար հեկտարի։ Ոռոգվող նոր հողերի ավելացման բազայի վրա գրեթե երեք անգամ ավելացավ այգիների տարածությունը և գրեթե 5 անգամից ավելի՝ պտղատու ծառատնկիների տարածությունը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը ներկայումս հագեցված է հզոր մեքենայական տեխնիկայով։ Նրա դաշտերում 1959 թվականին աշխատում էին 3900 տրակտոր, 1200 հացահատիկային կոմբայն և գյուղատնտեսական շատ այլ մեքենաներ այն ժամանակ, երբ նախառևոլյուցիոն Հայաստանում ամբողջ մշակությունը տարվում էր պրիմիտիվ գործիքներով։

Մեծ աշխատանք է կատարված անասունների ցեղը բարելավելու և մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Երկրի գյուղատնտեսության զարգացման գործում կարևոր էտապ հանդիսացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թ. Սեպտեմբերյան պլենումից հետո ընկնող ժամանակաշրջանը, երբ մեր ռեսպուբլիկայի աշխատավորների, ինչպես նաև երկրի ամբողջ գյուղական աշխատավորների առաջ խնդիր դրվեց ապահովել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքը, հաղթահարել ժողովրդական տնտեսության զարգացման ընդհանուր տեմպերից ետ մնալը այն հաշվով, որպեսզի լիովին ապահովվի բնակչության պահանջմունքը սննդամթերքների նկատմամբ, իսկ թեթև ու սննդի արդյունաբերության պահանջմունքը՝ հումքի նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումների և պարտիայի ու կառավարության հետագա որոշումների հիման վրա կենսագործված միջոցառումները թույլ տվեցին կարճ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում զգալիորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Գյուղատնտեսական հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնող անասնապահության մթերքների արտադրությունն այդ ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ-ում ավելացել է. մսինը՝ 80 տոկոսով, կաթինը՝ 89 տոկոսով, բրդինը՝ 76 տոկոսով և ձվինը՝ 175 տոկոսով, իրենց բացարձակ ցուցանիշներով գերազանցելով միութենական ցուցանիշների միջին մակարդակը։ Այդ նույն ժամանակաշրջանում երկուսուկես անգամ ավելացել է խաղողի և 38 տոկոսով՝ պտուղների ու մրգերի համախառն բերքը։ Աճեց նաև շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, կարտոֆիլի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների համախառն բերքը։

Գյուղատնտեսության բնագավառում ռեսպուբլիկայի ձեռք բերած հաջողությունները 1958 թվականին բարձր գնահատականի արժանացան պարտիայի և կառավարության կողմից։ Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և պետությանը բամբակի հումքի, շաքարի ճակընդեղի, հացահատիկի, մսի, կաթի և բրդի վաճառքի պլանները կատարելու և գերակատարելու համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1958 թվականի դեկտեմբերի 29-ի Հրամանագրով Հայկական ՍՍՌ-ն պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատավորները, ոգևորված ձեռք բերված հաջողություններով, ձեռնամուխ եղան գյուղատնտեսական մթերքների արտադրությունն է՛լ ավելի մեծացնելու համար ծավալված համաժողովրդական շարժմանը և հաջողությամբ կատարում են ստանձնած պարտավորությունները։

Ստանձնած պարտավորությունների ժամկետից շուտ կատարման համար մղած պայքարում կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, սովխոզների բանվորներն ու բանվորուհիները չտեսնված աշխատանքային ոգևորությամբ ու մեծ հաջողություններով են նշում Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը։

Պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառման 1960 թվականի յոթնամյա պլանը գերակատարվում է արտադրանքների բոլոր հիմնական տեսակների՝ մսի, կաթի, ձվի, բանջարեղենի, խաղողի և այլ մթերքների գծով, իսկ շաքարի ճակնդեղի և ծխախոտի հանձնումը ընթացիկ տարում հասնում է 1965 թվականի համար նախատեսված մակարդակին։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման բարձր տեմպերը պայմաններ ստեղծեցին ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման, կուլտուրայի ծաղկման համար։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի բնակչությունը ավելի քան կրկնապատկվեց։ 1959 թվականի հունվարի 15-ի մարդահամարի տվյալներով յուրաքանչյուր քառակուսի կիլոմետրին ընկնում է 59 մարդ, 1926 թվականի 29,6 մարդու դիմաց։

Ռեսպուբլիկայի էկոնոմիկայում կատարված հսկայական փոփոխությունները, առաջին հերթին, արդյունաբերական արտադրանքի աճը պայմանավորեցին քաղաքային բնակչության տեսակարար կշռի զգալի ավելացում. 1913 թվականի 10,4 տոկոսից 1959 թվականին այն հասավ մինչև 50 տոկոսի։ Նոր արդյունաբերական կենտրոնների ծագման հետ միասին երևան եկան նոր քաղաքներ ու քաղաքատիպ բնակավայրեր։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը 1960 թվականին հասնում է 400 հազարի, որն 8,5 անգամ ավելի է 1928 թվականի և 2,7 անգամ՝ 1940 թվականի մակարդակից։

Տարեցտարի աճում են բնակչության դրամական եկամուտները. միայն վերջին 5 տարում բնակչության եկամուտներն աճեցին 46 տոկոսով, այդ թվում բանվորների ու ծառայողների աշխատավարձը՝ 36 տոկոսով, կրկնապատկվել են կոլտնտեսականների եկամուտները։

Բնակչության նյութական բարեկեցության աճման, ինչպես նաև սպառման միջոցների արտադրության ավելացման բազայի վրա 1940 թվականի համեմատությամբ ավելի քան 4 անգամ մեծացել է մանրածախ ապրանքաշրջանառությունը։

Ժողովրդի բարեկեցության բարձրացումը հանրագումարի բերող կարևոր ցուցանիշ է հանդիսանում ազգային եկամտի աճը։ Վերջին տարիներս ազգային եկամտի միջին տարեկան աճը կազմել է 9 տոկոս։

Հաջողությամբ լուծվում է պարտիայի առաջադրած խնդիրը՝ բնակարանային շինարարությունը զարգացնել այն հաշվով, որ առաջիկա տարիներին վերացվի բնակտարածության նկատմամբ եղած պակասը։ Միայն 1956—1960



թվականներին ռեսպուբլիկայում կառուցված է երկու անգամ ավելի բնակելի տարածություն, քան կառուցվել էր նախորդ հնգամյակում։

Հսկայական աշխատանք է կատարված ժողովրդական առողջապահության բնագավառում։ Ռեսպուբլիկայում գործում են 261 հիվանդանոց և 1038 այլ բուժհիմնարկներ, 1913 թվականին եղած 35 բուժհիմնարկների դիմաց։

Ավելի քան 70 անգամ աճել է բժիշկների և 69 անգամ՝ միջին բժշկական անձնակազմի թիվը։ Մոտ 30 հազար երեխաներ ընդգրկված են նախադպրոցական հիմնարկներում՝ մանկապարտեզներում և մանկամսուրներում։

Անվիճելի են ռեսպուբլիկայի հաջողությունները էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր բնագավառներում, բայց սխալ կլիներ չհիշել մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «Մեծ ռևոլյուցիայի տարեդարձը տոնելու լավագույն միջոցը ռևոլյուցիայի չլուծված խնդիրների վրա ուշադրությունը կենտրոնացնելն է»։

Սոցիալիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի տարած համաշխարհային-պատմական հաղթանակները պայմաններ նախապատրաստեցին մեր երկրի անցման համար նոր կարևորագույն էտապի՝ Կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության էտապին։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի հաստատած յոթնամյա պլանը՝ արտադրողական ուժերի նոր հզոր զարգացման պլանը, ՍՍՌՄ-ում կոմունիզմի շինարարության պրակտիկ ծրագրի բաղկացուցիչ մասն է, մի ծրագիր, որ նախատեսված է 15—20 տարվա համար։ «Այդ հեռանկարային ժամանակաշրջանը իրենից ներկայացնում է ծրագրի բուն էությունն այն պայքարում, որ մղվում է մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման համար և որի կենսագործումը կնշանակի հիմնականում ավարտել Կոմունիստական հասարակարգի կառուցումը» (Ն. Ս. Խրուշչով)։

Ինչպես հայտնի է, այժմ մշակվում է ՍՍՌՄ և միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության գլխավոր հեռանկարային պլան։ Այդ ժամանակաշրջանում երկրի արտադրողական ուժերը պետք է այնպիսի զարգացման հասնեն, որ ապահովվի մարդու բազմակողմանի զարգացման համար անհրաժեշտ նյութական ու հոգեկան բարիքների առատությունը։

Այդ ծրագիրը նախատեսում է ամեն կերպ օգտագործել բնական բազմահարուստ ռեսուրսները, կենսագործել երկրի լիակատար էլեկտրիֆիկացում, հսկայական գիտա-տեխնիկական պրոգրես ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի է՛լ ավելի աճ և աշխատանքի բարձր արտադրողականություն։

Գլխավոր հեռանկարային ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացումը ընթանալու է ժամանակակից ինդուստրիայի արագ աճի, ռեսպուբլիկայի բազմահարուստ բնական ռեսուրսները խնտեսիվ կերպով տնտեսական շրջանառության մեջ ներգրավելու, ռեսպուբլիկայի ամբողջ տերիտորիայում արդյունաբերության տեղադրումը բարելավելու, տնտեսությունը կոմպլեքսային կերպով զարգացնելու, մյուս միութենական ռեսպուբլիկաների ու տնտեսական շրջանների հետ ռացիոնալ տնտեսական կապեր հաստատելու, համապետական նշանակություն ունեցող և աշխատանքի համամիութենական բաժանման մեջ ռեսպուբլիկայի դերը որոշող տնտեսության ճյուղերն ավելի արագ զարգացնելու ուղիով։

Արդյունաբերական արտադրանքի արտադրության բարձր և գերաճշող

աճը հեռանկարային պլանի առանձնահատկություններից մեկն է։ Յոթնամյա պլանով արդյունաբերության աճի միջին տարեկան տեմպերը հասնելու են 12,3 տոկոսի, անցած յոթ տարիների 11 տոկոսի փոխարեն։ Հետագայում արդյունաբերական արտադրանքի աճման տեմպերը է՛լ ավելի բարձր են լինելու։

Արդյունաբերության աճի նախատեսված բարձր տեմպերը պայմանավորվում են նաև ռեսպուբլիկայի աշխատանքային ռեսուրսների լիակատար ու ռացիոնալ օգտագործման խնդիրներով, հաշվի առնելով բնակչության բարձր բնական աճը։

Բնական ռեսուրսների ինտենսիվ և ռացիոնալ օգտագործման հետ միասին առաջիկա տարիներին կբարելավվի արտադրողական ուժերի տեղադրումը՝ թույլ զարգացած արդյունաբերություն ունեցող շրջաններում նոր արդյունաբերական ձեռնարկություններ ստեղծելու միջոցով։ 1959—1965 թվականներին ստեղծվելու են նոր արդյունաբերական կենտրոններ՝ ինչպես Հրազդանը, Լուսավանը, Էլառը, Ջոդը, Ագարակը, Արղնին, Ծաղկունքը. արդյունաբերական նոր ձեռնարկություններ են շահագործման հանձնվելու Դիլիջանում, Ստեփանավանում, Հոկտեմբերյանում, Սևանում, Իջևանում, Գորիսում, ինչպես նաև Թալինում և մյուս շրջաններում։ Այդ միջոցառումների հետևողական իրականացումը՝ հումքային ու աշխատանքային ռեսուրսների հաշվառումով հանդերձ, հնարավորություն կտա ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում ստեղծելու արդյունաբերական օջախներ։

Առաջնակարգ նշանակություն է ստանում ռեսպուբլիկայի էներգետիկ բազայի է՛լ ավելի զարգացումը և դրա գերակշռող աճի ապահովումը։ 1960 թվականին, Սևան—Հրազդան կասկադի կայանների կառուցումն ավարտելուց հետո, էներգետիկ բազայի ավելի բուռն զարգացումը կենսագործվելու է, գլխավորապես, ջերմային կայանների շինարարության հաշվին՝ որպես հիմնական վառելիք օգտագործելով էժան բնական գազը։ 1962 թվականին կսկսվի Տաթևի ԳԷՍ-ի շինարարությունը, որի առաջին հերթը շահագործման է հանձնվելու ընթացիկ յոթնամյակում։ Այնուհետև նախատեսվում է Որոտանի և Դեբեդի կասկադների շինարարությունը։

Ռեսպուբլիկայի համար կարևոր հարց է Սևանա լճի մակարդակի պահպանումը բնական պայմաններին մոտ բարձրության վրա։

Կոմպլեքսային միջոցառումների կենսագործումը հնարավորություն կտա 1965 թվականին զգալիորեն կրճատելու Սևանա լճի ջրերի բացթողումը։ Լճի ջրերի բացթողում կատարվելու է միայն ոռոգման համար։ Հետագայում, երբ իրականացվի Արփա գետի 300 միլիոն խոր. մետր ջրերի փոխադրումը Սևանա լիճ, մեծ չափով կբարելավվի Սևանի ջրերի հաշվեկշիռը։

Արդեն յոթնամյակի վերջում ռեսպուբլիկայի էլեկտրակայանների կարողությունը կավելանա 1,9 անգամ, իսկ հետագայում, վերոհիշյալ միջոցառումների կենսագործման շնորհիվ էլեկտրաէներգիայի արտադրությունը կաճի մի քանի անգամ։

Էլեկտրաէներգիայի արտադրության աճը նյութական հիմք կստեղծի երկրի համատարած էլեկտրիֆիկացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի էլեկտրազինվածությունը բարձրացնելու և կենցաղում էլեկտրաէներգիայի օգտագործումն ավելացնելու համար։

Արդյունաբերության արդեն գոյություն ունեցող ճյուղերի հետագա զարգացման հետ միասին պետք է ստեղծվեն նաև մի շարք նոր ճյուղեր, ինչպես՝



սև մետալուրգիան, ծանր մեքենաշինությունը, ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, սանիտարական-տեխնիկական սարքավորման արտադրությունը։ Նոր կազմակերպվող արտադրությունների շարքին պետք է դասել նաև ավտոմոբիլային և ապակե-ճենապակե-հախճապակյա արդյունաբերությունը, որը ներկայումս արտադրության խիստ աննշան ծավալ ունի։

Սև մետալուրգիայի զարգացումը պետք է հիմնվի վերջին տարիներս հայտաբերված երկաթի մեծ պարունակություն ունեցող երկաթահանքերի մշակման վրա։

Սև մետալուրգիայի արտադրանքների մեջ աչքի ընկնող տեղ է գրավելու հրակայուն նյութերի արտադրությունը։

Պղնձի, մոլիբդենի, ալյումինի և մագնիումի հումքի, հազվագյուտ ու ցրված տարրերի և ազնիվ մետաղների մեծ պաշարների առկայությունը որոշում է գունավոր մետալուրգիայի հետագա զարգացման մասշտաբները։

Յոթնամյակի միայն երկու տարում գունավոր մետալուրգիայի արտադրանքը Հայաստանում կավելանա 2,3 անգամ։ Կենսագործվելու է նոր ձեռնարկությունների՝ Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի, Ջոդի և Ագարակի կոմբինատների շինարարությունը, որը ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունի։ Նոր ձեռնարկությունների շինարարության, գործող ձեռնարկությունների վերակառուցման ու ընդլայնման հետ միասին միջոցառումներ են իրագործվելու մետալուրգիական պրոցեսների ինտենսիֆիկացման ուղղությամբ, որը հնարավորություն կտա բարձրացնելու մետաղի անջատումը կոնցենտրատները մշակելիս, ինչպես և կազմակերպելու արժեքավոր հազվագյուտ և ցրված տարրերի անջատումը։

Լայն մասշտաբներով շարունակվող հետազոտությունները ավելի ու ավելի են հաստատում այն արտադրանքի ժողովրդատնտեսական մեծ արժեքը, որն ստացվում է նեֆելինային սիենիտների մշակումից և լայն հեռանկարներ են բացում այդ բազայի վրա նոր արտադրությունների կազմակերպման համար։

Հեռանկարային ժամանակաշրջանի հիմնական խնդիրներից մեկը քիմիական արդյունաբերության արագացված զարգացումն է, որն ապահովում է ժողովրդական տնտեսության քիմիական նյութական հիմքը։

ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան (1958 թվականի) պլենումի որոշումների հիման վրա ընթացիկ յոթնամյակում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը կմեծանա 3,7 անգամ։ Քիմիական արդյունաբերության զարգացման հիմքում ընկնելու է բնական գազի օգտագործումը։

Քիմիական գիտության արագ պրոգրեսը, մի գիտություն, որը լայնացնում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում քիմիայի ներգործության ոլորտը, կպահանջի քիմիական արդյունաբերության զգալի աճ նաև 1965 թվականի համար սահմանված պլանից ավելի։ Աճելու է խեժանյութերի, պլաստմասսաների, մելամինի արտադրությունների կարողությունը։ Կազմակերպված է պլաստիֆիկատորների, քլորաօրգանական լուծիչների, ատամնավոր ռետինների, սինթետիկ թելերի նոր տեսակների և այլ նյութերի արտադրությունը։

Քիմիական արդյունաբերության առաջ լուրջ խնդիրներ են կանգնած պարարտանյութերի թողարկումն ավելացնելու և նոր պարարտանյութերի, հատկապես ֆոսֆորի, ազոտի և կալիումի զանազան միացություններ պարունակող

կոմպլեքսային պարարտանյութերի արտադրություն կազմակերպելու ուղղությամբ։

Կերակրի աղի մեծ պաշարները թույլ են տալիս կազմակերպելու քլորի, սոդայի, ինչպես նաև մի շարք քլորօրգանական միացությունների խոշոր չափերի հասնող արտադրություն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման մեջ հատուկ տեղ է հատկացվում մեքենաշինությանը, մի ճյուղ, որն առաջատար նշանակություն ունի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում և որը որոշում է սոցիալիստական ինդուստրացման հետագա զարգացումն ու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական մակարդակի բարձրացումը։ Յոթնամյակի ընթացքում մեքենաշինության համախառն արտադրանքը կավելանա 4,5 անգամ։ Արտադրության քանակական աճի հետ միասին կենսագործվելու են նաև էական որակական տեղաշարժեր, այնպիսի բարձր արտադրողական կոմպլեքսային ավտոմատիկ մեքենաներ ու տեղակայումներ ստեղծելու ուղղությամբ, որոնց գործադրումը հնարավորություն կտա մարդուն ազատելու ծանր, աշխատատար պրոցեսներից և զգալիորեն կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը։

Մեքենաշինության առանձին ճյուղերից հետագայում լայնորեն կզարգանան էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն ու սարքաշինությունը, ռադիոտեխնիկական, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությունը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացումը կենսագործվելու է այն հաշվով, որ բոլոր հին սերիայի էլեկտրատեխնիկական արտադրանքները փոխարինվեն առավել ժամանակակից արտադրանքներով, թողարկվեն կենսահաղորդիչների կիրառում ունեցող կոմպլեկտային արտադրանք, թուլահոսանքային ռելեներ, անկոնտակտ տարրեր և բանեցումը կարգավորող հարմարանքներ, նվազեցնելով գաբարիտները և բարձրացնելով հուսալիությունն ու մաշտակայունությունն աշխատանքում, ստեղծվեն ջերմակայուն կաբելներ, ընդլայնվի էմալապատ հաղորդալարերի ասորտիմենտը, լայնորեն կիրառվեն պլաստմասսաները՝ որպես սև ու գունավոր մետաղների փոխարինիչներ, զգալիորեն ընդլայնվի կենցաղային էլեկտրական մեքենաների, սարքերի ու տեղակայման արտադրանքների ծավալը։

Ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման համար էական բազա կհանդիսանա գունավոր ու քիմիական արդյունաբերության արտադրանքը, ինչպես նաև 1966 թվականի համար նախատեսվածից ավելի էլեկտրա-տեխնիկական պողպատի արտադրության կազմակերպումը։

Յոթնամյակի ընթացքում սարքերի ու ավտոմատացման միջոցների թողարկման համար ռեսպուբլիկայում ստեղծվող բազան նախադրյալներ կընձեռի հետագայում ևս սարքաշինությունը բուռն կերպով զարգացնելու համար։

Յոթնամյակի ընթացքում սարքաշինության համախառն արտադրանքը կաճի 6,8 անգամ, իսկ յոթնամյակից հետո այդ ճյուղի զարգացումը որոշվելու է բարձր ճշգրտության էլեկտրաշարժիչ սարքերի նկատմամբ հարաճուն պահանջով և ժողովրդական տնտեսության մեջ արտադրական պրոցեսների ավելացող ավտոմատացման շնորհիվ չափվող մեծությունների առավելագույն ընդլայնված շրջանակներով։

Սարքաշինության հաջող զարգացումը ապահովվում է ռեսպուբլիկայում



ունեցած հազվագյուտ մետաղների և ցրված տարրերի հարուստ հումքային պաշարներով, որը հնարավորություն է տալիս սարքաշինության մեջ կիրառելու կիսահաղորդիչ նյութեր և դիէլեկտրիկներ։

Զգալիորեն զարգանալու է նաև ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, որի արտադրանքը լայնորեն կիրառվելու է ո՛չ միայն ռեսպուբլիկայի, այլև Միության այլ տնտեսական շրջանների սարքաշինության արտադրանքի կոմպլեկտավորման մեջ։

Հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությունը, որի համախառն արտադրանքը յոթնամյակում ավելանալու է 8 անգամ, զարգանալու է բարձր ճշգրտության ու բարդության ավելի կատարելագործված հաստոցների խմբերի արտադրության, ինչպես նաև հաստոցների սերիական և խոշոր սերիական ունիֆիկացված արտադրանքի մասնագիտացված արտադրության ուղղությամբ։

Էլ ավելի է զարգանալու արտադրության մասնագիտացումը և ըստ կոոպերացիայի՝ ձուլվածքների, կռվածքների, դրոշմների, պլաստմասսաների և այլ արտադրանքների մատակարարման ծավալի ավելացումը։

Բազմատեսակ և բարձրորակ պարարտանյութերի հումքի անսահմանափակ ռեսուրսները, ինչպես, մի կողմից՝ մետալուրգիայի և քիմիական արդյունաբերության արտադրանքի աճումը և, մյուս կողմից՝ կապիտալ շինարարության հարաճուն ծավալը, կանխորոշում են ռեսպուբլիկայում ինչպես սեփական, այնպես էլ երկրի մյուս տնտեսական շրջանների կարիքների համար շինարարական նյութերի արդյունաբերության զարգացման մասշտաբները։ Այդ ճյուղերի զարգացման մեջ գլխավորը պետք է հանդիսանա արտադրանքի այնպիսի տեսակների թողարկման աճը, որոնք կապահովեն շինարարության մեթոդների արմատական փոփոխությունը և, վերջին հաշվով, լրիվ կկենսագործվի հավաքովի շենքերի ու կառույցների եղանակը և կթեթևանա դրանց կշիռը։ Առաջին հերթին նկատի են առնվում ցեմենտը և հավաքովի երկաթբետոնը, որոնց արտադրությունը շեշտակիորեն աճում է։

Զգալիորեն կավելանա ասբեստ-ցեմենտի խողովակների, ջնարակված կերամիկ սալիկների, սանիտարական-տեխնիկական հախճապակու, պլաստմասսաներից ու ապակե պլաստմասսաներից պատրաստված շինարարական դետալների և այլ արտադրանքների արտադրությունը։

Ապակյա արտադրանքներ սպառող արդյունաբերության ճյուղերի աճման հեռանկարները, շինարարության կարիքներն ու բնակչության աճող պահանջմունքները անհրաժեշտ են դարձնում հարուստ հումքային ռեսուրսների՝ պեմզա-կվարցային ավազի, կվարցիտների, պեռլիտների և այլ հանքատեսակների բազայի վրա զարգացնել ապակու և ճենապակու արդյունաբերությունը։

Հաջողությամբ կենսագործելով Կոմունիստական պարտիայի գլխավոր գիծը՝ տեխնիկական պրոգրեսն ամեն կերպ զարգացնելու վերաբերյալ և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումներն այդ հարցի առթիվ, ռեսպուբլիկայում զգալիորեն կզարգանա արտադրական պրոցեսների կոմպլեքսային ավտոմատացումը, ինչպես արտադրության բոլոր ճյուղերում նոր, ավելի պրոգրեսիվ տեխնոլոգիայի մշակումն ու արմատավորումը։

Թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերի զարգացումը կոչված է աշխարհում ամենաբարձր մակարդակով բավարարելու մեր բնակչության պահանջմունքները գործվածքեղենով, հագուստով, կոշիկներով, ինչպես նաև

սննդամթերքներով։ Թեթև արդյունաբերության արտադրանքի աճը գլխավորապես հիմնվելու է քիմիական հումքի վրա։ Վերամշակվող հումքի ընդհանուր ծավալի մեջ արհեստական և սինթետիկ մանրաթելի հեռանկարային տեսակարար կշիռը կհասնի 56 տոկոսի՝ ներկայիս 14 տոկոսի դիմաց։

Սննդի արդյունաբերությունը կզարգանա գյուղատնտեսական արտադրանքի՝ մսի, կաթի, խաղողի, պտուղների, բանջարեղենի, շաքարի ճակնդեղի, խորդենու, ծխախոտի արտադրության աճման բազայի վրա։ Ավելի մեծ ուշադրություն է դարձվելու գինեգործական արդյունաբերության վրա, որի արտադրանքը արժանի փառք է նվաճել Հայաստանի սահմաններից շատ հեռու։

Վերջին տարիներս Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ձեռնարկել են մի շարք միջոցներ, որոնք ուղղված են գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքին։ Պարտիայի և կառավարության որոշումների համաձայն ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացումը հիմնականում պետք է ընթանա խաղողագործության, պտղաբուծության և անասնաբուծության, ինչպես նաև բանջարեղենի ու տեխնիկական կուլտուրաների արտադրության ավելացման ուղղությամբ։ Զարգացման այդ ուղղությունը համապատասխանում է գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման խնդրին՝ ըստ ռեսպուբլիկայի առանձին զոտիների բնական ու տնտեսական պայմանների և որոշում է ռեսպուբլիկայի մասնագիտացումը ընդհանուրմիութենական տնտեսության մեջ։ Անասնաբուծության զարգացումը ընթանալու է մսի, կաթի, ձվի, բրդի արտադրության աճման տեմպերն ապահովելու և բնակչության կողմից անասնապահական մթերքների սպառումը ավելացնելու ուղղությամբ։

Խաղողի ու պտուղների արտադրության ընդլայնման խնդիրը պետք է լուծվի այն հաշվով, որպեսզի ռեսպուբլիկայի բնակչության թարմ մրգերի պահանջմունքները լիովին բավարարելու և բարձրորակ գինիների, կոնյակների ու պահածոների թողարկումն ավելացնելու հետ մեկտեղ ապահովվի թարմ խաղողի ու պտուղների արտահանումը մյուս միութենական ռեսպուբլիկաները։

Ռեսպուբլիկայի սահմանափակ հողային ռեսուրսների պայմաններում հատուկ նշանակություն է ստանում այն, որ ներկայումս չօգտագործվող հողերը շրջանառության մեջ մտցնելու հաշվին ընդարձակվեն օգտագործելի հողատարածությունները։ Ներկայումս ռեսպուբլիկայի ընդհանուր հողատարածության միայն 45 տոկոսն է օգտագործվում գյուղատնտեսության մեջ, մնացած տարածությունը ըստ ռելյեֆի կամ հողի անպետք է, կամ պահանջում է նախնական լուրջ մելիորացիա՝ գյուղատնտեսական շրջանառության մեջ մտցվելու համար։

Գյուղատնտեսության ինտենսիֆիկացման կարևորագույն պայմանը ոռոգումն է։ Այդ պատճառով էլ հեռանկարային պլանում էական տեղ է հատկացվում ոռոգիչ սիստեմի շինարարությանը։ Յոթնամյակի ընթացքում ոռոգելի հողերի տարածությունը կավելանա 38000 հեկտարով, իսկ ջրարբի արոտավայրերի տարածությունը՝ 180 հազար հեկտարով։ Ջրային տնտեսության գծով կիրառվելիք հետագա այն միջոցառումները, որոնք ուղղված են ռեսպուբլիկայի ջրային ռեսուրսների լիակատար օգտագործմանը, հնարավորություն կտան ընդհանուր հողային բալանսում զգալիորեն բարձրացնելու ոռոգվող ու ջրարբի հողատարածությունների տեսակարար կշիռը և կայուն պայմաններ ստեղծելու հողօգտագործման համար։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարևորագույն խնդիրը մնում է



բերքատվության բարձրացումը և գյուղատնտեսական կուլտուրաների համախառն բերքի ավելացումը, ինչպես նաև զարգացող անասնաբուծության համար կերի կայուն բազայի ստեղծումը։ Այդ նպատակով պետք է միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս կենսագործվի հողատարածությունը և գյուղատնտեսությունը վարելու կուլտուրան բարձրացնելու գիտականորեն հիմնավորված սիստեմների արմատավորման ուղղությամբ։ Այդ միջոցառումների սիստեմում առաջնակարգ տեղ է հատկացվում հանքային և օրգանական պարարտանյութերի լայն օգտագործմանը և ամենուրեք ցանքաշրջանառության արմատավորմանը։

Հողային ռեսուրսների սահմանափակվածության պատճառով ռեսպուբլիկան լայն հնարավորություններ չունի անասունների գլխաքանակը զգալի չափով ավելացնելու։ Գյուղատնտեսական հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնող անասունների գլխաքանակով Հայաստանը հենց այժմ էլ երկրում գրավում է առաջին տեղերից մեկը։ Ուստի հիմնական ուշադրությունը պետք է դարձնել անասունների մթերատվության բարձրացման վրա, միաժամանակ ավելացնելով անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում և սովխոզներում։

Գյուղատնտեսության մեջ ներկայումս կարևոր նշանակություն են ստանում աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի մեկ միավորի արտադրության վրա ընկնող ծախսերի կրճատման հարցերը։ Գյուղատնտեսական արտադրանքի իջեցումը վճռական օղակներից մեկն է ժողովրդի բարեկեցության բարձրացման վերաբերյալ Կոմունիստական պարտիայի լայն ծրագրի կենսագործման մեջ, որովհետև դրանումն է գյուղատնտեսական մթերքների գների իջեցման ռեալ հնարավորությունը։ Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պայմանը գյուղատնտեսական արտադրության էլ ավելի մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումն է։

Եթե ռեսպուբլիկայում ներկայումս դաշտավարության առանձին պրոցեսների (վարի, բամբակենու, շաքարի ճակնդեղի և այլ կուլտուրաների մշակման) մեքենայացման մակարդակը բավականաչափ բարձր է, ապա անասնաբուծության մեջ դեռևս գերակշռում է ձեռքի աշխատանքը։ Կոլտնտեսությունների միայն աննշան տոկոսն ունի մեքենայացված ջրամատակարարում ու ներֆերմային տրանսպորտ։ Կոլտնտեսություններում համարյա չի կիրառվում կովերի մեքենայացված կիթը։ Բավականաչափ մեքենայացված չէ նաև սովխոզների անասնաբուծական ֆերմաներում կատարվող աշխատանքը։ Հենց այդ նպատակով էլ հեռանկարային ժամանակաշրջանում նախատեսվում է անասնաբուծական ֆերմաներում լայնորեն մեքենայացնել աշխատատար պրոցեսները, որը հիմնականում պետք է կատարվի էլեկտրական էներգիայի օգտագործման միջոցով։

Հայկական ՍՍՌ-ի առաջ բացվում են լուսավորության, գիտության, առողջապահության և կուլտուրայի բուռն ծաղկման մեծ հեռանկարներ։ Կոմունիստական պարտիան անդադրում կերպով հոգ է տանում աշխատավոր մասսաների, հատկապես դեռահաս սերնդի կոմունիստական դաստիարակության համար։ Մեր պատանեկության համար զգալիորեն լայնացվելու է գիշերօթիկ դպրոցների, երկարացված օրվա դպրոցների, նախադպրոցական հիմնարկների ցանցը։ Այդ բոլոր միջոցառումները նպատակ ունեն կատարելագործելու ժողո-

վրդական կրթության սիստեմը և ամրապնդելու դպրոցի կապը կյանքի հետ։

Հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը յոթնամյակի ընթացքում համարյա կրկնապատկվելու է։ Ութամյա ընդհանուր պարտադիր ուսուցման ծրագրի կենսագործումից հետո արտադրական ուսուցման միջնակարգ դպրոցների, բանվոր երիտասարդության երեկոյան (հերթափոխային) դպրոցների և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների զարգացման միջոցով պայմաններ են ստեղծվելու ընդհանուր միջնակարգ կրթությունն ապահովելու համար։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում կարևորագույն դեր է պատկանում գիտությանը։ Այդ պատճառով էլ զգալիորեն աճելու է գիտական հիմնարկների ցանցը, ինչպես նաև այն ուսումնական հաստատությունների ցանցը, որոնք որակյալ կադրեր են պատրաստում ժողովրդական տնտեսության, գիտության բոլոր ճյուղերի համար։

Պետությունը հսկայական միջոցներ ու նյութական ռեսուրսներ է առանձնացնում ժողովրդական առողջապահության հետագա զարգացման, բժիշկների և միջին բժշկական անձնակազմի պատրաստման համար։ Յոթնամյակի ընթացքում հիվանդանոցային շինարարության մեջ կապիտալ ներդրումները կաճեն մոտ 3 անգամ։

Սովետական Հայաստանի աշխատավորները լայնորեն և մեծ հանդիսավորությամբ նշում են իրենց պայծառ ու բերկրալից տոնը՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի քառասնամյակը։ Ոգևորված Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարությամբ, տնտեսության և կուլտուրայի բնագավառում ռեսպուբլիկայի նվաճած վիթխարի հաջողություններով և ոգեշնչված ռեսպուբլիկայի զարգացման է՛լ ավելի սքանչելի հեռանկարներով, քաղաքի ու գյուղի աշխատավորները վստահությամբ են նայում դեպի իրենց ապագան։

Հայաստանի աշխատավորները լի են վճռականությամբ՝ սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրում կառուցելու կոմունիզմի հոյակապ շենքը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ԵՐԹԸ


ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար


Բոլորում է Սովետական Հայաստանի 40 տարին։ Պատմականորեն դա համեմատաբար փոքր ժամանակամիջոց է։ Բայց եկե՛ք մի հետադարձ հայացք գցենք անցած քառասնամյա ուղու վրա, խորամուխ լինենք և տեսնենք, թե ինչ կար մինչև ռևոլյուցիան, և մեր ռեսպուբլիկան Սովետական իշխանության քառասուն տարում ինչպիսի թռիչք է կատարել էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդ Սովետական Հայաստանը նախկին ցարական աղքատ ու հետամնաց ծայրամասից 40 տարում վեր է ածվել բարձր զարգացած արդյունաբերություն, գյուղատնտեսություն, գիտություն և առաջավոր կուլտուրա ունեցող ծաղկուն ռեսպուբլիկայի։

Այդ բանը հնարավոր դարձավ միայն Սովետական իշխանության օրոք, հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարության, հայրական հոգատարության և օգնության շնորհիվ, մեր բազմազգ սոցիալիստական Հայրենիքի եղբայրական ժողովուրդների և, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի լենինյան բարեկամության ու անշահախնդիր օգնության շնորհիվ։

Սովետական Հայաստանի աշխատավորների, ինչպես և մեծ Սովետական Միության եղբայրական բոլոր ռեսպուբլիկաների աշխատավորների խոշորագույն հաջողություններն ու նվաճումները մեր հարազատ Կոմունիստական պարտիայի գլխավոր գծի իսկական տրիումֆն են, նրա իմաստուն լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։

Այս հոդվածում մեր առջև խնդիր ենք դրել համառոտակի պատմել ռեսպուբլիկայի արդյունաբերության անցյալի, ներկայի և առաջիկա հեռանկարների մասին, ցույց տալ Սովետական Հայաստանի ինդուստրիալ առաջընթացը։

***

1913 թվականին՝ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի նախօրյակին, Հայաստանի տերիտորիայում ժամանակակից իմաստով արդյունաբերություն, առհասարակ, չկար։ Հայաստանի, ինչպես և բուրժուա-կալվածատիրական ցարական Ռուսաստանի մյուս հարստահարված

ժողովուրդների էկոնոմիկան գտնվում էր չափազանց ցածր մակարդակի վրա։

Այն ժամանակ արդյունաբերությունը կրում էր պրիմիտիվ, տնայնագործական-արհեստագործական բնույթ։ Այն բաղկացած էր՝ գինու-կոնյակի, բամբակազտիչ, մետաղամշակման, կաշվի և մի քանի այլ ձեռնարկություններից, որտեղ տիրում էին տնայնագործությունը և, հիմնականում, ձեռքի աշխատանքը։

Այն տարիներին աչքի էին զարնում Ալավերդու և Ղափանի պղնձահանքերը։ Բայց այն ժամանակ ռեսպուբլիկայի բնական այդ հարստությունները գիշատչորեն շահագործվում էին օտարերկրյա կոնցեսիոներների կողմից։ Կապիտալիստները, կորզելով մեր հարստությունները, ամենևին հոգ չէին տանում աշխատավորների բարօրության մասին։ Թե՛ Ալավերդու, և թե՛ Ղափանի հանքերում այն ժամանակ մեքենայացման նշույլ իսկ չկար, ուստի և ոչ միայն շատ երկար էր աշխատանքային օրը, այլև վերին աստիճանի ծանր էր բանվորների աշխատանքը։

Պատերազմը և դաշնակների տիրապետությունը է՛լ ավելի մեծ չափով քայքայեցին երկրի էկոնոմիկան։ Այսպիսով, Սովետական Հայաստանը դաշնակների ռեժիմից ժառանգեց ըստ էության չգործող ձեռնարկություններ, հեղեղված հանքահորեր։ Առանց այն էլ քայքայված տնտեսության վիճակը է՛լ ավելի վատթարացավ 1921 թվականի դաշնակցական ավանտյուրայի հետևանքով։

Աղքատություն, սով, անգրագիտություն. ահա թե հայ ժողովրդին ինչ թողեցին դաշնակները, որոնք եղել ու մինչև այժմ էլ մնում են իմպերիալիստների հավատարիմ գործակալներն ու լաքեյները։

Մեր ռեսպուբլիկայի կյանքի այդ ծանր օրերին եղբայրական օգնության ձեռք մեկնեց երիտասարդ Սովետական Ռուսաստանը։

Առաջնորդվելով լենինյան ազգային քաղաքականության մեծ սկզբունքներով, Սովետական Ռուսաստանը Հայաստանին, ինչպես նաև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ ազատություն և անկախություն ստացած մյուս՝ նախկինում հարստահարված ժողովուրդներին տրամադրեց սննդամթերքներ, սերմացու, գյուղատնտեսական մեքենաներ, արդյունաբերական սարքավորումներ և որակյալ կադրեր։

Այդպիսով Սովետական Հայաստանի աշխատավորները ռուս մեծ ժողովրդի և մեր երկրի մյուս ժողովուրդների անշահախնդիր ու եղբայրական անգնահատելի օգնությամբ սկսեցին վերականգնել իրենց տնտեսությունը, քայլառ քայլ արդյունաբերություն ստեղծել և զարգացնել այն։

Գործնականում կենսագործելով պարտիայի XIV համագումարի որոշումները, հայ ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ երկրի ինդուստրացման լենինյան պլանի մեծ խնդիրների իրականացմանը։

Հայաստանի Կոմունիստական պարտիան ՍՄԿՊ Կենտկոմի ղեկավարությամբ կազմակերպչական մեծ աշխատանք կատարեց գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման, ընդլայնման և ծանր, թեթև, սննդի արդյունաբերության բազմաթիվ ձեռնարկություններ ստեղծելու ուղղությամբ։ Արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ սկսեցին երևան գալ Երևանում, Լենինականում, Կիրովականում և ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում։ Զարգացող արդյունաբերության համար ստեղծվեց էներգետիկ բազա։ Կառուցվե-



ցին Երևանի, Լենինականի, Ձորագետի հիդրոէլեկտրակայանները, սկսվեց Սևան—Հրազդան կասկադի շինարարությունը։

Արդյունաբերության զարգացման հետ աճեցին մասնագետների, բանվորների որակյալ կադրեր, զարգացավ գիտությունը, տեխնիկան ու կուլտուրան, բարձրացավ ռեսպուբլիկայի աշխատավորների բարեկեցությունը։

Նախապատերազմյան հնգամյակների պլանների հաջող կատարման շնորհիվ Սովետական Հայաստանը, ինչպես և եղբայրական մյուս ռեսպուբլիկաները, սկսեց արագորեն ավելացնել արդյունաբերական համախառն արտադրանքի թողարկումը և վերածվեց սոցիալիստական բարձր զարգացած ինդուստրիա ունեցող ռեսպուբլիկայի։ Արդեն 1940 թվականին՝ Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին, ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ծավալը 1913 թվականի համեմատությամբ մեծացել էր 9 անգամ։

Մեր ռեսպուբլիկայի ինդուստրիալ առաջընթացը արագացավ հատկապես հետպատերազմյան տարիներին։ Իսկ մեր պարտիայի XX և XXI համագումարների պատմական որոշումները, արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու, միութենական ռեսպուբլիկաների իրավունքներն ընդլայնելու ասպարեզում Կոմունիստական պարտիայի իմաստուն և հետևողական միջոցառումները նոր հորիզոններ և լայն հնարավորություններ բացեցին արդյունաբերության հետագա, է՛լ ավելի արագ զարգացման և նրա տեխնիկական առաջադիմության համար։

Հետպատերազմյան տարիներին և, հատկապես, վերջին 5—6 տարում արդյունաբերության ընդլայնմանը, տեխնիկական վերազինմանը և հագեցմանը զուգընթաց բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, որը, վերջին հաշվով, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը, ամենագլխավորն է հասարակական նոր կարգի հաղթանակի համար։ 1959 թվականին արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը 1940 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան երկու անգամ։

1958 թվականից հետո արտադրությունից հանվել են հնացած կոնստրուկցիայի արդյունաբերական արտադրանքի մի քանի տասնյակ տեսակներ և յուրացվել է արտադրանքի նորագույն տեսակների սերիական արտադրության տեխնոլոգիան։

Զգալիորեն բարձրացել է արդյունաբերական արտադրության տեխնիկական մակարդակը։ Արդյունաբերության աճի հետ աճում են մարդիկ, աճում են կադրերը։ Ներկայումս արդյունաբերության բոլոր ճյուղերում մենք ունենք որակյալ բանվորների, մասնագետների և գիտնականների բազմաթիվ կադրեր, որոնք ընդունակ են ստեղծելու ամենաժամանակակից մեքենաները, սարքերը և ապարատները։

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման վառ ցուցանիշներից մեկը արդյունաբերական արտադրանքի արտահանության արագ ավելացումն է։ Սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրվող մեքենաները, սարքերը, էլեկտրասարքավորումները (գեներատորներ, տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ) և արտադրանքի այլ տեսակներ արտահանվում են 36 երկրներ, այդ թվում արդյունաբերական տեսակետից զարգացած այնպիսի երկրներ, ինչպիսիք են՝ Չեխոսլովակիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և այլն։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների

Սովետը կենսագործում են կարևոր միջոցառումներ արտադրողական ուժերի տեղաբաշխումը բարելավելու և արդյունաբերության մեջ որակական նոր տեղաշարժերի հասնելու նպատակով։

Որո՞նք են այդ միջոցառումները։ Ամենից առաջ բանը վերաբերում է նրան, որ արդյունաբերությունը զարգացվի ոչ միայն Երևանում, Լենինականում ու Կիրովականում, այլև ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում և գյուղական շրջաններում, որտեղ արդյունաբերությունը թույլ էր զարգացած։

Վերջին տարիներս արդյունաբերական նոր կենտրոններ և արդյունաբերական առանձին ձեռնարկություններ ստեղծվեցին Լուսավանում, Սևանում, Գորիսում և մի քանի այլ քաղաքներում ու գյուղական շրջաններում։ Առաջիկա տարիներին ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ կստեղծվեն Հրազդանում, Իջևանում, Արթիկում, Դիլիջանում, Ստեփանավանում, Ապարանում, Թալինում և այլ շրջաններում։

Արդյունաբերության զարգացման այդպիսի կուրսը հնարավորություն է ընձեռում ստեղծելու կուլտուր-տեխնիկական նոր օջախներ, ամրապնդելու գյուղական շատ շրջանների էկոնոմիկան, ավելի ճիշտ՝ զարգացնելու արտադրողական ուժերը՝ տեղական հումքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման հիման վրա, ինչպես նաև ապահովելու ռեսպուբլիկայի ամբողջ աշխատունակ բնակչության ավելի ռացիոնալ օգտագործումը հասարակական արտադրության ընդհանուր պրոցեսում։

Արդյունաբերության մեջ որակական նոր տեղաշարժեր են ստեղծվում նրանով, որ արդյունաբերության էներգատար ճյուղերի զարգացման փոխարեն ավելի արագորեն են զարգացվում աշխատատար ճյուղերը, այդ թվում ժամանակակից այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ ճշգրիտ մեքենաշինությունը, սարքաշինությունը, մաթեմատիկական մեքենաշինությունը և ռադիոէլեկտրոնիկան։ Արդյունաբերության հիշյալ ճյուղերի զարգացումը հնարավորություն է ընձեռում ոչ միայն բարձրացնելու արտադրության տեխնիկական մակարդակը, այլև միջնակարգ դպրոցներ ավարտած տասնյակ հազարավոր պատանիների և աղջիկների ներգրավելու ստեղծագործական որակյալ աշխատանքի։

Արդյունաբերության և հատկապես ճշգրիտ մեքենաշինության ու սարքաշինության արագ զարգացումը, տեխնիկական առաջադիմության արագացումը աներևակայելի է առանց գիտահետազոտական և փորձնական-էքսպերիմենտալ բազայի ստեղծման և արագ զարգացման։

Երեք-չորս տարվա ընթացքում Երևանում, Լենինականում, Կիրովականում ստեղծվել են մի շարք նոր գիտահետազոտական ինստիտուտներ, հատուկ կոնստրուկտորական բյուրոներ, լաբորատորիաներ և գիտահետազոտական այլ հիմնարկներ։ Երևանում ստեղծվել է մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական խոշոր ինստիտուտ՝ փորձնական-էքսպերիմենտալ արտադրական բազայով, էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալ։ Կիրովական քաղաքում ստեղծվել են «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտ, «Ավտոմատիկա» հատուկ կոնստրուկտորական բյուրո, Քիմիայի գիտահետազոտական նախագծային ինստիտուտ, Լենինական քաղաքում ստեղծվել է «Պրոմպրիբոր» հատուկ կոնստրուկտորական բյուրո և այլն։

Բազմաթիվ գիտահետազոտական, կոնստրուկտորական և տեխնոլոգիական բյուրոները, լաբորատորիաները և, որ ամենագլխավորն է, գիտնական-



ների, մասնագետների ու որակյալ բանվորների աճած կադրերը ապահովում են տեխնիկական առաջադիմության արագացումը և ռեսպուբլիկայի արդյունաբերության առջև ծառացած նոր խնդիրների հաջող կատարումը։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակը արդյունաբերության աշխատողները դիմավորում են խոշոր հաջողություններով և էլ ավելի բերկրալի հեռանկարներով։

Յոթնամյակի երկրորդ տարում՝ 1960 թվականին խոշոր չափով աճել է ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը։ Ներկայումս արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը կազմում են 12,3 տոկոս։ Այդ տեմպերը կաճեն նոր կարողությունների գործարկման հետ և յոթնամյակի վերջերին՝ 1965 թվականին կհասնեն 16 տոկոսի։

Պետք է նշել, որ արդյունաբերության աճի տեմպերը գերազանցում են յոթնամյա պլանով նախատեսված տեմպերից։ Աճի գոյություն ունեցող տեմպերի պայմաններում լիակատար վստահություն կա, որ յոթնամյա պլանը կկատարվի ժամկետից շուտ, միջին հաշվով վեց տարում, իսկ ըստ առանձին ճյուղերի, ինչպիսին է էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, նույնիսկ հինգ տարում։

***

Է՛լ ավելի պարզ դարձնելու համար, մեր ռեսպուբլիկայի ինդուստրիալ առաջընթացը ցույց տանք ըստ արդյունաբերության մի քանի առաջատար ճյուղերի։

Գունավոր մետալուրգիան ռեսպուբլիկայի արդյունաբերության հնագույն ճյուղն է։ Սովետական իշխանության տարիներին գունավոր մետալուրգիան անչափ ընդլայնվեց և արմատապես վերակառուցվեց ու զինվեց ժամանակակից տեխնիկայով։ Նախառևոլյուցիոն հին հանքերից միայն հին հանքագործների հիշողություններ են մնացել։

Սովետական իշխանության տարիներին ստեղծվեց Քաջարանի պղնձամոլիբդենային առաջնակարգ կոմբինատը, կառուցվեց և շահագործման հանձնըվեց Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատը։ Ստեղծվեց Քանաքեռի ալյումինի գործարանը, ընդլայնվեց և տեխնիկապես վերակառուցվեց Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը, բացվեցին Ախթալայի կապարի հանքերը և այլ ձեռնարկություններ։ Ներկայումս ռեսպուբլիկան թողարկում է մեծ քանակությամբ մոլիբդենի ու պղնձի կոնցենտրատներ, ռաֆինացված պղինձ, բարձրորակ ալյումին և գունավոր մետալուրգիայի արտադրանքի կարևոր այլ տեսակներ։

Նախատեսված է յոթնամյակի մնացած 5 տարում զգալիորեն ընդլայնել և է՛լ ավելի առաջ մղել գունավոր մետալուրգիայի տեխնիկական առաջադիմությունը։ Առաջիկա երկու տարում շահագործման կհանձնվի Ագարակի խոշորագույն պղնձամոլիբդենային կոմբինատը Մեղրու շրջանում, կընդլայնվի և տեխնիկապես կվերակառուցվի Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը, որը կթողարկի ոչ միայն բարձրորակ պղինձ, այլև կյուրացնի հանքաքարից հազվագյուտ և ցրված մետաղներ՝ թելուր, սելենիում, ռենիում և այլ տարրեր կորզելու տեխնոլոգիան, որոնց մեծ կարիքն ունի երկրի կիսահաղորդչային

արդյունաբերությունը։ Մինչև Սովետական Հայաստանի 40-ամյակը կավարտվի նաև Քանաքեռի ալյումինի գործարանի ֆոլգագլանման խոշոր ցեխի մոնտաժը։

Այսպիսով, նոր ձեռնարկությունների կառուցման, բարձր արտադրողական նոր սարքավորումների արմատավորման և առաջադիմական տեխնոլոգիայի յուրացման շնորհիվ կապահովվի արտադրանքի թողարկման հետագա նշանակալի ավելացումը։

Յոթնամյակում գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի թողարկումը կավելանա 2,3 անգամ։ Չորս անգամ կմեծանա հատկապես ռաֆինացված պղնձի արտադրությունը, իսկ մոլիբդենի կոնցենտրատինը՝ 3 անգամ։ 1965 թվականին մեր ռեսպուբլիկան մոլիբդենի արտադրությամբ ՍՍՌՄ-ում կգրավի առաջավոր տեղերից մեկը։

Առաջիկա երեք-չորս տարում գունավոր մետալուրգիան կհամալրվի այնպիսի մի նոր խոշոր ձեռնարկությամբ, ինչպիսին է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, որը նեֆելինային սիենիտների անսպառ պաշարների բազայի վրա երկրին կտա ալյումին ստանալու համար անհրաժեշտ հումք՝ արգնահող, որը այժմ մենք ստիպված ենք բերել հեռավոր Ուրալից։

Առաջին հերթի գործարկումից հետո Հրազդանի կոմբինատը երկրին տարեկան կտա տասնյակ հազարավոր տոննա արգնահող։ Սակայն, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ժողովրդատնտեսական մեծ նշանակությունը կդրսևորվի այսպես կոչված ածանցյալ, բայց չափազանց արժեքավոր արտադրանքների՝ մեծ քանակությամբ բարձրորակ պորտլանդ-ցեմենտի, նատրիումի և կալցիումի մետասիլիկատի ու այլ նյութերի թողարկման մեջ։

Բացի դրանից, Հրազդանի կոմբինատում նեֆելինային սիենիտներից կըստանանք նաև մի այնպիսի արժեքավոր ածանցյալ պրոդուկտ, ինչպիսին է «Երևանիտ» արհեստական բյուրեղը։

Պղնձի, մոլիբդենի, կապարի հանքաքարի, նեֆելինային սիենիտների և արժեքավոր այլ հանածոների հարուստ պաշարների առկայության շնորհիվ ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան առաջիկա տարիներին ունի լավ հեռանկարներ և կզարգանա է՛լ ավելի արագ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և ամբողջ էկոնոմիկայի արագ վերելքի հիմքը էներգետիկ բազայի զարգացումն է, էներգետիկ պրոբլեմների կոմպլեքսի ճիշտ լուծումը։ Էներգետիկայի մասին խոսելիս հարկավոր է ամենից առաջ հատկապես ընդգծել մի այնպիսի իրադարձություն, ինչպիսին է (միութենական կառավարության մեծագույն օժանդակությամբ) Ղարադաղ—Երևան մագիստրալային գազամուղի շինարարության իրականացումը, որն ավարտվեց 1960 թվականի փետրվարին։

Եղբայրական Ադրբեջանից բնական գազ ստանալը ժողովրդատնտեսական անչափ մեծ նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման համար։

Բնական գազը զգալիորեն բարելավել է ռեսպուբլիկայում վառելիքաէներգետիկ հաշվեկշիռը։

Առաջիկա տարիներին գազի կփոխադրվեն ամենից առաջ արդյունաբերական ձեռնարկությունների, հիմնարկների, հիվանդանոցների, դպրոցների, բնակելի տների բոլոր կաթսայարանները։ Դա մեզ կազատի տարեկան 800 հազար տոննա ածուխ, 450 հազար տոննա մազութ, 80 հազար տոննա կերոսին,



140 հազար խորանարդ մետր փայտ ռեսպուբլիկա բերելուց։ Կաթսայարանները գազի փոխադրելը զգալիորեն կբարելավի մեր քաղաքների սանիտարական վիճակը հատկապես ձմեռային ջեռուցման սեզոնում։ Բացի դրանից, գազը լայնորեն կօգտագործվի կենցաղում։

Երկրորդ, ստացվող գազի բազայի վրա մեզանում ջերմաէլեկտրակայաններ են կառուցվում Երևանում, Հրազդանում և Կիրովականում։ Բնական գազը զգալիորեն հեշտացնում է Սևանի պրոբլեմի լուծումը, քանի որ գազով գործող էլեկտրակայաններում արտադրվող էլեկտրական էներգիան կնպաստի նվազեցնելու էներգետիկ նպատակների համար ջրի բացթողումը Սևանա լճից։

Վերջապես, երրորդ, բնական գազը կապահովի քիմիական արդյունաբերության հետագա վերելքը։ Ներկայումս ռեսպուբլիկայի գիտնականներն ու մասնագետները աշխատում են մեթանից (բնական գազից) ացետիլեն ստանալու տեխնոլոգիայի յուրացման համար։ Իսկ ացետիլենից կարելի է ստանալ քիմիական ուզած պրոդուկտը։

Ինչպես տեսնում ենք, բնական գազ ստանալը մեր ռեսպուբլիկայի համար խորք ունի ժողովրդա-տնտեսական կարևորագույն նշանակություն և կնպաստի քիմիական արդյունաբերության ավելի արագ զարգացմանը ու բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման բարելավմանը։

1960—1965 թթ. ընթացքում կկառուցվեն գազով գործող երեք ջերմակայաններ. ընթացիկ տարվա սեպտեմբերին ավարտվեց Աղստաֆա-Աթարբեկյան էլեկտրահաղորդման բարձրավոլտ գծի շինարարությունը, որով Հայաստանի էներգասիստեմը արդեն էլեկտրաէներգիա է ստանում եղբայրական Ադրբեջանից։ Բացի դրանից, առաջիկա 1—2 տարում կսկսվի Որոտան գետի վրա Տաթևի խոշոր հիդրոէլեկտրակայանի կառուցումը։

Այդ բոլոր միջոցառումները հնարավորություն կընձեռեն ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և բնակչության աճող պահանջմունքներն ապահովել անհրաժեշտ քանակությամբ էլեկտրական էներգիայով և միաժամանակ 1965 թվականից սկսած դադարեցնել էներգետիկ նպատակներով ջրի բացթողումը Սևանա լճից, որպեսզի հետագայում ամբողջովին վերջ տրվի ջրի բացթողմանը, և այդ պատմական լճի ջրերը պահպանվեն ըստ հնարավորին բարձր մակարդակի վրա։

Էներգետիկ պրոբլեմի կոմպլեքսային ու ճիշտ լուծման հարցերը միշտ գտնվել և այսուհետև էլ կգտնվեն Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ուշադրության կենտրոնում։

Քիմիական արդյունաբերությունը ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության կարևորագույն ճյուղերից մեկն է։ Այն զարգանում է բավական արագ տեմպերով։ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1959 թվականին 1950 թվականի համեմատությամբ մեծացավ 4,6 անգամ։

Մեր օրերին քիմիական արդյունաբերության զարգացումը ընթանում է, գլխավորապես, օրգանական սինթեզի, պոլիմերների արտադրության կամ այլ կերպ ասած՝ սինթետիկ նյութերի աճի ուղղությամբ։ Քիմիական արդյունաբերության հետագա աճի վրա մեծ ներգործություն կունենա ստացվող բնական գազը։

Մեզ համար սկզբունքային նշանակություն ունի բնական գազից ացետիլենի արտադրության յուրացումը։ Ներկայումս ացետիլեն ենք ստանում կալցիումի կարբիդից, որը շատ էներգատար է, ուստի և անշահավետ։

Բնական գազից ացետիլեն ստանալու տեխնոլոգիայի յուրացումը հնարավորություն կտա հումքային նոր բազա ստեղծելու քիմիական արդյունաբերության համար և ապահովելու քիմիական արտադրանքի այնպիսի կարևորագույն տեսակների արտադրության արագ ավելացումը, ինչպիսիք են վինիլացետատը, պոլիքլորվինիլային ձյութերը, սինթետիկ քացախաթթուն և ացետիլենի մյուս ածանցյալները։

Սինթետիկ քացախաթթվի թողարկման ավելացումը հնարավորություն կընձեռի ռեսպուբլիկայում կազմակերպելու ացետիլցելյուլոզի արտադրություն, որից կստանանք ացետատային, այսինքն՝ արհեստական մետաքս։

Ներկայումս «պոլիվինիլացետատ» գործարանին առընթեր կառուցվում է ացետիլցելյուլոզի ցեխ, իսկ Կիրովական քաղաքում կառուցվում է ացետատային մետաքսի խոշոր գործարան։ Այդ ձեռնարկությունները շահագործման կհանձնվեն 1961 թվականի վերջերին։

Բնական գազի օգտագործումը թույլ կտա նաև արագորեն զարգացնելու ամոնիակի և հանքային պարարտանյութերի արտադրությունը։ Յոթնամյակում ծծմբաթթվի արտադրությունը կմեծանա ավելի քան հինգ անգամ, հանքային պարարտանյութերինը՝ մոտ երկու անգամ։ Ընթացիկ յոթնամյակում կընդլայնվի էլեկտրատեխնիկական արդյունաբերության համար խիստ արժեքավոր մեկուսիչ նյութի՝ վինիֆլեքսի և սինթետիկ կորունդի արտադրությունը, որից տեխնիկական քարեր են պատրաստվում սարքաշինական և ժամացույցի արդյունաբերության համար։ Առանձնապես կարևոր է միզանյութի արտադրությունը, որը արժեքավոր նյութ է դաշտերի պարարտացման համար։

Յոթնամյակում քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը կմեծանա 3,3 անգամ։ 1965 թվականին սինթետիկ քիմիական պրոդուկտների արտադրությունը 1958 թվականի համեմատությամբ կավելանա 9 անգամ, որը ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման պրակտիկ կենսագործումն է։

Սովետական իշխանության տարիներին և հատկապես վերջին 10 տարում ռեսպուբլիկայում ստեղծվեց առաջնակարգ մեքենաշինություն, որը ծանր արդյունաբերության սիրտն է։ Արդյունաբերության այս ճյուղի զարգացումը ընթացել է բարձր ճշգրտության և նվազ մետաղատար մեքենաշինություն ստեղծելու ուղիով։ Կիրովականում անցյալ տարի շահագործման հանձնվեց գերճշգրիտ հաստոցների գործարանը։ Դրանք չափերով փոքր, բայց բարձր ճշգրտության հաստոցներ են, որոնք լայնորեն կիրառվում են ժամացույցի և սարքաշինական արդյունաբերության մեջ։ Կիրովականի գործարանի երիտասարդ, բայց ընդունակ կոլեկտիվը շատ արագ կերպով կյուրացնի այդ ճշգրիտ հաստոցների արտադրությունը։ Վերջին մի քանի տարում ժամանակակից հաստոցաշինական գործարաններ ստեղծվեցին նաև Երևանում (ֆրեզերային հաստոցների գործարանը), Լուսավանում (ներտաշիչ հաստոցների գործարանը), Լենինականում (ժամանակակից հղկող հաստոցների գործարանը) և այլն։

Ընթացիկ յոթնամյակում շարունակվում է մեքենաշինության բարձր տեմպերով զարգացումը։ Համախառն արտադրանքի ծավալը մեծանում է 4,5 անգամ, իսկ մինչև 1965 թվականը մետաղահատ հաստոցների արտադրությունը կավելանա 6,7 անգամ։ Ընթացիկ 1960 թվականին երկրի համար կթողարկվի 4500-ից ավելի մետաղահատ հաստոց, 1961 թվականին՝ 6.250 հաստոց, իսկ



1965 թվականին կթողարկվի ավելի քան 15 հազար մետաղահատ հաստոց։ Հետաքրքրական է նշել, որ ցարական Ռուսաստանը 1913 թվականին թողարկել էր ընդամենը 1.500 հաստոց, այսինքն՝ գրեթե 3 անգամ պակաս, քան մեր ռեսպուբլիկայի այս տարվա թողարկածը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը ամենաերիտասարդ ճյուղն է ռեսպուբլիկայում, և նա փաստորեն ընդամենը 10 տարի է, ինչ գոյություն ունի։

Մինչև Սովետական իշխանության հաստատումը արդյունաբերության այդ առաջավոր ճյուղի հետքն անգամ չկար։ Չնայած, որ էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը ստեղծվեց և զարգացվեց փաստորեն հետպատերազմյան տարիներին, նրա աճի տեմպերը այնքան բարձր են, որ ներկայումս Սովետական Հայաստանը մտել է առաջավոր ռեսպուբլիկաների շարքը և էլեկտրատեխնիկական արտադրության ծավալով երրորդ տեղն է գրավում Սովետական Միությունում։

1957 թվականին ռեսպուբլիկայում կար ընդամենը 8 գործարան՝ 6 էլեկտրատեխնիկական արդյունաբերության գործարան և 2 սարքաշինական գործարան։ Վերջին 3 տարում ստեղծվեցին 12 նոր ձեռնարկություններ, որոնցից 6-ը էլեկտրատեխնիկական արդյունաբերության, 5-ը՝ սարքաշինական արդյունաբերության գծով։ Այսպիսով, ռեսպուբլիկայում 1960 թվականին արդեն աշխատում են 20 գործարան, որոնք թողարկում են ժամանակակից բազմազան էլեկտրական մեքենաներ, սարքեր, ապարատներ և այլն։

Հայաստանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանն այժմ դարձել է Սովետական Միության խոշորագույն էլեկտրամեքենաշինական գործարաններից մեկը։ Այդ հիանալի գործարանի կոլեկտիվը թողարկում է մեծ քանակությամբ արժեքավոր արտադրանք։

Անհրաժեշտ է նշել, որ էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության արագ զարգացումը կարևոր պայման է շուտափույթ կերպով կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու համար։ Մեր ռեսպուբլիկայում այդ ճյուղերը առանձնապես շահավետ են, որովհետև դրանք աշխատատար են և դրանց արագ զարգացումը հնարավորություն է տալիս երիտասարդությանը ավելի մեծ չափով ընդգրկել արտադրության մեջ։ Էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության մեջ ներգրավվել է ավելի քան 12 հազար մարդ, որից միայն 1960 թվականին՝ 3.600 մարդ, ըստ որում դրանց մեծ մասը մեր տասնամյակներն ավարտած երիտասարդներ են։

Վերջին մի քանի տարում գիտական աշխատողների, մասնագետների, էլեկտրատեխնիկական ու սարքաշինական արդյունաբերության բանվորների ջանքերով յուրացվեց ժամանակակից էլեկտրական մեքենաների, ապարատների, սարքերի, ավտոմատացման միջոցների, միկրոէլեկտրաշարժիչների, կաբելի, շարժական էլեկտրակայանների, էլեկտրազոդման սարքերի, վառելիքաէներգետիկ պրոցեսների բազմազան հսկիչ սարքերի, էլեկտրոնային գործադիր մեխանիզմների սերիական արտադրությունը և այլն։ Մինչև 100 կիլովատ կարողությամբ ժամանակակից գեներատորների, շարժական էլեկտրակայանների, 1—2 գաբարիտանոց ուժային տրանսֆորմատորների, ինչպես նաև էլեկտրալուսավորման լամպերի թողարկման ծավալով մեր ռեսպուբլիկան ներկայումս երկրորդ տեղն է գրավում երկրի եղբայրական 15 ռեսպուբլիկաների շարքում։

*Յոթնամյակում նախատեսվում է էլեկտրատեխնիկական արդյունաբերության միջին հաշվով 4,3 անգամ աճ, իսկ սարքաշինության՝ 6,8 անգամ աճ։ Ահա թե ինչպիսի արագ տեմպերով են առաջ ընթանում մեր ռեսպուբլիկայի էլեկտրամեքենաշինությունը և սարքաշինությունը։*

*Էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության զարգացման հետ ռեսպուբլիկայում արագորեն զարգացել և ներկայումս ստեղծված է գիտա-հետազոտական ու փորձնական-կոնստրուկտորական բազա։ Միանգամայն պարզ է, որ առանց գիտա-հետազոտական ու կոնստրուկտորական-տեխնոլոգիական աշխատանքների այդպիսի լայն զարգացման, ինչպես նաև առանց փորձնական արտադրության ընդլայնման աներևակայելի կլիներ մեր ռեսպուբլիկայում ամենաարդիական բարձր զարգացած էլեկտրատեխնիկական ու սարքաշինական արդյունաբերություն ստեղծելը, որով մենք հպարտանում ենք Սովետական Հայաստանի պանծալի 40-ամյակը դիմավորելիս։*

*Էլեկտրատեխնիկական, սարքաշինական և ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը ունի լավ ներկա և էլ ավելի հիասքանչ ապագա։ Նախատեսված է 1961—1962 թվականներին կառուցել և շահագործման հանձնել ևս ինը նոր այնպիսի ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ մաթեմատիկական մեքենաշինության գործարանը, Երևանի ապակեմեկուսիչ նյութերի գործարանը, Դիլիջանի խտացուցիչների գործարանը, Կամո քաղաքի կաբելի երկու գործարանները, Լենինականի էլեկտրակաբելային սարքավորման և էլեկտրահաշվիչների գործարանները, Արթիկի վակուումային էլեկտրավառարանների գործարանը, Մարալիկի մագնիսական ուժեղացուցիչների գործարանը և Կիրովականի բարձր հաճախականության սարքավորումների գործարանը։ Արդյունաբերության էլեկտրա-տեխնիկական և մյուս ճյուղերի զարգացման ասպարեզում Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը հաստատակամորեն և հետևողականորեն վարում են ոչ միայն ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում, այլև մյուս քաղաքներում ու գյուղական շրջաններում ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ ստեղծելու կուրս։*

*Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում ստեղծվել է նաև թեթև ու սննդի հզոր արդյունաբերություն, որը է՛լ ավելի մեծ զարգացում կստանա ընթացիկ յոթնամյակում։*

*Առաջիկա տարիներին կկառուցվեն մի շարք նոր խոշոր ձեռնարկություններ, այդ թվում ժամանակակից գորգագործական կոմբինատ՝ Իջևանում, տրիկոտաժի ֆաբրիկա՝ Դիլիջանում, գինու-կոնյակի 11 և պահածոյի 7 նոր գործարաններ։ Ընդհանուր առմամբ՝ մինչև 1965 թվականը կկառուցվեն թեթև, սննդի և մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության 70 նոր ձեռնարկություններ։*

*Յոթնամյակի վերջերին բրդե գործվածքների արտադրությունը կհասցվի 5,8 միլիոն մետրի, մետաքսե գործվածքներինը՝ 11,5 միլիոն մետրի, բամբակե գործվածքներինը՝ 88 միլիոն մետրի, կոշկեղենինը՝ 7,5 միլիոն զույգի։*

*Թեթև, սննդի, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության աշխատողների գլխավոր խնդիրն է ոչ միայն ավելացնել արտադրանքի թողարկումը, այլև արմատապես բարելավել թողարկվող ապրանքների ու ժողովրդական սպառման առարկաների որակը և ընդլայնել դրանց ասորտիմենտը։*

*Մեր ռեսպուբլիկայի ինդուստրիալ երթի վերաբերյալ ավելի լրիվ պատկե-*



*րացում տալու համար անհրաժեշտ է մի քանի խոսք ասել նաև կապիտալ շինարարության մասին։ Ինչպես հայտնի է, արտադրողական ուժերի զարգացումը շատ բանով կախված է կապիտալ շինարարության տեմպերից։ 1960 թվականին ռեսպուբլիկայում կապիտալ ներդրումների ծավալը կկազմի մոտ 1,5 միլիարդ ռուբլի։ 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, Միության մասշտաբով կապիտալ ներդրումները կաճեն միջին հաշվով 9 տոկոսով, իսկ մեր ռեսպուբլիկայում աճը կկազմի ավելի քան 32 տոկոս և կանցնի 2 միլիարդ ռուբլուց։ Յոթնամյակի ընթացքում ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումները կկազմեն 12 միլիարդ ռուբլի, որը համադրելի գներով իր ծավալով ավելի է, քան Սովետական իշխանության բոլոր տարիների ներդրումները։*

*Ընթացիկ յոթնամյակում արդյունաբերական օբյեկտների շինարարությունից բացի, կկառուցվեն մեծ թվով դպրոցներ, հիվանդանոցներ, բնակելի տներ, կուլտուրական հիմնարկներ, ջրմուղներ, կոյուղիներ, խճուղային ճանապարհներ և այլն։ Առանձնահատուկ ուշադրություն կնվիրվի բնակարանային շինարարության արագ զարգացմանը։ Յոթնամյա պլանով նախատեսված է կառուցել մոտ 2,5 միլիոն քառակուսի մետր բնակելի մակերես, որը հնարավորություն կընձեռի զգալի չափով լուծելու բնակարանային պրոբլեմը մեր ռեսպուբլիկայի քաղաքներում։*

*Շինարարության այդպիսի մեծ թափը պահանջում է նաև ամրապնդել ինդուստրիալ բազան։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը նախատեսել են շինանյութերի արդյունաբերության արագ զարգացման, արտադրության մեջ առաջադիմական ինդուստրիալ մեթոդների արմատավորման ծավալուն միջոցառումներ։ Ներկայումս կառուցվում են մեծ թվով երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարաններ, ինչպես նաև Արթիկի տուֆաբլոկային գործարանը, որը Արթիկի տուֆի մնացորդներից մեքենայացված եղանակով կյուրացնի ճշգրիտ ձևի խոշոր բլոկների արտադրությունը։ Բացի դրանից ավարտվում է տնաշինական խոշոր կոմբինատի, որմնապանելների գործարանի կառուցումը, խիստ կավելանա ցեմենտի և մյուս շինանյութերի արտադրությունը։*

*Խնդիր է դրված առաջիկա 2—3 տարում այն աստիճան ընդլայնել ինդուստրիալ բազան, որ լիովին բավարարվեն արագ աճող շինարարության պահանջմունքները և այդ հիման վրա ապահովվի ռեսպուբլիկայում արդյունաբերական, բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարության պլանի անվերապահ կատարումը։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները, անշեղորեն կենսագործելով մեր մեծ Կոմունիստական պարտիայի գլխավոր գիծը, ապահովում և այսուհետև էլ կապահովեն ծանր ինդուստրիայի առավել զարգացումը, այսինքն՝ գերազանցապես արտադրության միջոցների արտադրության զարգացումը։*

*Հետագայում մեծ աշխատանք կկատարվի արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, արտադրության կոնվեյերացման, գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման, հնացած սարքավորումները նոր, ավելի արտադրողական սարքավորումներով փոխարինելու ասպարեզում և կկիրառվեն տեխնիկական առաջադիմության հետագա արագացման մի շարք այլ միջոցառումներ։*

Մեր սոցիալիստական Հայրենիքը թևակոխել է կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, հաջողությամբ կենսագործվում է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Այդ պլանի կատարումով է՛լ ավելի կամրապնդվի մեր երկրի ինդուստրիալ հզորությունը, վճռական քայլ կարվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։

Կոմունիզմն այսօր դարձել է առօրյայի գործ, ժողովրդական հոծ մասսաների կենդանի ստեղծագործություն։ Կոմունիզմի համար մղած պայքարում միանգամայն բնական ու օրինաչափ է կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների հայրենասիրական հզոր շարժման ծնունդը, որի մասնակիցների նշանաբանն է՝ աշխատել ու ապրել կոմունիստաբար։ Այդ մրցության առանձնահատկությունն այն է, որ նրանում օրգանապես զուգորդվում են նորագույն գիտության ու տեխնիկայի հիմքի վրա աշխատանքի բարձրագույն արտադրողականության հասնելու համար մղվող պայքարը և նոր մարդու ձևավորումը։ Ապագայի հետախույզները ճանապարհ են հարթում դեպի կոմունիզմ, խորհրդանշում մեր երկրում կոմունիստական աշխատանքի հաղթանակը։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակը և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակը մեր ռեսպուբլիկայի աշխատավորները դիմավորում են կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ նվաճումներով։ Մեր ռեսպուբլիկայի, ինչպես նաև մեր մեծ բազմազգ Հայրենիքի եղբայրական մյուս ռեսպուբլիկաների, ինդուստրիալ առաջընթացի օրինակով մենք վառ կերպով տեսնում ենք սոցիալիստական կարգի առավելությունները կապիտալիստականի հանդեպ։

Հայ ժողովրդի փառապանծ հոբելյանի նախօրյակին մենք ուրախանում և հպարտանում ենք մեր հաղթանակներով, բայց է՛լ ավելի բերկրալի և որոշ են Սովետական Հայաստանի հետագա զարգացման հեռանկարները։ Ոչ ոք ոչ մի րոպե չի տարակուսում, որ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները Հայաստանի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կկատարեն առաջիկա խնդիրները և նոր թռիչք կապահովեն ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, դրա հետ միասին նաև մեր ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ասպարեզում։

---

# ՎԵՐԱԾՆՎԱԾ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ


**Մ. ԱԴՈՆՑ**

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար


Հայաստանում Սովետական կարգերի հաստատումից հետո անցած 40 տարիները հայ ժողովրդի ստեղծագործական աշխատանքի ամենաբեղմնավոր ժամանակաշրջանն են նշանավորում։

1920 թվականի նոյեմբերին հայ աշխատավոր ժողովրդի կյանքում այնպիսի խոշոր հեղաբեկում կատարվեց, որպիսին չի կատարվել և չէր էլ կարող կատարվել նրա բազմադարյան, ներքին և արտաքին թշնամիների դեմ մղվող դաժան ու անդադրում պայքարով հարուստ, ամբողջ փոթորկալի պատմության ընթացքում։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավոր մասսաները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և հերոսական 11-րդ բանակի զորամասերի օգնությամբ, ջախջախեցին դաշնակ ավանտյուրիստների ատելի իշխանությունը և իրենց ուսերից թոթափեցին դարավոր շահագործման ծանր լուծը։

Սովետական կարգերի հաստատումով հայ աշխատավոր ժողովուրդը միանգամայն նոր սոցիալական հիմքի վրա վերականգնեց իր պետականությունը և սկսեց նոր ու երջանիկ կյանքի կառուցումը։

Ցարական Ռուսաստանի ծայրագավառ նախառևոլյուցիոն Հայաստանը մի հետամնաց երկիր էր, թույլ զարգացած արդյունաբերությամբ և էքստենսիվ ու պրիմիտիվ գյուղատնտեսությամբ։ Առաջին համաշխարհային պատերազմը և դաշնակցական ավանտյուրիստների տիրապետությունն ամբողջովին քայքայեցին երկրի առանց այն էլ հետամնաց տնտեսությունը։ Սովետական կարգերի հաստատման նախօրյակին Հայաստանը դարձել էր ավերակների ու որբերի երկիր. ամենուրեք տիրում էին սովն ու համաճարակը, դաշնակ մաուզերիստների վայրագ քմահաճույքը։

Սովետական իշխանությունը հայ ժողովրդին ո՛չ միայն ազատություն պարգևեց, վերացրեց նրա ֆիզիկական ոչնչացման ահավոր վտանգը, այլև լայն հնարավորություններ ընձեռեց՝ ծավալելու իր դարերով կաշկանդված ստեղծագործական ուժերը և կառուցելու մարդկանց ուրախ ու երջանիկ կյանքն ապահովող սոցիալիստական հասարակարգը։

Սովետական կարգերի հաստատումից հետո հայ ժողովուրդը, սովետական ժողովուրդների բազմազգ ընտանիքում, ռուս ժողովրդի և մեր մեծ Հայրենիքի մյուս ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ ու համագործակցությամբ, կարճ ժամանակամիջոցում վերականգնեց երկրի քայքայված տնտեսությունը,

ստեղծեց առաջավոր տեխնիկայով զինված արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր, սոցիալիստական վերակառուցման ենթարկեց գյուղատնտեսությունը, նրան զինեց մեքենայական տեխնիկայով և ապահովեց նրա արագ ու անկաշկանդ զարգացումը։

Սոցիալիստական կարգերի մեծագույն առավելությունների և պարտիայի կիրառած լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ սովետական կարգերի հաստատումից հետո անցած 40 տարիների ընթացքում ռուսական ցարիզմի հետամնաց գաղութ հանդիսացող Հայաստանը դարձավ առաջավոր արդյունաբերության և սոցիալիստական խոշոր, մեքենայացված գյուղատնտեսության ռեսպուբլիկա, որը հանդիսանում է հզոր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության իրավահավասար անդամը։

***

Սովետական իշխանության տարիներին ժողովրդական տնտեսության հետ միասին զարգացան ու ծաղկեցին նաև հայ ժողովրդի կուլտուրան ու գիտությունը։

Նախառևոլյուցիոն Հայաստանը հետամնաց էր նաև կուլտուրական զարգացման տեսակետից, բնակչության բացարձակ մեծամասնությունն անգրագետ էր, հատկապես գյուղը խարխափում էր խավարի մեջ։ Երկրում բարձրագույն կրթության ոչ մի հաստատություն չկար. բնակչության ունևոր խավերի փոքրաթիվ ներկայացուցիչներ բարձրագույն կրթություն էին ստանում Մոսկվայում, Պետերբուրգում, իսկ ոմանք էլ՝ արտասահմանյան բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Միանգամայն անմխիթար վիճակում էր գտնվում ժողովրդական կրթության գործը։ Երկրում, որոշ ընդհատումներով, գործում էին 459 դպրոցներ, որոնց մեծ մասը տեղավորված էր գյուղական խրճիթներում։ Յուրաքանչյուր դպրոցին 1914 թվականին ընկնում էր 76 աշակերտ։ 1914/15 ուսումնական տարում Հայաստանի բոլոր հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը հասնում էր 34,7 հազար հոգու, այն դեպքում, երբ այժմ միայն Երևանի հանրակրթական դպրոցներում սովորող աշակերտների թիվը կազմում է ավելի քան 80 հազար մարդ։

Չափազանց թույլ էին զարգացած նաև մամուլը, գրքի հրատարակության գործը, ինչպես նաև թատրոնը և արվեստի մյուս ճյուղերը։

Ինչպես սովետական ողջ երկրում, այնպես էլ Հայաստանում, հաղթանակած քաղաքական ռևոլյուցիային հաջորդեցին տնտեսական արմատական վերափոխումները և կուլտուրական ռևոլյուցիան։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիզմի լիակատար հաղթանակը պահանջում է պատմական կարճ ժամանակում վերացնել մեր երկրի ո՛չ միայն տնտեսա-տեխնիկական, այլ նաև կուլտուրական հետամնացությունը։ Պարտիան ղեկավարվելով իր առաջնորդի իմաստուն ցուցումներով համարձակորեն ձեռնամուխ եղավ կուլտուրական ռևոլյուցիայի դժվարին գործի իրականացմանը։ Երկրի կուլտուրական դարավոր հետամնացության վերացման գործը պարտիան առաջին հերթին սկսեց ժողովրդական կրթության ցանցի վճռական ընդլայնումով և բնակչության անգրագիտության վերացմամբ։

Հայաստանում Սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո,



չնայած միջոցների սղությանը, Սովետական իշխանությունը հսկայական միջոցներ տրամադրեց դպրոցական գործի ընդլայնմանը, յուրաքանչյուր տարի կառուցվեցին մեծ թվով նոր դպրոցներ, անընդհատ ավելանում էր սովորող աշակերտների թիվը։

Անցած 40 տարիների ընթացքում ռեսպուբլիկայում պետության հաշվին կառուցվեցին ավելի քան 1100 դպրոցներ։ Եթե 1914 թվականին գործում էին 459 դպրոցներ, ապա այժմ ռեսպուբլիկայում գործում են 1215 դպրոցներ, որոնցում սովորում են 311,6 հազար աշակերտներ, այսինքն՝ 1914 թվականի սովորողներից ինն անգամ ավելի։ Միջնակարգ դպրոցներում սովորող աշակերտների թիվն ավելացավ 70 անգամ։ Եթե 1914 թվականին հանրակրթական դպրոցներում աշխատում էին 1100 ուսուցիչներ, ապա անցյալ ուսումնական տարում այդ տիպի դպրոցներում աշխատող ուսուցիչների թիվը հասավ 20500-ի։

Այս տարվա սեպտեմբերի 26—28-ին Երևանում տեղի ունեցավ Հայաստանի ուսուցիչների համագումարը, որն ամփոփեց ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության բնագավառում ձեռք բերված հսկայական հաջողությունները և դպրոցի վերակառուցման ասպարեզում կատարված աշխատանքների առաջին արդյունքները։ Համագումարի մասնակիցները մեծ ոգևորությամբ ցուցադրեցին ռեսպուբլիկայի ողջ ուսուցչության անսահման նվիրվածությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիային և Սովետական կառավարությանը։ Պարտիան ու կառավարությունը բարձր գնահատեցին Սովետական Հայաստանի ուսուցչության շնորհակալ աշխատանքը ժողովրդական կրթության ու մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակության բնագավառում։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով Հայաստանի ուսուցիչների համագումարի 475 դելեգատներ պարգևատրվեցին Լենինի շքանշանով և կառավարական այլ շքանշաններով ու մեդալներով։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության 135 աշխատողների շնորհեց «Վաստակավոր ուսուցչի» կոչում։

Պետությունը հսկայական միջոցներ ծախսեց նաև չափահաս բնակչության անգրագիտության վերացման համար։ Պարտիայի և կառավարության այդ ջանքերն իզուր չանցան, Հայրենական պատերազմի նախօրյակին Սովետական Հայաստանը, ինչպես և մնացած միութենական ռեսպուբլիկաները, դարձան համատարած գրագիտության երկիր։ Այժմ Սովետական Հայաստանում արդեն իրականացված է յոթնամյա պարտադիր ուսումը և ավարտվում է 8-ամյա պարտադիր ուսման անցկացումը։ Մատաղ սերնդի դաստիարակության համար ստեղծվեց ու ընդլայնվեց նաև նախադպրոցական հիմնարկների ցանցը։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 333 մանկապարտեզներ, որոնցում ընդգրկված են ավելի քան 180 հազար երեխաներ։

Ռեսպուբլիկայում բարձր զարգացման է հասել նաև բարձրագույն կրթությունը։ Ինչպես նշեցինք, նախառևոլյուցիոն Հայաստանում գոյություն չուներ բարձրագույն կրթության ոչ մի ուսումնական հաստատություն։ Ճիշտ է, դաշնակները 1920 թվականի հունվարին հասարակայնության աչքերին թոզ փչելու նպատակով աղմուկ բարձրացրին Ալեքսանդրոպոլում համալսարան հիմնադրելու մասին, սակայն իրականում նրանց այդ դեմագոգիկ խոստումները չկատարվեցին։

Միայն Սովետական իշխանությունը Հայաստանում կազմակերպեց

բարձրագույն կրթության գործը։ 1920 թվականի դեկտեմբերի 17-ին, այսինքն՝ Հայաստանում Սովետական իշխանություն հռչակելուց ընդամենը 18 օր հետո, կառավարության հատուկ որոշմամբ Երևանում հիմնադրվեց ժողովրդական համալսարան, որը հայ երիտասարդությանը հնարավորություն տվեց մայրենի լեզվով բարձրագույն կրթություն ստանալու։ Այն դժվարին օրերին, երբ դեռևս վերացված չէին սովն ու համաճարակը, երբ երկիրը լցված էր տասնյակ հազարավոր որբերով ու գաղթականներով, Սովետական կառավարությունը Երևանում հիմնադրեց համալսարան, որը հայ ժողովրդի և նրա կուլտուրայի զարգացման նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական իշխանության մեծ հոգատարության փայլուն վկայությունն է։

Արդեն 1922 թվականին Երևանի համալսարանում, որը 1923 թվականին անվանվեց Պետական համալսարան, գործում էին 6 ֆակուլտետ՝ բնագիտական, որը հետագայում վերակառուցվեց գյուղատնտեսական 4 ֆակուլտետի, տեխնիկական, արևելագիտական, որը վերակառուցվեց պատմական ֆակուլտետի, սովետական շինարարության, մանկավարժական և բժշկական ֆակուլտետ։

1923 թվականին Սովետական Հայաստանում հիմնադրվեց երկրորդ բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի պետական կոնսերվատորիան։ 1928 թվականին հիմնադրվեց բարձրագույն կրթության մի նոր ուսումնական հաստատություն ևս՝ Երևանի Անասնաբուժական ինստիտուտը, որը հետագայում վերակառուցվեց զոոտեխնիկական-անասնաբուժական ինստիտուտի։ Այդ ինստիտուտը խոշոր աշխատանք է կատարել ո՛չ միայն մեր ռեսպուբլիկային, այլ նաև միութենական մյուս ռեսպուբլիկաներին բարձրորակ մասնագետներով ապահովելու գործում։ Երևանի զոոտեխնիկական-անասնաբուժական ինստիտուտն ավարտած 4000 մասնագետներից 1200 հոգի աշխատում են ՌՍՖՍՌ կոլտնտեսություններում ու սովխոզներում, 283 հոգի՝ Վրացական ՍՍՌ-ում, 235 հոգի՝ Ադրբեջանական ՍՍՌ-ում, 74 հոգի՝ Ղազախական ՍՍՌ-ում։

Հաշվի առնելով ռեսպուբլիկայի աճող պահանջները բարձրագույն կրթությամբ մասնագետների նկատմամբ, 1930 թվականին Երևանի Պետական համալսարանը վերակառուցվեց, որի մի քանի ֆակուլտետների բազայի վրա ստեղծվեցին ինքնուրույն ինստիտուտներ։ Տեխնիկական ֆակուլտետի բազայի վրա ստեղծվեց Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտը, գյուղատնտեսական ֆակուլտետի բազայի վրա՝ Գյուղատնտեսական ինստիտուտը, իսկ Բժշկական ֆակուլտետի բազայի վրա՝ Բժշկական ինստիտուտը։

Անընդհատ ընդլայնվող ժողովրդական կրթության ցանցի պահանջներն ուսուցչական բարձրորակ կադրերով ապահովելու նպատակով, 1934 թվականին հիմնադրվում է Խ. Աբովյանի անվան Հայկական Մանկավարժական ինստիտուտը։

Ներկայումս Սովետական Հայաստանում գործում են 10 բարձրագույն ուսումնական հաստատություններ. Երևանի Պետական համալսարանը, Կարլ Մարքսի անվան Պոլիտեխնիկական ինստիտուտը, Բժշկական, Գյուղատնտեսական, Անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտները, Երևանի Խ. Աբովյանի անվան Մանկավարժական ինստիտուտը՝ իր Լենինականի ֆիլիալով, Հեռակա Մանկավարժական ինստիտուտը, Գեղարվեստա-թատերական ինստի-



տուտը, Ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտը և Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիան։

Երևանի Պետական համալսարանը հանդիսանում է ռեսպուբլիկայի ամենախոշոր բարձրագույն ուսումնական հաստատությունը։ Այժմ նրա 12 ֆակուլտետներում սովորում են ավելի քան 4500 ուսանողներ։ Պրոֆեսորա-դասախոսական կազմը հասնում է 400 հոգու, որոնցից 50 հոգի դոկտոր-պրոֆեսորներ են, իսկ 213 հոգի՝ գիտությունների թեկնածու-դոցենտներ։ Ռեսպուբլիկայի գիտական հիմնարկներում և մանկավարժության բնագավառում աշխատելու համար յուրաքանչյուր տարի համալսարանը տալիս է 700—800 շրջանավարտներ՝ պատմաբաններ, տնտեսագետներ, լեզվաբաններ, բանասերներ, իրավաբաններ, աշխարհագրագետներ, երկրաբաններ, մաթեմատիկոսներ, ֆիզիկայի և քիմիայի մասնագետներ, կենսաբաններ և այլն։

Իր մեծությամբ Հայաստանի երկրորդ բուհը Երևանի Կարլ Մարքսի անվան Պոլիտեխնիկ ինստիտուտն է, որն իր ֆիլիալն ունի Լենինական քաղաքում։ Պոլիտեխնիկ ինստիտուտի շինարարական, քիմիկա-տեխնոլոգիական, մեխանիկայի և էլեկտրատեխնիկական ֆակուլտետներում սովորում են մոտ 3000 ուսանողներ։

Դպրոցի վերակառուցման մասին Գերագույն Սովետի ընդունած օրենքի համապատասխան, Պոլիտեխնիկ ինստիտուտի առաջին կուրսի, մասամբ նաև մնացած կուրսերի ուսանողները տեսական ուսուցումը շաղկապում են արտադրական աշխատանքի հետ։ Աշխատելով արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարության մեջ, ուսանողները մասնակցում են հասարակական-օգտակար աշխատանքին, արտադրության մեջ պրակտիկ աշխատանքի ունակություններ են ձեռք բերում, որն օգնում է ավելի լավ տիրապետելու իրենց մասնագիտությանը։

Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտը խոշոր դեր է կատարել ռեսպուբլիկայի տեխնիկական ինտելիգենցիայի ստեղծման գործում։ Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության և շինարարության մեջ աշխատող ինժեներա-տեխնիկական աշխատողների գերակշռող մասը Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտի շրջանավարտներից է։

Սովետական Հայաստանի խոշոր բուհերի թվին են պատկանում նաև Խ. Աբովյանի անվան Մանկավարժական և Երևանի Բժշկական ինստիտուտները։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների հետ միասին Սովետական Հայաստանում գործում են բազմաթիվ միջնակարգ մասնագիտական կրթության հաստատություններ։ Սովետական Հայաստանի միջնակարգ մասնագիտական կրթության հաստատությունների առաջնեկը՝ Երևանի Ինդուստրիալ տեխնիկումը, հիմնադրվել է 1921 թվականին, որը հետագայում վեր է ածվել երկու տեխնիկումի՝ Շինարարական և Էլեկտրամեխանիկական տեխնիկումների։ Այժմ Սովետական Հայաստանում գործում են 33 տեխնիկումներ և միջնակարգ մասնագիտական ուսումնարաններ, որոնցում սովորում են 14 հազար ուսանողներ։

Ժողովրդական տնտեսության մեջ աշխատող երիտասարդությանը մասնագիտական կրթություն տալու նպատակով ռեսպուբլիկայում գնալով ընդլայնվում է հեռակա բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությունը։ Անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայի բուհերի հեռակա բաժիններում սովորում էին 7000 հոգի, իսկ տեխնիկումներում՝ 3000 հոգի։

Հայտնի է, որ Սովետական Միությունը բարձրագույն կրթության և ընդհանրապես ժողովրդական կրթության բնագավառում ո՛չ միայն հասել, այլև վաղուց անցել է ամենազարգացած կապիտալիստական երկրներից։ Սովետական Հայաստանը բարձրագույն կրթության բնագավառում իր հետևում է թողել այնպիսի կապիտալիստական երկրների, ինչպիսիք են՝ Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Դանիան, էլ չենք խոսում Հունաստանի ու Թուրքիայի մասին։ Եթե Սովետական Հայաստանում յուրաքանչյուր տասը հազար բնակչին միջին հաշվով ընկնում է բարձրագույն ուսումնական հաստատությունների 107 ուսանող, ապա Ֆրանսիայում յուրաքանչյուր տասը հազար բնակչին ընկնում է 40 ուսանող, Իտալիայում՝ 34, իսկ Արևմտյան Գերմանիայում՝ 31 ուսանող։

Սովետական Հայաստանում բարձրագույն կրթության նշանակալի զարգացման մասին է խոսում նաև այն փաստը, որ 1959 թվականին ռեսպուբլիկայի յուրաքանչյուր 1000 բնակչից 28-ը բարձրագույն կրթություն ունեին։ Բնակչությանը բարձրագույն կրթության ոլորտը ընդգրկելու մակարդակով միութենական ռեսպուբլիկաների մեջ Հայկական ՍՍՌ-ն բռնում է երկրորդ տեղը։

Սովետական Հայաստանում աննախընթաց զարգացման է հասել նաև գիտությունը։ Բազմադարյան կուլտուրա ունեցող հայ ժողովուրդը մինչև սովետական կարգերի հաղթանակը չի ունեցել ոչ մի գիտա-հետազոտական հաստատություն։ Մեր անցյալի մեծատաղանդ գիտնականներն ու արվեստի գործիչներն աշխատել են չափազանց դժվարին պայմաններում, առանց պետական օժանդակության, ծայրահեղ կարիքի մեջ։

Սովետական իշխանության առաջին տարիներին գիտա-հետազոտական աշխատանքը հիմնականում կենտրոնացված էր Երևանի Պետական համալսարանում և ռեսպուբլիկայի մյուս բուհերում։ Սակայն գիտական կադրերի արագ աճը հնարավորություն ընձեռեց 1935 թվականին Երևանում կազմակերպելու ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի ֆիլիալ, որի կազմի մեջ մտան Երկրաբանական, Քիմիական, Բիոլոգիական, Բուսաբանական, Պատմության, Գրականության և լեզվի ինստիտուտները, ինչպես նաև 6 սեկտոր և բաժին։

Հայրենական պատերազմի ամենաթեժ օրերին՝ 1943 թվականի նոյեմբերին, Սովետական կառավարության որոշմամբ, Հայաստանում կազմակերպվեց Գիտությունների Ակադեմիա։ Պատերազմի այդ դժվարին օրերին Հայաստանում Գիտությունների Ակադեմիայի կազմակերպումը նորից վկայում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մեծ հոգատարության մասին հայ ժողովրդի կուլտուրայի զարգացման նկատմամբ։

Հետագա տարիներին Հայկական ՍՍՌ-ում հիմնադրվեցին բազմաթիվ նոր գիտա-հետազոտական հաստատություններ։ Այժմ Սովետական Հայաստանում գործում են 76 գիտա-հետազոտական հիմնարկություններ։ Ռեսպուբլիկայում գիտական աշխատողների թիվը 1959 թվականին կազմում էր 4084 մարդ, որոնցից՝ 158 հոգի գիտության դոկտորներ և 1431 հոգի գիտությունների թեկնածուներ։

Սովետական Հայաստանի գիտնականներն իրենց արժեքավոր աշխատություններով աստղաբաշխության, մաթեմատիկայի, քիմիայի, ֆիզիկայի, հատկապես ատոմային ֆիզիկայի, տեխնիկական գիտությունների, բիոլոգիական



և գյուղատնտեսական գիտությունների և հասարակական գիտությունների բնագավառներում նպաստել են սովետական գիտության զարգացմանն ու ծաղկմանը։ Ռեսպուբլիկայի գիտնականների սուրբ պարտականությունն է՝ իրենց ջանքերը գերազանցապես ուղղել ժողովրդատնտեսական կարևոր պրոբլեմների լուծմանը, բարձրարժեք աշխատություններ տալ սովետական հասարակության զարգացման, կոմունիզմի ծավալուն կառուցման օրինաչափությունների մասին։

Հայ ժողովրդի կուլտուրայի ծաղկման մասին է վկայում նաև կուլտուրլուսավորական հաստատությունների խիտ ցանցի առկայությունը ռեսպուբլիկայում։ Եթե նախասովետական Հայաստանում կային ընդամենը մեկ ակումբ, 6 կինոկետեր և 13 գրադարան, ապա 1959 թվականին ռեսպուբլիկայում գործում էին 1132 մասսայական գրադարան, 1109 ակումբային հիմնարկներ, 464 կինոթատրոններ ու կինոկետեր, 11 թատրոն և 21 թանգարան։ Ռեսպուբլիկայում գործող խոշորագույն գրադարանը 1921 թվականին հիմնադրված՝ Երևանի Մյասնիկյանի անվան պետական հանրային գրադարանն է, որի գրքային ֆոնդը հասնում է մոտ 3 միլիոնի։ Այն յուրաքանչյուր տարի միջին հաշվով իր ընթերցողներին բաց է թողնում ավելի քան 800 հազար կտոր գիրք և տալիս է 90 հազար բիբլիոգրաֆիական տեղեկություններ։ Խոշոր գրադարաններ են նաև Պետական համալսարանի, Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտի, Լենինականի քաղաքային գրադարանները։

Երևանում է գտնվում Պետական ձեռագրատունը՝ մատենադարանը, որը հանդիսանում է բազմադարյան հայ կուլտուրայի հարուստ գանձարաններից մեկը։ Այստեղ հավաքված են մոտ 14 հազար հին ձեռագրեր և մոտ 200 հազար արխիվային նյութեր։

Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքի անբաժանելի և կարևոր մասն են կազմում ռադիոհաղորդումները։ Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի տարբեր բնագավառների վերաբերյալ ռադիոհաղորդումներ կազմակերպելու համար ստեղծված է ռադիոկայան։ Ռադիոյի միջոցով պարբերաբար հանդես են գալիս ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի բնագավառների բազմաթիվ աշխատողներ՝ բանվորներ, կոլտնտեսականներ, գիտնականներ, ինժեներներ, երգիչներ, երաժիշտներ, դերասաններ և այլն։

Արդեն մի քանի տարի է, ինչ Երևանում գործում է հեռուստատեսության ստուդիան, որի հաղորդումները մեծ հետաքրքրությամբ են ընդունվում ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում։

Սովետական իշխանության տարիներին արագ թափով զարգացավ մամուլը և գրքի հրատարակության գործը։ Հիշատակենք, որ 1913 թվականին Հայաստանում հրատարակվել է ընդամենը 55 անուն գիրք, 80 հազար տպաքանակով, 6 թերթ՝ 19 հազար տպաքանակով և 2 ամսագիր շատ փոքր տպաքանակով։ Դաշնակցական կառավարության տարիներին վիճակն ավելի վատացավ. բավական է միայն նշել, որ 1918 թվականին Հայաստանում հրատարակվել է ընդամենը 6 անուն գիրք։

Անցյալ տարի Հայկական ՍՍՌ-ում հրատարակվող գրքերի տպաքանակը հասավ 7057 հազարի, այսինքն՝ 1913 թվականին հրատարակված գրքերի տպաքանակից 88,2 անգամ ավելի։ Այժմ ռեսպուբլիկայում հրատարակվում են 63 ամսագիր և 100 թերթ՝ մեծ տպաքանակով։

Բացի տեղական հեղինակների ինքնուրույն գրականությունից մեծ աշխատանքներ են տարվել նաև թարգմանական գրականության հրատարակության բնագավառում։ Բավական է ասել, որ միայն վերջին երեք տարում սովետական և ժողովրդա-դեմոկրատական երկրների ժողովուրդների գործերից, ինչպես նաև շատ կապիտալիստական երկրների ժողովուրդների գրական երկերից թարգմանվել ու հրատարակվել են շուրջ 1000 անուն գիրք։

Հայ ընթերցողն այսօր մայրենի լեզվով իր սեղանին ունի մարքսիզմ-լենինիզմի կլասիկների համարյա բոլոր երկերը։ Սովետական իշխանության տարիներին Կարլ Մարքսի երկերից մեր ռեսպուբլիկայում հրատարակվել են 29 անգամ, 204,5 հազար տպաքանակով, Ֆրիդրիխ Էնգելսի գործերը՝ 48 անգամ, 299,5 հազար տպաքանակով։ Հայոց լեզվով լույս են տեսել Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության բոլոր 37 հատորները։ Պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի գործերը մեզ մոտ հրատարակվել են 250 անգամ, ավելի քան 2 միլիոն ընդհանուր տպաքանակով։

Ռեսպուբլիկայում լայնորեն զարգացել է գրքի վաճառքի գործը։ Սովետական Հայաստանում հրատարակված գրքերը վաճառվում են ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանյան ավելի քան 50 երկրներում։

Մեծ են կուլտուրայի ասպարեզում հայ ժողովրդի ձեռք բերած նվաճումները. սակայն ավելի փայլուն են նրա զարգացման հեռանկարները։ ՍՍՌՄ զարգացման յոթնամյակի յուրաքանչյուր տարին նորանոր հաջողություններ կբերի մեր մեծ Հայրենիքի բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև հայ ժողովրդին։

***

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո անցած 40 տարիների ընթացքում մեծ ու փառապանծ ուղի են անցել նաև սովետահայ գրականությունն ու արվեստը։

Սովետական իշխանության հենց առաջին տարիներին հայ գրական հորիզոնում, գրողների ավագ սերնդի ներկայացուցիչների կողքին հայտնվում են մի քանի փայլուն աստղեր, որոնք իրենց ստեղծագործություններում երգում են պրոլետարական ռևոլյուցիան, այդ ռևոլյուցիային նվիրված, նոր կյանք կառուցող աշխատավոր մարդուն, մեծ վարպետությամբ ու ջերմ հոգու ամբողջ ուժով կերտում են պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ Լենինի հոյակապ կերպարը, խոր ատելությամբ խարազանում իրենց դարն ապրած հին կարգերը, նրանցում տիրող վայրագ բարքերը։

Հետագա ժամանակաշրջանում սովետական գրողների շարքերը լրացվում են բազմաթիվ նոր ու շնորհալի գրողներով։ Այժմ Սովետական Հայաստանի Գրողների Միությունն ընդգրկում է 220 հոգի։

Քննադատաբար օգտագործելով հայ բազմադարյան գրականության տրադիցիաները, յուրացնելով ու տիրապետելով սոցիալիստական ռեալիզմի մեթոդին, սովետահայ գրողները կարճ ժամանակում ստեղծեցին ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական հարուստ ու բազմաժանր գրականություն։ Սովետահայ գրողների գեղարվեստական, բարձրարժեք, գաղափարայնությամբ հագեցված բազմաթիվ գործերի հուշակը դուրս է եկել մեր ռեսպուբլիկայի շրջանակներից։ Նրանք թարգմանվել են սովետական ժողովուրդ-



ների, սոցիալիզմի լագերի մյուս երկրների ժողովուրդների, ինչպես նաև կապիտալիստական աշխարհի շատ ժողովուրդների լեզուներով։

Հայ արվեստի ամենահին ճյուղերից մեկը թատրոնն է, որը մոտ 2000 տարվա պատմություն ունի։ 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին հայ բեմում հանդես եկան մեծատաղանդ վարպետներ Գևորգ Ճմշկյանը, Պետրոս Ադամյանը, Սիրանույշը, Հովհաննես Աբելյանը, Վահրամ Փափազյանը, Արուս Ոսկանյանը, որոնց գործունեությունը բարերար ազդեցություն ունեցավ հայ թատերական կուլտուրայի հետագա զարգացման վրա։ Չնայած հայ թատրոնի այդքան հին պատմությանը, նրա զարգացման հնարավորությունները մինչև սովետական կարգերի հաղթանակը չափազանց նեղ ու սահմանափակ էին։ Բավական է միայն հիշատակել, որ նախառևոլյուցիոն Հայաստանում գոյություն չուներ մշտական գործող ոչ մի դրամատիկական թատրոն։

Սովետական իշխանության հենց առաջին տարում հիմնադրվում է Երևանի պետական դրամատիկական թատրոնը, որն իր անդրանիկ ներկայացումը՝ Գ. Սունդուկյանի «Պեպո» պիեսը, բեմադրում է 1922 թվականի հունվարի 15-ին։

Դրանից հետո մեկը մյուսի հետևից պետական միջոցներով կազմակերպվում են շատ նոր թատրոններ։ Այժմ Հայկական ՍՍՌ-ում գործում են Սունդուկյանի անվան պետական դրամատիկական ակադեմիական թատրոնը, Սպենդիարովի անվան Օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնը, Լենինականի և Կիրովականի քաղաքային պետական թատրոնները, ռուսական պետական թատրոնը, Պատանի հանդիսատեսի և տիկնիկային թատրոնները, Երաժշտական կոմեդիայի թատրոնը, Արտաշատի, Ղափանի, Գորիսի և Կամոյի շրջանային թատրոնները, ինչպես և Պետական կրկեսը։

Սովետահայ թատրոնի խաղացանկում մեծ տեղ են գրավում ռուսական, հայկական, ինչպես նաև արևմտաեվրոպական կլասիկ դրամատուրգիայի նշանավոր գործերը։ Մեր հանդիսատեսը միշտ էլ մեծ սիրով է դիտում Սովետական Հայաստանի թատրոններում բեմադրվող՝ Օստրովսկու մի քանի գործերը, Մաքսիմ Գորկու «Եգոր Բուլիչեր...» և «Հատակում» պիեսները, հայ կլասիկներից՝ Գ. Սունդուկյանի, Հ. Պարոնյանի և Ալ. Շիրվանզադեի պիեսները։

Սակայն գնալով թատերական ռեպերտուարում ավելի են գերակշռում ժամանակակից թեմաներով պիեսները, որոնցում պատկերվում են կոմունիզմ կառուցող մարդու առօրյան, նրա ստեղծագործ աշխատանքն ու անձնական կյանքն իր բոլոր կողմերով, սովետական մարդու նվիրական ձգտումներն ու իղձերը։ Ժամանակակից թեմատիկայով հաջող պիեսներ են ստեղծել Ն. Զարյանը, Գ. Տեր-Գրիգորյանը, Գ. Բորյանը, Արաքսմանյանը և ուրիշներ, որոնք տևականորեն մնում են ռեսպուբլիկայի թատրոնների ռեպերտուարում։

Սովետահայ թատերական կուլտուրայի և կատարողական կադրերի պատրաստման գործում մեծ դեր է կատարել Սունդուկյանի անվան պետական դրամատիկական ակադեմիական թատրոնը։ Այդ թատրոնի ստեղծագործական կոլեկտիվը դաստիարակել ու աճեցրել է այնպիսի նշանավոր դերասաններ, ինչպիսիք են՝ Հ. Ներսիսյանը, Օլգա Գուլազյանը, Ա. Ավետյանը, Գ. Ջանիբեկյանը, Դ. Մալյանը, Թ. Սարյանը և շատ ուրիշներ, որոնց թվում երիտասարդ ընդունակ ու խոստումնալի կադրեր։ Թատրոնում աճել են նաև մեր նշանավոր ռեժիսյորական կադրերը՝ Աճեմյան, Գուլակյան, Վարդանյան, Ղափլանյան և ուրիշներ։

Հայ ժողովրդի կուլտուրայի մեջ տեղի ունեցած հսկայական փոփոխու-
թյուններն իրենց արտացոլումն են գտել նաև նրա երաժշտական կուլտուրա-
յում: Բազմադարյան պատմություն ունեցող հայկական երաժշտությունը մինչև
19-րդ դարի կեսերը առավելապես զարգացել է ժողովրդական, գուսանական
երաժշտության ձևով: Միայն 19-րդ դարի երկրորդ կեսից մեծահանճար երա-
ժըշտագետներ Կոմիտասի և Ալ. Սպենդիարյանի ջանքերով հայ ազգային կոմ-
պոզիտորական երաժշտության հիմքը դրվեց:

Հայ ժողովրդական և պրոֆեսիոնալ երաժշտությունն իր ծաղկումն ապ-
րեց միայն Սովետական իշխանության տարիներին: Սովետական կարգերի
հաստատման առաջին տարում Երևանում հիմնադրվեց հայ ժողովրդի պատ-
մության մեջ առաջին երաժշտական ուսումնական հաստատությունը՝ երա-
ժըշտական ստուդիան, որի բազայի վրա երկու տարի հետո կազմակերպվեց
Երևանի պետական կոնսերվատորիան:

20-ական թվականներին Սովետական Հայաստան են տեղափոխվում հայ
երաժշտագետների ավագ սերնդի լավագույն ներկայացուցիչները՝ Ալ. Սպեն-
դիարյանը, Սպիրիդոն Մելիքյանը, Ա. Տեր-Ղևոնդյանը, որոնք իրենց գիտելիք-
ներն ու ունակությունները նվիրում են սովետահայ երաժշտական կուլտուրայի
ստեղծմանն ու զարգացմանը: Այս տարիներին է, որ Ալ. Սպենդիարյանը
գրում է իր պատմա-հայրենասիրական «Ալմաստ» օպերան և «Երևանյան
էտյուդները», իսկ Ա. Տեր-Ղևոնդյանը գրում է «Անթառամ» սիմֆոնիկ պատ-
կերը: Դրանցով էլ սահմանափակվում են 20-ական թվականներին ստեղծած
երաժշտական մեծ գործերը. այդ տարիների երաժշտական ստեղծագործու-
թյունների մեջ մեծ տեղ են բռնում երգերը:

30-ական թվականներին նշանակալի չափերով ընդլայնվում է սովետահայ
կոմպոզիտորների ստեղծագործական դիապազոնը ինչպես թեմատիկ, այնպես
էլ երաժշտական ձևերի ու ժանրերի տեսակետից: 30-ական թվականներին
հանդես է գալիս սովետահայ երիտասարդ ու շնորհալի կոմպոզիտորների մի
ամբողջ պլեադա՝ Հարո Ստեփանյան, Գ. Եղիազարյան, Կարո Զուխաջյան,
Աշոտ Սաթյան, Մ. Մազմանյան, Ա. Այվազյան:

1932 թվականին առաջին հայկական օպերայի և բալետի թատրոնի բա-
ցումը Երևանում խոշոր չափով նպաստեց սովետահայ օպերային և բալետային
կուլտուրայի զարգացմանը: Հայ կոմպոզիտորների օպերաների բեմական
կատարման գործում խոշոր դեր խաղացին կատարողական արվեստի անվանի
գործիչներ Հայկանուշ Դանիելյանը, Լևոն Իսեցկին—Հովհաննիսյանը, Շարա
Տալյանը, Պավել Լիսիցյանը, Տաթևիկ Սազանդարյանը, իսկ հետագայում նաև
Գոհար Գասպարյանը, Նար Հովհաննիսյանը և շատ ուրիշներ:

Երաժշտական կատարողական արվեստի զարգացման և սովետահայ երա-
ժըշտության ժողովրդականացման գործում մեծ է նաև Հայֆիլհարմոնիայի
դերը, որն ընդգրկում է բազմաթիվ կատարողական կոլեկտիվներ և մենակա-
տարներ. ժողովրդական երգի ու պարի անսամբլը, գուսանական երգի
անսամբլը, էստրադային նվագախումբը, Կոմիտասի անվան կվարտետը
և այլն:

Սովետահայ երաժշտության զարգացման գործում չափազանց մեծ է կոմ-
պոզիտոր Արամ Խաչատրյանի դերը, որի ստեղծագործությունների մեծ մասը
համաշխարհային հռչակ է վայելում: Նրա ստեղծագործություններում մեծ



խորությամբ ու բարձր հուզականությամբ բացահայտվում են մեր էպոխայի
վեհությունը, նոր կյանք կերտող մարդու պայծառ կերպարը՝ իր ամբողջ բար-
դությամբ ու բազմազանությամբ: Ա. Խաչատրյանին է պատկանում առաջին
հայկական սիմֆոնիան (1935 թ.), առաջին հայկական դաշնամուրային կոն-
ցերտը (1937 թ.), ժամանակակից թեմայով գրված առաջին հայկական բա-
լետը (1940 թ.), որը «Երջանկություն» անունն էր կրում, իսկ հետագայում
վերախմբագրվեց և անվանվեց «Գայանե»: Իր բեղմնավոր ստեղծագործական
կյանքի հետագա տարիներին Ա. Խաչատրյանը գրել է «Սպարտակ» բալետը և
շատ ուրիշ բարձրարժեք գործեր:

Սովետահայ երաժշտությունը և արվեստի մյուս ճյուղերը հասունության
յուրահատուկ քննություն բռնեցին 1939 թվականի հունիսին Մոսկվայում
կայացած հայ գրականության և արվեստի տասնօրյակում: Մոսկվայի հա-
սարակայնությունը մեծ ջերմությամբ ընդունեց և բարձր գնահատեց Հայկա-
կան ՍՍՌ արվեստի ստեղծագործական կոլեկտիվների ելույթները: Այդ տասն-
օրյակը, ինչպես նաև 1956 թվականի հայ գրականության ու արվեստի երկ-
րորդ տասնօրյակը, սովետահայ կուլտուրայի, հիրավի, մեծ նվաճումների
փայլուն ցուցադրումը հանդիսացավ:

40-ական թվականներին հանդես են գալիս տաղանդավոր երիտասարդ
կոմպոզիտորներ՝ Ա. Հարությունյանը, Ա. Բաբաջանյանը, Է. Միրզոյանը,
Գ. Սարյանը, որոնց հենց առաջին ստեղծագործությունները աչքի են ընկնում
իրենց ներքին խորությամբ ու հարուստ բովանդակությամբ և արժանանում են
լսողների հավանությանը: 1950 թվականին ականավոր կոմպոզիտոր Ա. Տիգ-
րանյանը ավարտում է իր լավագույն ստեղծագործություններից մեկը՝ պատ-
մա-հերոսական «Դավիթ բեկ» օպերան: 50-ական թվականների լավագույն
ստեղծագործություններից են՝ Աշոտ Սաթյանի «Արարատյան դաշտի երգերը»
ոկալային ցիկլը, Գ. Եղիազարյանի «Սևան» բալետը, Է. Հովհաննիսյանի
«Մարմար» բալետը, Ա. Բաբաևի «Արծվաբերդ» օպերան, Ա. Ստեփանյանի, Կ.
Օրբելյանի կվարտետները, Ա. Հարությունյանի, Գ. Սարյանի, Ջ. Տեր-Թադե-
վոսյանի սիմֆոնիաները:

Անցած 40 տարիների ընթացքում մեծ ու բեղմնավոր աշխատանք է կա-
տարվել հայ երաժշտության ասպարեզում:

Հայ ժողովրդի կուլտուրական զարգացման բնագավառում ձեռք բերած
հաջողությունների մեջ արժանավոր տեղ է գրավում կերպարվեստը:

Նախառևոլյուցիոն Հայաստանում չկար գեղարվեստական ուսումնական
ոչ մի հաստատություն, պատկերասրահ կամ թանգարան: 1921 թվականին
Երևանում կազմակերպվում է թանգարան, կերպարվեստի բաժնով: Վերջինիս
բազայի վրա մի քանի տարի հետո ստեղծվում է Պետական պատկերասրահ:
Սովետական իշխանության տարիներին Հայաստանում հիմնադրվում են նաև
կերպարվեստի դպրոցներ, տեխնիկում և ինստիտուտ: Սովետահայ կերպար-
վեստի ստեղծման ու զարգացման առաջին շրջանում իրենց ստեղծագործու-
թյուններով աչքի ընկան՝ Մարտիրոս Սարյանը, Ստեփան Աղաջանյանը, Հա-
կոբ Կոջոյանը, Սեդրակ Առաքելյանը, Արա Սարգսյանը, Գաբրիել Գյուրջյանը,
Միքայել Արուտչյանը, Սուրեն Ստեփանյանը, Այծեմնիկ Ուրարտուն և շատ
ուրիշներ:

Սովետահայ նկարիչների այդ ավագ սերնդի ստեղծագործության թեման

վերածնված հայրենիքն է իր գեղատեսիլ բնությամբ, նյութական բարիքներ ստեղծող աշխատասեր մարդկանցով։ Հայրենի բնության գեղեցկությունը ինքնատիպ վարպետությամբ պատկերված է Մարտիրոս Սարյանի նկարներում։ Նրա տաղանդը փայլում է նաև դիմանկարչության ժանրում։ Արտասովոր ձիրքի և անդադրում ու բեղմնավոր ստեղծագործական աշխատանքի շնորհիվ ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանի հռչակը գնալով մեծանում է. նա հանդիսանում է Սովետական Միության առաջնակարգ նկարիչներից մեկը։

20-ական թվականների վերջերին սովետական թեմատիկան առանձնապես լայն արտացոլում է գտնում Սեդրակ Առաքելյանի ստեղծագործություններում։ Նրա «Կորչի չադրան», «Պիոներները Սևանում», «Կուլտուրան լեռներում» և այլ նկարներում բացահայտվում են Սովետական Հայաստանում կատարված տեղաշարժերն ու փոփոխությունները։ 30-ական թվականների վերջերից սկսած սովետահայ կերպարվեստագետների շարքերը անընդհատ համալրվում են սովետական ուսումնական հաստատություններում մասնագիտական կրթություն ստացած երիտասարդ ուժերով, որոնց ստեղծագործական աշխատանքի պտուղները ջերմությամբ են ընդունվում ռեսպուբլիկայի հասարակայնության կողմից։ Նկարիչների այդ սերնդին են պատկանում Մ. Աբեղյանը, Ա. Ջիլինգարյանը, Մ. Ասլամազյանը, Խ. Եսայանը, Ս. Արուտչյանը, Ե. Սավայանը, Ն. Զարդարյանը, Իսաբեկյանը, Գ. Խանջյանը և շատ ուրիշներ։

Սովետահայ թեմատիկ-կոմպոզիցիոն պատկերի զարգացման գործում հատկապես մեծ է Ն. Զարդարյանի և Է. Իսաբեկյանի դերը։ Զարդարյանի «Սևանգէսի կառուցողների հաղթանակը» մեծածավալ կտավում բարդ հոգեբանական բնութագրումների միջոցով ռեալիստորեն բացահայտված է սովետական մարդկանց կոմունիստական վերաբերմունքը դեպի աշխատանքը, ցույց է տրված ռեսպուբլիկայի ինդուստրիալ շինարարության մի դրվագը։ Նրա «Նախաշավիղ» նկարում գեղանկարչական զուսպ, բայց արտահայտիչ միջոցներով, դիպուկ ու բազմիմաստ դետալներով ստեղծվել է հայ մեծ լուսավորիչ դեմոկրատ Խ. Աբովյանի կերպարը։

Էդվարդ Իսաբեկյանի ստեղծագործությունների գլխավոր թեման պատմությունն է, որը նկարիչը պատկերում է հերոսականացված ռոմանտիկ շնչով։ Պատմական ժանրով Իսաբեկյանի ստեղծած գործերից առանձնապես ուշագրավ են «Դավիթ բեկ», «Խ. Աբովյան», «Պատանի Դավիթը», «Հաղպատի գյուղացիների ապստամբությունը 1903 թվին» կոմպոզիցիոն կտավները։

Սովետական իշխանության տարիներին գեղանկարչության հետ միասին նշանակալի զարգացման հասան նաև կերպարվեստի մյուս տեսակները՝ գրաֆիկան և քանդակագործությունը։

Արվեստի ամենամասսայական տեսակներից մեկը կինոն է, որը երևան է գալիս գիտության և տեխնիկայի զարգացման որոշ աստիճանի վրա։ Նախառևոլյուցիոն Հայաստանը, զուրկ լինելով զարգացած արդյունաբերությունից, բնականաբար չէր էլ կարող կինոարվեստ ստեղծել։ Միայն Սովետական իշխանության տարիներին, հենվելով մեր մեծ Հայրենիքի արդյունաբերության վրա և ռուս կինոարվեստի ստեղծագործական ուժերի լայն, եղբայրական օգնության շնորհիվ հնարավոր դարձավ Սովետական Հայաստանում ստեղծել սեփական կինոարդյունաբերություն և կինոարվեստ։

Հայկինոյի առաջին ֆիլմը «Նամուս»-ն էր, որը ստեղծվել է 1925 թվակա-



նին։ Արդեն այդ անդրանիկ նկարում հայկական կինոն դրսևորեց իրեն, որպես սոցիալական մեծ պրոբլեմներ արծարծող ու ռեալիզմի հիմքերի վրա կանգնած արվեստ։ «Նամուս»-ից հետո նկարահանվեցին «Զարե» և «Խաս փուշ» ֆիլմերը և ապա՝ «Տունը հրաբխի վրա», «Մեքսիկական դիպլոմատները», «Սև թևի տակ», «Կիկոս» նկարները։ Վերջին ֆիլմերը պատմում են մեր ժողովրդի՝ հին կարգերի դեմ մղած ռևոլյուցիոն պայքարի մասին։ Հայկինոյի վերջին համր ֆիլմը «Գիքորն» էր, որը մեծ հաջողությամբ ցուցադրվեց մեր ամբողջ երկրի համարյա բոլոր էկրաններում։ Ֆիլմի հաջողությանը խոշոր չափով նպաստել է սովետահայ տաղանդավոր դերասան Հրաչյա Ներսիսյանի հմայիչ ու գերող խաղը։

Զափազանց մեծ հաջողություն ունեցավ Հայկինոյի ստեղծած առաջին հնչունային «Պեպո» կինոնկարը։ Այդ ֆիլմում գունեղ պատկերներով և ռեալիստական մեծ ուժով արտացոլվում են հին հասարակության ատելի բարքերը և հակամարտ սոցիալական հակասությունները։

Նախապատերազմյան ժամանակաշրջանում Հայկինոյի ստեղծած հաջող կինոնկարների թվին են պատկանում նաև «Զանգեզուր», «Սևանի ձկնորսները» և «Լեռնային արշավ» ֆիլմերը։ Այդ ֆիլմերին հատուկ են ռևոլյուցիոն ռոմանտիկան. գործող հերոսներն աչքի են ընկնում իրենց անսահման նվիրվածությամբ ռևոլյուցիայի մեծ գործին։ Մինչև այսօր էլ այդ ֆիլմերը պահպանում են իրենց թարմությունը և խոշոր դաստիարակչական նշանակություն ունեն։

Երկար դադարից հետո սովետահայ կինեմատոգրաֆիայի նոր, բուռն զարգացումը վերսկսվում է 1954 թվականից։ Այդ ժամանակից անցած 6 տարիների ընթացքում «Հայֆիլմ» կինոստուդիան թողարկել է 22 լիամետրաժ և 4 կարճամետրաժ գեղարվեստական ֆիլմեր, չհաշված բազմաթիվ խրոնիկալ և դոկումենտալ ֆիլմերն ու ակնարկները։ Վերջին տարիներում թողարկված ֆիլմերի մեծ մասը նվիրված է արդիական թեմաներին՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողների, ինտելիգենցիայի և երիտասարդության աշխատանքին ու կյանքին, նոր կենցաղի և կոմունիստական բարոյականության հարցերին։

Սովետահայ կինոարվեստի ստեղծագործական աճին զուգընթաց ընդլայնվել է նաև նրա տեխնիկական բազան։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ոչինչ չեն խնայում գիտության ու կուլտուրայի զարգացման համար։ Մնում է, որ կուլտուրայի բնագավառի աշխատողները լիակատար կերպով օգտագործեն այդ հնարավորությունները։

Հայ ժողովրդի ձեռք բերած պատմական հաջողությունները ցույց են տալիս, որ բոլոր ճնշված ժողովուրդների ազատագրության, նրանց էկոնոմիկայի ու կուլտուրայի արագ զարգացումն ապահովող միակ ուղին սոցիալիզմի ուղին է, այն ուղին, որը նախագծել և իրենց մեծ հանճարի ամբողջ ուժով լուսավորել են աշխարհի առաջավոր մարդկության առաջնորդներ Մարքսը, Էնգելսը, Լենինը։

***

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո անցած 40 տարիների ընթացքում վերածնված հայ ժողովրդի կուլտուրան մեծ ու փառապանծ ուղի է անցել։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հերո-

սական ու շնորհակալ աշխատանք են կատարել գիտության ու կուլտուրայի աշխատողները, ողջ ժողովրդական ինտելիգենցիան։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը նոր, փայլուն հեռանկարներ է բացում սովետական գիտության ու կուլտուրայի հետագա զարգացման համար։ Այդ ժամանակաշրջանը, ինչպես նշված է պարտիայի XXI համագումարի որոշումներում, բնութագրվելու է սոցիալիստական կուլտուրայի հետագա հուժկու վերելքով, ժողովրդական կրթության, գիտության, գրականության ու արվեստի չտեսնված զարգացմամբ։ Մեր օրերի գլխավոր խնդիրներից մեկը կոմունիստական գծերով օժտված, բազմակողմանի զարգացած բանվորության, նոր մարդու ձևավորումն է։ Արդի պայմաններում բացառիկ մեծ նշանակություն է ստանում աշխատավորների դաստիարակումը կոլեկտիվիզմի, աշխատասիրության, սոցիալիստական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով, նոր հասարակարգի բարոյական նորմաների անխախտ պահպանման ու իրականացման ոգով։ Այդ վեհ ու պատվավոր խնդիրների կենսագործման համար է, որ պիտի պայքարի գիտության ու կուլտուրայի բնագավառում աշխատող յուրաքանչյուր մարդ։

Ոգևորված ձեռք բերած նվաճումներով ու կոմունիստական շինարարության փայլուն հեռանկարներով, ռեսպուբլիկայի գիտության ու կուլտուրայի բնագավառի աշխատողների ստվար բանակը, ողջ ժողովրդի հետ միասին, պանծալի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, այսուհետև ևս իր ամբողջ ուժն ու ջանքերը կօգտագործի սոցիալիստական հասարակարգի նյութական ու կուլտուրական հարստության բազմապատկման համար, հանուն կոմունիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի։

---

# ՃԱՐՏԱՐԱԳՈՐԾ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

## Վ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ճարտարապետ

Սովետական կարգերի շնորհիվ վերածնված հայ ժողովրդի երջանիկ այսօրը շատ կարևոր նվաճումներով է նշանավոր. սակայն առավել ցայտուն կերպով կարծես այն մարմնավորվել է նրա նորոգ ճարտարապետության մեջ։

Սովետահայ ճարտարապետությունը կազմավորվեց, զարգացավ ու իր նշանակալից նվաճումներին հասավ այն հսկայածավալ շինարարության բովում, որն իրականացվեց Հայաստանում անցած քառասուն տարիներին, հատկապես, հետպատերազմյան ժամանակաշրջանում, երբ ողջ ռեսպուբլիկան վերածվեց մի վիթխարի կառուցահրապարակի։

Շինարար հայ ժողովրդի քառասուն տարիների մեծագույն ջանքերի կնիքն է դրոշմված նախկինում հետամնաց ու անբարեկարգ մեր քաղաքների ու բնակավայրերի՝ այժմյան գեղեցիկ փողոցների ու հրապարակների վեհաշուք շենքերով կազմված ճարտարապետական ներդաշնակ անսամբլների, բնակելի թաղամասերի ու կանաչի ընդարձակ տարածությունների վրա։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության հարաճուն զարգացման շնորհիվ տնտեսական ամուր հիմքեր ստեղծվեցին ռեսպուբլիկայի քաղաքների ու բնակավայրերի բարեկարգման ու կառուցապատման, կապիտալ շինարարության ծավալը տարեցտարի ավելացնելու համար։

Անցած ժամանակաշրջանը բնութագրվում է Հայաստանի քաղաքների բուռն զարգացմամբ։ Եթե նախասովետական շրջանում կար ընդամենը չորս քաղաք՝ մոտ հարյուր հազար բնակիչներով, ապա քաղաքների թիվն այժմ տասից անցել է, իսկ նրանց բնակիչների թիվը կազմում է 884 հազար մարդ, կամ ռեսպուբլիկայի ողջ ազգաբնակչության կեսը։ Այդ նույն ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանի ազգաբնակչությունն աճել է մոտ 15 անգամ, մի բան, որ աշխարհի շատ քիչ քաղաքներին է բնորոշ։

Քաղաքաշինական աշխատանքների հիմքում մշտապես ընկած է եղել հոգատարությունը աշխատավորների բնակարանային պայմանների բարելավման նկատմամբ։ Դրանով պետք է բացատրել, որ բնակարանային շինարարությունը միշտ էլ տրվել է կարևոր նշանակություն, իսկ վերջին տարիներին այն ավելի մեծ թափ է ստացել։ Եթե անցած ժամանակաշրջանում մեր քաղաքներում ու քաղաքատիպ վայրերում պետական միջոցներով կառուցվել են բնակելի տներ 3 միլիոն 300 հազար քառ. մետր ընդհանուր մակերեսով, ապա միայն հետպատերազմյան տարիներին քաղաքների բնակչությունն իր միջոց-

ներով ու պետության օժանդակությամբ կառուցել է մեկ միլիոն 600 հազար քառ. մետր բնակելի տարածություն, իսկ գյուղական վայրերի ազգաբնակչությունը՝ 77 հազար առանձնատուն։ Հետագա տարիների ընթացքում ավելի է ծավալվելու բնակարանային շինարարությունը, առաջիկա յոթնամյակի ընթացքում Հայաստանում շահագործման կհանձնվի 2 միլիոն 328 հազար քառ. մետր բնակելի տարածություն։

Համապատասխանաբար հոգ է տարվել քաղաքների կոմունալ տնտեսության զարգացման ու կատարելագործման ուղղությամբ։ Եթե նախասովետական Հայաստանի քաղաքներից միայն Երևանն ուներ ջրմուղի և կոյուղու խիստ սահմանափակ ցանց, ապա ներկայումս դրանով ապահովված են ռեսպուբլիկայի քաղաքների և ավանների զգալի մասը։ Նախասովետական ժամանակաշրջանի համեմատությամբ Երևանի ջրմուղի ցանցը ընդարձակվել է քսան անգամ, իսկ ջրատարողությունն ավելացել է 73 անգամ։

Նախկինում բուսականությամբ աղքատ մեր քաղաքներում հետզհետե ավելանում են հասարակական օգտագործման կանաչի տարածությունները, որի շնորհիվ բարելավվում է քաղաքների միկրոկլիման։ Եթե 1932 թվականին հասարակական օգտագործման կանաչի տարածությունները քաղաքներում կազմում էին ընդամենը 28 հեկտար, ապա դրանք ներկայումս կազմում են 3250 հեկտար։

***

Սովետական Հայաստանում, ինչպես և ողջ Սովետական Միությունում քաղաքաշինական արվեստն ու ճարտարապետությունը զարգացան սոցիալիստական հասարակության էությունից բխող սկզբունքորեն միանգամայն նոր գծերով։ Պատմության ողջ ընթացքում մարդկային գործունեության այդ չափազանց կարևոր բնագավառները մշտապես ենթարկված են եղել հասարակության փոքրամասնությունը կազմող շահագործողական դասակարգերի անձնապաշտական նեղ շահերին, կաշկանդված են եղել հողի, շենքերի ու կառուցվածքների մասնավոր սեփականատիրությամբ, ժողովրդական եկամուտների բաշխման շահագործողական, ինչպես և հասարակության էկոնոմիկայի ոչ պլանային զարգացման բնույթով։

Սովետական Միությունում քաղաքաշինությունն ու ճարտարապետությունը, ազատագրվելով նախկինում իրենց կաշկանդող դասակարգային նեղ շրջանակներից, պատմության մեջ առաջին անգամ հանդես են գալիս աշխատավոր ժողովրդի լայն մասսաներին սպասարկելու մեծ և պատվավոր միսիայով։ Խելացիորեն ու հետևողական կերպով իրացնելով սոցիալիստական սիստեմի շնորհիվ ընձեռված առավելությունները, նույն թվում՝ երկրի էկոնոմիկայի պլանային զարգացման առավելությունները, մեր երկրում հսկայածավալ աշխատանքներ են կատարվում սոցիալիստական քաղաքների կառուցապատման ու բարեկարգման ուղղությամբ։

Առաջավոր, համաժողովրդական ու խորապես մարդասիրական գծերը հատուկ են նաև Սովետական Հայաստանի քաղաքաշինությանն ու ճարտարապետությանը, որոնք այսօր նշանավորում են հայ ժողովրդի ստեղծագործական ուժերի իսկական ծաղկումը։

Սովետահայ ճարտարապետության կարևորագույն հատկանիշներից մեկն



այն է, որ կազմավորվելով ու զարգանալով բուռն քաղաքաշինության բովում, այն հիմնականում ենթարկված է եղել վերջինիս պահանջներին ու խնդիրներին։ Քաղաքաշինական մտածողությունը միշտ էլ ընկած է եղել սովետահայ ճարտարապետների ստեղծագործության հիմքում։

Սովետահայ ճարտարապետության մյուս կարևոր առանձնահատկությունը նրա ժողովրդայնությունն է։ Մեր ճարտարապետները ձգտել են կառուցվող բոլոր տեսակի շենքերը նրանց ներքին լուծմամբ ու ճարտարապետական արտահայտչականությամբ համապատասխանեցնել լայն մասսաների բազմակողմանի պահանջմունքներին, արտահայտելով սոցիալիստական հասարակության նյութական մակարդակը և գաղափարական էությունը։

Հենց այդ ժողովրդայնությունն էլ թելադրել է հաղորդել սովետահայ ճարտարապետությանը որոշակիորեն արտահայտված ազգային երանգ, որպես այդ ասպարեզում հայ ժողովրդի հարուստ ժառանգության յուրացման բարձր աստիճան։ Իր փայլուն հաջողությունների շնորհիվ սովետահայ ճարտարապետությունն իր պատվավոր տեղն ունի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ճարտարապետության մեջ։

***

Սովետահայ քաղաքաշինության ու ճարտարապետության ակնառու հաջողություններն ամենից ավելի ցայտուն կերպով արտահայտված են Երևան քաղաքի բարեկարգման ու կառուցապատման աշխատանքներում։ Առաջին քայլերն այդ ուղղությամբ ձեռնարկվեցին դեռևս քսանական թվականների սկզբներին, երբ կառավարության հանձնարարությամբ սովետահայ ճարտարապետության բազմահմուտ հիմնադիր, ակադեմիկոս Ալեքսանդր Թամանյանն սկսեց մշակել Երևան քաղաքի գլխավոր հատակագիծը։ Բայց այդ տարիներին դեռևս իսկական պատկերացում չկար մայրաքաղաքի զարգացման ռեալ ծավալների մասին, դրանով պետք է բացատրել, որ հատակագծի հեռանկարային ելակետը հանդիսանում էր 150 հազար բնակչությունը, մի բան, որին Երևանը արդեն հասել էր երեսնական թվականներին։

Արդյունաբերության բուռն զարգացման հետևանքով ազգաբնակչության չնախատեսված աճը պահանջեց մի քանի անգամ (1939 թ. և 1950 թ.) վերանայել Երևանի գլխավոր հատակագիծը ու դրա հիման վրա ծավալել քաղաքաշինությունը, և այժմ, երբ մայրաքաղաքում ապրողների թիվը կես միլիոնից անցել է, կարիք է զգացվում նորից և հիմնովին վերանայել այն։

Երևան քաղաքի գլխավոր հատակագծի առաջին կենսագործողը ինքը՝ Թամանյանն էր, որի նախագծով մայրաքաղաքի կարևորագույն հանգույցներում իրականացվեցին հասարակական, վարչական, ուսումնական ու այլ տիպի շենքեր։ Դրանցից, հատկապես, հիշատակության արժանի են Ալ. Սպենդիարյանի անվան Օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի շենքը և Լենինի անունը կրող գլխավոր հրապարակի անկյունաքարն ու սովետահայ ճարտարապետության չգերազանցված գոհարը՝ կառավարական տունը, որի ճարտարապետությունը հանդիսացավ Թամանյանի մտահղացմամբ ստեղծված հրապարակի ողջ ճարտարապետության թելադրողը։ Հասարակական ու վարչական մյուս շենքերի հեղինակները՝ ճարտարապետներ Մ. Գրիգորյանը, Ս. Սաֆարյանը, Է. Սարապյանը և ուրիշներ, աշխատեցին հարազատ մնալ

մեծ ճարտարապետի ստեղծագործական մեթոդին ու դրա հիման վրա մշակեց հրապարակի շուրջը կառուցվող շենքերի նախագծերը։ Դրա շնորհիվ հնարավոր դարձավ հասնել հրապարակի միասնական լուծման, որտեղ շենքերը համահնչուն են ու ներդաշնակ, ազգային ճարտարապետության ձևերով դրանք արտահայտում են ազատագրված հայ ժողովրդի երջանիկ ներկան։ Ճարտարապետական այդ ողջ անսամբլը, որի բաղկացուցիչ մասն են կազմում Լենինի հուշարձանն ու ընդարձակ ջրավազանը, հանդիսավոր է ու տոնական, միևնույն ժամանակ մտերիմ ու հարազատ ժողովրդին։

Լենինի հրապարակից բացի ստեղծվել են Աբովյանի, Շահումյանի, Սպանդարյանի և Ազիզբեկովի անվան հրապարակները, ինչպես նաև բազմաթիվ մայրուղիներ, պողոտաներ ու փողոցներ, որոնք կառուցապատված են ազգային ճարտարապետության ձևերով մշակված հասարակական, վարչական, ուսումնական և բնակելի բազմաթիվ նոր շենքերով։

Ճարտարապետական ժառանգության ստեղծագործական վերամշակման ուղղությամբ սովետահայ ճարտարապետների որոնումները տարբեր հաջողությամբ մարմնավորվել են մայրաքաղաքի նաև մի շարք ուրիշ խոշոր հասարակական շենքերում, ինչպիսիք են՝ ծածկված շուկան (ճարտ. Գ. Աղաբաբյան), Հայկ. ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Նախագահության շենքը (ճարտ. Ս. Սաֆարյան), ՀԿՊ Կենտկոմի, Հայկ. ՍՍՌ Գերագույն Սովետի և Մատենադարանի շենքերը (ճարտ. Մ. Գրիգորյան), ռեսպուբլիկական ստադիոնը (ճարտ. Կ. Հակոբյան), Երևանի կայարանի շենքը (ճարտ. Է. Տիգրանյան), ինչպես նաև վարչական, ուսումնական և այլ տիպի շատ շենքեր։

Ստեղծագործական այդ մեթոդի կիրառության բարերար ազդեցությունը կարելի է տեսնել նաև քաղաքաշինական տեսակետից մայրաքաղաքում կարևոր տեղ գրավող մի շարք արտադրական շենքերի՝ «Արարատ» տրեստի գինու մառանների (ճարտարապետներ Գ. Քոչար և Ռ. Իսրայելյան), կոնյակի գործարանի (ճարտ. Հ. Մարգարյան), սառցարանի (ճարտ. Գ. Աղաբաբյան) ճարտարապետության վրա։

Սովետահայ ճարտարապետության լավագույն երկերում շենքերի միանգամայն նոր բովանդակության համապատասխան ու ժամանակակից արտահայտչականությամբ է հնչում հայ ժողովրդի դարավոր ճարտարապետական կուլտուրան։

Ընդհանուր առմամբ դրականորեն գնահատելով ազգային ու դասական ճարտարապետական ժառանգության դերը սովետահայ ճարտարապետության կազմավորման ու զարգացման գործում, այնուամենայնիվ չի կարելի չնշել, որ անցյալ ժամանակաշրջանում այդ ժառանգությունը որոշ ճարտարապետների համար ունեցավ նաև կաշկանդող, վերջին հաշվով, բացասական նշանակություն։ Ժառանգության մեխանիկական, ոչ ստեղծագործական օգտագործումը, հատկապես բնակելի և արտադրական շենքերում, հաղորդեց նրանցից շատերին որոշակիորեն արտահայտված ծանր և արխայիկ երանգ, վերակենդանացրեց մեր ժամանակների համար միանգամայն անհարիր միջնադարյան ձևերը։ Այդ էական թերությունը այժմ հաղթահարվում է սովետահայ ճարտարապետների կոլեկտիվի կողմից։

Որքան էլ կարևոր են Երևանի ճարտարապետության համար հասարակական շենքերի նշանակությունը, այնուամենայնիվ մայրաքաղաքի ճարտարապետական պատկերը հիմնականում կազմավորում են մասսայական շենքե-



րը՝ հատկապես բնակելի տները։ Եթե նախորդ տարիներին վերջիններիս նախագծման ու կառուցման գործում նկատելի էին որոշ թերություններ, որոնք գլխավորապես արտահայտվում էին բնակարանային հարմարություններին պակաս ուշադրություն հատկացնելու և արտաքին պաճուճանքներով հրապուրվելու մեջ, ապա վերջին 4—5 տարիներում Հայաստանի ճարտարապետների ու շինարարների միացյալ ջանքերով նշված թերությունը աստիճանաբար հաղթահարվում է։

Մայրաքաղաքի բնակիչներից շատերն են արդեն վայելում նոր և հարմարավետ բնակարաններում ապրելու հաճույքը։ Երջանիկ այդ քաղաքացիների թիվը արագորեն ավելանալու է առաջիկա տարիներում. չէ՞ որ մինչև 1965 թվականը Երևանում կառուցվելու է 1 միլիոն 795 հազար քառ. մետր բնակելի տարածություն, այսինքն՝ մոտավորապես մայրաքաղաքի այժմյան բնակելի ընդհանուր տարածության չափ։

Ազգաբնակչության աճով պայմանավորվող բնակարանային շինարարությանը համընթաց ընդարձակվում ու կատարելագործվում է կոմունալ սպասարկման ցանցը։ Խոշոր ներդրումներ են կատարվում քաղաքային երթևեկության միջոցների, գազիֆիկացման, ջրմուղի և կոյուղու ցանցի ընդարձակման, ինչպես և փողոցների ասֆալտապատման ու բարեկարգման համար։ Աննախընթաց կերպով աճել են մայրաքաղաքի հասարակական օգտագործման կանաչ տարածությունները, երկու տասնյակ հեկտարից հասնելով 1900-ի։ Քաղաքը երեք կողմից օղակող երբեմնի լերկ բարձունքներն այժմ ծածկված են արհեստական խիտ անտառներով։ 26 կոմիսարների, Հաղթանակի, Շահումյանի, Աբովյանի ու Կոմերիտմիության զբոսայգիները, Կիրովի, Ղուկասյանի և այլ պուրակներ, ինչպես և բարեկարգված Հրազդանի կիրճը հանգստի ու կուլտուրական ժամանցի սիրված վայրերն են երևանցիների համար։

Վերոհիշյալ միջոցառումները հետապնդում են մեկ հիմնական նպատակ՝ առավելագույն չափերով բարելավել Երևանի բնակիչների կենցաղային ու աշխատանքային պայմանները, առողջապահական տեսակետից ավելի նպաստավոր դարձնել այս հարավային քաղաքի միկրոկլիման։

Միաժամանակ Երևանի քաղաքաշինարարներին մշտապես մտահոգել է մայրաքաղաքի ճարտարապետական կերպարանքի լիահնչունության հարցը, քաջ գիտակցելով, որ քաղաքը ոչ միայն պետք է հարմար լինի մարդկանց կյանքի համար, այլև իր գեղեցկությամբ պետք է զարդարի նրա բնակիչների կյանքը։ Բարեկարգման ու կանաչապատման, ճարտարապետական փոքր ձևերի մշակմանն ու տեղադրմանը զուգընթաց պատշաճ ուշադրություն է հատկացվել նաև քաղաքի պլաստիկական ու գունային ձևավորմանը։

Այդ տեսակետից մայրաքաղաքի հոյակապ անսամբլներում կարևոր դեր են խաղում մոնումենտալ քանդակները, ինչպես և ուսումնական ու այլ տիպի շենքերի մոտ տեղադրված բազմաթիվ արձաններն ու կիսանդրիները, որոնք Երևանի փողոցներին ու հրապարակներին ճարտարապետական-գեղարվեստական հարուստ տեսք են հաղորդում։

Այսպիսով, Երևանն իր մեջ խտացված կերպով մարմնավորել է սովետահայ քաղաքաշինության ու ճարտարապետության բնորոշ գծերը, առավելագույն չափով արտահայտելով այդ ուղղությամբ եղած հիմնական նվաճումները։ Շատ բան է արված այստեղ քառասուն տարիների ընթացքում.

սակայն շեշտակիորեն զարգացող կյանքը նորանոր խնդիրներ է առաջադրում մայրաքաղաքի խոշոր կառուցումների բովում կոփված ճարտարապետներին ու շինարարներին։

Քաղաքաշինական միջոցառումների բարերար ազդեցությունը իրենց վրա կրում են նաև Լենինականը, Կիրովականը, Ալավերդին և այլ քաղաքներ, քաղաքատիպ վայրեր, բանվորական ավաններ, շրջանային կենտրոններ ու գյուղական բնակավայրեր։

Անցել են տարիներ, և հիմնովին կերպարանափոխվել է արհեստավորների ու մանր առևտրականների հին Գյումրին, դարձել զարգացած ժամանակակից քաղաք, ռեսպուբլիկայի արդյունաբերական երկրորդ կենտրոնը։ Սկզբում կառուցվեցին այնպիսի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպես տեքստիլի ու մսի կոմբինատներն են, ապա մի շարք մեծ ու փոքր գործարաններ։ Արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությունը ավելի մեծ թափով իրականացվեց հետպատերազմյան տարիներին։ Շարք են մտել ու պիտի կառուցվեն բազմաթիվ գործարաններ։

Լենինական քաղաքի բնակչության բնակարանային պահանջմունքները բավարարելու համար զարկ տրվեց նաև բնակարանային շինարարությանը։ Բազմահարկ բնակելի տների շինարարությունը իրականացվեց հիմնականում քաղաքի կենտրոնական մասում։ Նոր ու գեղեցիկ բնակելի շենքերով են կառուցապատված Գորկու, Լենինի, Կալինինի և մի շարք այլ փողոցներ։ Դրա հետ միասին քաղաքի հյուսիսային և արևմտյան մասերում զարկ տրվեց նաև անհատական բնակելի տների շինարարությանը, որոնցով կառուցապատված արվարձաններն արդեն միաձուլվել են քաղաքի հետ։

Լենինականի նորաստեղծ հասարակական կենտրոններն ավելի են ընդգծում քաղաքի ճարտարապետական նոր պատկերը։ Առանձնապես գեղեցիկ է Լենինի հրապարակը, որի կառուցապատումը հիմնականում իրականացվել է հետպատերազմյան տարիներին։ Մեծ ու հանդիսավոր այս հրապարակի կենտրոնական մասում վեր է խոյանում Լենինի քարակերտ արձանը (քանդ. Ս. Մերկուրով, ճարտ. Մ. Գրիգորյան)։ Հրապարակը շրջապատող բազմերանգ քարերով կառուցված հասարակական-վարչական շենքերը մի ներդաշնակ ամբողջություն են կազմում։

Տարեցտարի փարթամանում է անցյալում բուսականությունից զուրկ այս քաղաքի կանաչը։ Դժվար է այժմ հավատալ, որ Ստ. Շահումյանի անվան զբոսայգու տեղում տասնամյակներ առաջ տխուր գերեզմանատուն էր կամ ստվերախիտ ծառերով հարուստ նոր զբոսայգին ձգված է իր կեղտոտության պատճառով առաջներում «մուռտառ չայ» կոչվող գետակի հունատեղում։ Այս զբոսայգին, նրա հյուսիսային կողմում ձգված կիսաշրջանաձև պուրակը, հարավային կողմում ստեղծված արհեստական լճակները դարձել են լենինականցիների սիրած զբոսավայրերը։ Մի քանի պուրակներ էլ ստեղծված են քաղաքի տարբեր մասերում։

Հայաստանի քաղաքներից Կիրովականը, հատկապես, հետպատերազմյան տարիներին աչքի ընկավ քաղաքաշինական մեծածավալ աշխատանքներով, որոնք թելադրվեցին նույնպես արդյունաբերության բուռն զարգացմամբ։ Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանը ընդարձակվեց ու վերածվեց մի խոշոր կոմբինատի, ստեղծվեցին արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններ՝ մեքենաշինական, ավտոմատիկայի, կորդի, կորունդի,



գործվածքեղենի և այլ գործարաններ, կառուցվում է Կիրովականի և ռեսպուբլիկայի ամենախոշոր արդյունաբերական ձեռնարկություններից մեկը՝ ացետատային մետաքսի գործարանը։

Արդյունաբերության աննախընթաց զարգացումը արմատապես վերափոխեց Կիրովականը, որը հովեկների ոչ մեծ բնակավայրից վերածվեց ժամանակակից քաղաքի, չկորցնելով գեղեցիկ բնության ու հարուստ բուսականության շնորհիվ ունեցած իր հմայքը։ Քաղաքաշինությունն այստեղ հիմնականում ծավալված է կենտրոնական մասում՝ նոր և բարեկարգ Լենինի և Ստալինի պողոտաների, Շահումյանի, Կիրովի, Ֆրունզեի, Ծառուղային և այլ փողոցների ուղղությամբ, որոնք արդեն հիմնականում կառուցապատված են 3—4 հարկանի հասարակական ու բնակելի շենքերով։ Սակայն, ինչպես և մյուս քաղաքներում, բուռն շինարարությունն այստեղ գերաճել, դուրս է եկել քաղաքի նախկին սահմաններից, կառուցումներն ընթանում են ազատ տարածությունների վրա։

Լեռնային Փամբակ գետի հախուռն հոսանքները կանոնավոր հունի մեջ են դրված կառուցված հենապատերի շնորհիվ ու այդ ճանապարհով ձգվող ձախափնյա ընդարձակ տարածությունները հատկացված են բնակարանային ու արդյունաբերական շինարարությանը։ Նոր Կիրովականի սիրտը Կիրովի նորաստեղծ հրապարակն է՝ կառուցապատված հասարակական ու բնակելի հոյակապ շենքերով։ Շնորհիվ իր հորինվածքի, չափերի, բնության հետ ունեցած ներդաշնակության, շրջապատող շենքերի ճարտարապետական հետաքրքիր լուծման, այս հրապարակն, անշուշտ, պետք է դասել սովետահայ քաղաքաշինության նվաճումների շարքին։ Կիրովականի խոշոր հասարակական շենքերից են՝ քիմիագործների կուլտուրայի պալատը (ճարտարապետներ Շ. Ազատյան և Մ. Ալավերդյան), հիվանդանոցային շենքերի խումբը (ճարտ. Ռ. Ալավերդյան), քաղաքային Սովետի շենքը (ճարտ. Հ. Մարգարյան և Բ. Արզումանյան), պարտիայի քաղաքային կոմիտեի շենքը (ճարտ. Ջ. Բախշինյան) և այլն։

Դժվարին պայմաններում է իրականացվում Ալավերդու կառուցապատումը, որը դարձել է ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի ու քիմիական արդյունաբերության նշանակալից կենտրոններից մեկը։ Դեբետի խոր և նեղ, գեղատեսիլ կիրճում անցյալում վայրիվերո կառուցապատված այս բնակավայրի զարգացման հնարավորությունները բավականաչափ սահմանափակ են։ Բարդ տեղանքը, շինարարության ծավալման համար բարենպաստ տարածությունների խիստ պակասությունը թեև զգալիորեն արգելակել, սակայն չեն կասեցրել արդյունաբերական այս քաղաքի բուռն զարգացումը։ Հիմնովին վերակառուցված է քաղաքի կենտրոնական մասը։ Երկաթուղային կայարանի (որը շուտով փոխադրվելու է նոր տեղ) շրջակա տերիտորիան ընդարձակված է ի հաշիվ Դեբետ գետի առափնյա տարածության ու բարեկարգված է։ Այստեղ կառուցվել է նոր հյուրանոցի, ճաշարանի ու փոստի բաժանմունքի միասնական մոնումենտալ շենքը (ճարտ. Հ. Իսաբեկյան), որը տարածականորեն կազմակերպում է քաղաքի հասարակական նոր կենտրոնը։

Բարեկարգման ու կառուցապատման աշխատանքների վերափոխիչ ներգործությունն իրենց վրա են կրում նաև ռեսպուբլիկայի շատ այլ քաղաքներ ու բնակավայրեր. այդ աշխատանքները մասսայական բնույթ են կրում և ամենուրեք ընթանում են բնակչության ամենաբուռն աշխատանքային մաս-

նակցությամբ։ Գեղեցկի, բարեկարգի զգացումով համակվել է ողջ հայ ժողովուրդը։

Պետք է տեսնել, թե հանքագործների Ղափան քաղաքը, Գորիսը, Էջմիածինը, Կամոն, Սևանը, Արթիկը, Ստեփանավանը, Իջևանը, Արտաշատը, Աշտարակը, Եղեգնաձորը, Մարտունին և այլ քաղաքներ, քաղաքատիպ վայրեր ու շրջանային կենտրոններ վերջին տարիների ընթացքում որքա՜ն արագ են կերպարանափոխվում։ Վճռականորեն հաղթահարելով անբարեկարգությունը, նրանցից յուրաքանչյուրը աստիճանաբար հանդես է գալիս ճարտարապետական իր նոր դեմքով։

Արդյունաբերության զարգացման շնորհիվ Հայաստանի քարտեզի վրա երևան են եկել նոր և բարեկարգ բանվորական ավաններ՝ Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանի ավանը Լոռվա գեղատեսիլ կիրճում, Դեբետափին, որտեղ շենքերն ու կառուցվածքները հաջողությամբ ներդաշնակում են բնությանը, հանքագործների Քաջարան և Դաստակերտ ավանները Զանգեզուրի լեռներում, հիդրոշինարարների Լուսավան և Արգել, հանքագործների Ախթալա և այլ ավաններ։ Արդեն պատրաստ է Հայաստանի արդյունաբերական նոր կենտրոնի՝ Հրազդան քաղաքի գլխավոր հատակագիծը, որի իրականացումը սկսվում է մոտակա ժամանակներում։

Միանգամայն հասկանալի է, որ այսպիսի համաժողովրդական վերաշինական աշխատանքներում անմասն չէր կարող մնալ Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը էապես փոխեց հայ աշխատավոր գյուղացիության ոչ միայն տնտեսական պայմանները, այլև նրա ողջ հոգեկան աշխարհը։ Գյուղատնտեսության տեխնիկական վերազինումը, գիտության լայն արմատավորումը, ոռոգման ցանցի ընդարձակումը, տեխնիկական կուլտուրաների զարգացումը և մի շարք այլ հիմնական միջոցառումներ վճռականապես բարձրացրին գյուղատնտեսության զարգացման մակարդակը մեր ռեսպուբլիկայում։ Հայ գյուղացին բռնեց ունևոր և երջանիկ կյանքի ճանապարհը ու, միանգամայն բնական է, որ դա պետք է անդրադառնար նաև նրա կյանքի բոլոր բնագավառների, ներառյալ նոր, բարեկեցիկ կենցաղի վրա։

Արարատյան դաշտի բոլոր գյուղերում, ռեսպուբլիկայի լեռնային շրջաններում եռում է բուռն շինարարական աշխատանքը։ Կառուցվում են նոր և գեղեցիկ բնակելի տներ, որոնք համապատասխանում են կոլտնտեսականների այսօրվա պահանջմունքներին, ակումբային, դպրոցական և այլ հասարակական շենքեր, գյուղատնտեսական արտադրական շենքեր, գյուղական ջրաէլեկտրակայաններ և այլն։ Դրանց ճարտարապետության մեջ բոլոր կողմերով դրսևորվում է նորը, առաջավորը, որն այնքան բնորոշ է հայ աշխատավոր գյուղացիության տնտեսական ու կուլտուրական կյանքի այսօրվա բարձր մակարդակին։ Պատահական չէ, որ գյուղական վայրերում կառուցված բազմաթիվ շենքեր՝ Էջմիածնի, Վերին Արտաշատի, Ոսկեվազի, Օշականի, Աշտարակի, Ստեփանավանի և բազմաթիվ այլ բնակավայրերի կուլտուրայի տներն ու ակումբները, Այգեձորի, Արենիի, Այրումի, Եղեգնաձորի և շատ այլ ջրաէլեկտրակայանների շենքեր իրենց ճարտարապետական բարձր արժանիքներով չեն զիջում քաղաքների նույնատիպ շենքերին։

Սովետական Հայաստանի բնակավայրերի համընդհանուր վերաշինության ամբողջական պատկերը տալու համար հարկ կա համառոտակի կանգ առնել



նաև առողջավայրերի վրա։ Հայաստանի բնության, առատ ու բազմատեսակ հանքային ջրերի բուժիչ հատկությունների, ըստ էության, սկսեցին գնահատվել ու լայնորեն օգտագործվել միայն Սովետական իշխանության օրոք։ Ամենօրյա հոգատարությունը ժողովրդի առողջական վիճակի ու հանգստի նկատմամբ խթան հանդիսացավ առողջավայրերի ստեղծման, նրանց բարեկարգման ու ճարտարապետական ձևավորման համար։ Դիլիջանը, Արզնին, Ջերմուկը, Ծաղկաձորը վերստեղծվեցին կամ խոշոր չափով կերպարանափոխվեցին, դարձան աշխատավորության մասսայական առողջավայրեր։ Եվ, իհարկե, այստեղ էլ սովետահայ ճարտարապետների ստեղծագործության համար լայն ասպարեզ բացվեց։ Հիշյալ առողջավայրերի հատակագծման նախագծերը մշակվեցին ճարտարապետներ Հ. Իսաբեկյանի, Հ. Մարգարյանի, Փ. Մանուկյանի և ուրիշների ջանքերով ու մասնակիորեն իրականացվում են առողջավայրերի բարեկարգման ու կառուցապատման աշխատանքների ընթացքում․ այդ առողջավայրերը հարստացան այնպիսի մոնումենտալ ու նշանակալից կառուցվածքներով, ինչպիսիք են՝ Արզնու կլինիկական սանատորիան (ճարտ. Ս. Սաֆարյան) և ջրաբուժարանը (ճարտ. Հ. Մարգարյան), Գոլովինոյի սանատորիան (ճարտ. Զ. Բախշինյան), Ջերմուկի ըմպելասրահը (ճարտ. Գ. Թամանյան), սանատորիաների շենքերը (հեղինակներ Գ. Թամանյան, Է. Տիգրանյան), կինոթատրոնը (հեղ. Հ. Բաբաջանյան) և այլ շենքեր, որոնք պատկանում են սովետահայ ճարտարապետության ուշագրավ երկերի թվին։ Զարգացման լայն հեռանկարներ ունի Հանքավանի գեղատեսիլ հովիտը, որտեղ վերջին տարիներս ծայր է առել առողջարանների ու մանկական ճամբարների շինարարությունը։

***

Վիթխարի կառուցումների բովում ռեսպուբլիկայում աճեց շինարարների մի փայլուն սերունդ։ Եթե քսանական թվականներին, երբ նոր էին ծավալվում վերաշինական աշխատանքները, շինարարության ղեկավար կադրերի թիվը տասնյակներով էր հաշվվում, այժմ նրանք կազմում են բազմահազարանոց մի բանակ։ Դրանց, ինչպես և միջին մասնագիտական կադրերի ճնշող մեծամասնությունը իր կրթությունն ստացավ ռեսպուբլիկայի ուսումնական հաստատություններում։ Շինարարական գործի բազմազան բնագավառների մասնագետներ է տվել Երևանի Պոլիտեխնիկական ինստիտուտը. Նրանք հաջողությամբ աշխատում են մեր ռեսպուբլիկայում և նրա սահմաններից դուրս։ Դրա հետ միասին, մեր ռեսպուբլիկայում աճել են հմուտ կառուցողների՝ քարտաշների, բետոնագործների, տաղձագործների, ծեփագործների և շինարարական այլ մասնագիտությունների որակյալ բանվորներ։

Գնալով ավելի սերտ է դառնում շինարարության բոլոր տեսակի մասնագետների ու բանվորների, ինչպես և գիտա-հետազոտական կազմակերպությունների համագործակցությունը, հաջողությամբ կատարելու համար այն կարևոր խնդիրները, որ դրել են նրանց վրա Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը, ողջ ժողովուրդը։

Շինարարների Համամիութենական խորհրդակցությունից հետո, որը շրջադարձային, վերափոխիչ նշանակություն ունեցավ մեր երկրում ճարտարապետության ու շինարարության աննախընթաց զարգացման համար, վերջին

4—5 տարիների ընթացքում ռեսպուբլիկայում խոշոր աշխատանք է կատարվել նախագծման ու շինարարության գործը արմատապես բարելավելու և անցյալում թույլ տրված սխալների վճռական հաղթահարման ուղղությամբ։

Ռեսպուբլիկայի նախագծման ինստիտուտներում խոշոր աշխատանք է կատարվում մասսայական շինարարության կարիքների համար տիպային նախագծերի մշակման ու նրանց աստիճանական կատարելագործման ուղղությամբ։ Այդ նախագծերում պատշաճ ուշադրություն է հատկացվում շենքերի հարմարավետությանը, արտաքին ու ներքին ճարտարապետության պարզությանը, կոնստրուկտիվ նպատակահարմարությանը, շինարարական էլեմենտների ստանդարտացմանն ու հավաքովիությանը և այլն։ Նախագծման ողջ գործն այժմ ենթարկված է կառուցման ինդուստրիալ եղանակների լայն արմատավորման խնդիրներին։ Վերանայվում է նաև քաղաքների ու բնակավայրերի հատակագծման գործը. այդ ասպարեզում արմատավորելով քաղաքաշինության հայրենական և արտասահմանյան նոր ու առաջավոր սկզբունքները։

Մասսայական բնակարանային շինարարության տեղաբաշխումը քաղաքամերձ ազատ տերիտորիաների վրա և դրանց ռացիոնալ օգտագործումը ազատ հատակագծման սկզբունքներով, հնարավորություն են ստեղծում կոմպլեքսորեն լուծելու բնակելի միկրոշրջանի կառուցապատման ու բարեկարգման խնդիրները, լայն չափով օգտագործելով տիպային էկոնոմիկ նախագծեր և շինարարությունը վարելու ինդուստրիալ մեթոդներ։

Նշված ժամանակամիջոցում արմատապես վերակառուցվել է շինարարության գործը մեր ռեսպուբլիկայում։ Շինարարական բոլոր տեսակի աշխատանքների մեքենայացումը, կոնստրուկտիվ էլեմենտների գործարանային արտադրության հզոր բազայի ստեղծումը և նրա արտադրանքի լայն կիրառությունը էապես նպաստեցին շինարարության ժամկետների կրճատմանն ու արժեքի իջեցմանը։ Օրըստօրե աճում է հավաքովի երկաթ-բետոնի օգտագործումը ռեսպուբլիկայի շինարարության մեջ։

Վերը նշված միջոցառումների կիրառումը, որ միայն սկիզբն է, սովետահայ քաղաքաշինությունն ու ճարտարապետությունը կբարձրացնի զարգացման նոր և ավելի բարձր մակարդակի, էապես նպաստելով ժողովրդի կենսապայմանների հետագա բարելավմանը։ Հայ ժողովրդի, վաղուց ճանաչում գտած կառուցողական բարձր ունակությունները, այսօր առավել, քան պատմական որևիցե այլ ժամանակաշրջանում, ընկնելով պարարտ հողի վրա, փարթամ ծիլեր են տալիս ու կատարյալ բարգավաճում ապրում։

Սովետական կարգերը, որ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական անկաշկանդ առաջընթացի աղբյուրն են, խթանեցին քաղաքաշինության ու ճարտարապետության աննախընթաց ծաղկումը Հայաստանում։ Սովետահայ քաղաքաշինությունն ու ճարտարապետությունը իրենց հատուկ մոնումենտալ միջոցներով մարմնավորում են այն մեծագույն պատմական դարաշրջանը, որում ապրում է և ստեղծագործում հայ ժողովուրդը։

---

# ԿԵՐՏՈՂՆԵՐԸ


## ԱԼ. ՄԱՐՋԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի մեքենաշինության տեխնոլոգիայի հանձնաժողովի նախագահ


Լենինն ասում էր, որ գիտությունը, տեխնիկան ու կուլտուրան յոթմղոնանոց քայլերով առաջ մղելու կարևոր նախապայմանն այն է (իշխանությունը նվաճելուց հետո), որ պրոլետարիատը լայն պայմաններ ստեղծի վարչական, ժողովրդական տնտեսության ղեկավարման, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի աշխատողներ պատրաստելու համար։

Հայաստանի բանվոր դասակարգը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, իր ձեռքը վերցնելով իշխանությունը, առաջին իսկ օրվանից հին մասնագետներին ու ինտելիգենցիային օգտագործելու հետ մեկտեղ մտահոգվեց սովետական ինտելիգենցիայի՝ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու առողջապահության համար սեփական կադրեր ստեղծելու հարցով։

Երևանի Պետական համալսարանի տեխնիկական ֆակուլտետը դասախոսական կազմով համալրելու նպատակով հրավիրվեց ռուսական առաջավոր տեխնիկական դպրոցի ներկայացուցիչ Գ. Գ. Գուրգենյանը, անօրգանական քիմիայի գծով՝ պրոֆեսոր Դ. Խ. Ջավրիյանը, կիրառական մեխանիկայի ու ֆիզիկայի գծով՝ պրոֆեսոր Ա. Ա. Հակոբյանը, հիդրավլիկայի գծով՝ Գ. Վ. Շիրմազանյանը, Մոսկվայի համալսարանից հրավիրվեց մաթեմատիկայի պրոֆեսոր Ե. Գ. Կոգբեկլյանը։

Հրավիրվում են նաև երկրաբանության պրոֆեսոր Կ. Ն. Սավիչ-Զաբլոտսկին, բակտերիոլոգ, կոմունիստ պրոֆեսոր Պապա Բեջանիչ Քալանթարյանը, կիրառական ու հետազոտական քիմիայի գծով՝ Լ. Ա. Ռոտինյանը, անալիտիկ քիմիայի գծով՝ Ա. Ա. Յառալյանը և շատ ուրիշներ։ Գերմանիայից Հայաստան է վերադառնում օրգանական քիմիայի նշանավոր մասնագետ Վիլանդի օգնական Ս. Պ. Ղամբարյանը ։

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո պետականացված արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների տեխնիկական ղեկավարներ են նշանակվում հին մասնագետներից։

Հայաստանի Ժողտնտխորհի որոշմամբ Երևանի չուգունաձուլման մեխանիկական գործարանի նախկին գործարանատեր, մեքենաշինության տեխնոլոգիայի մասնագետ Ե. Տեր-Ավետիքյանը նշանակվում է նոր սոցիալիստական սկզբունքներով զարգացող գործարանի կառավարիչ, իսկ Ա. Հակոբջանյանը՝ գործարանի կոմիսար. այս եղանակով պրոլետարիատի իշխանությունը վերա-

հսկում է բուրժուական մասնագետին ու ղեկավարում նրան։ Լենինականի չուգունաձուլման, մեխանիկական գործարանի դիրեկտոր է նշանակվում նախկին գործարանատեր եղբայրներից Մ. Հեքիմյանը։ Ալավերդու գործարանների կառավարիչ է նշանակվում լեռնային ինժեներ Ա. Ջոհրապյանը։ Միաժամանակ ռեսպուբլիկա են հրավիրվում արդյունաբերության, շինարարության մի խումբ նշանավոր մասնագետներ։

Ռեսպուբլիկայի սեփական տեխնիկական ինտելիգենցիայի ստեղծման գործն ավելի լավ հիմքերի վրա է դրվում, երբ Հայկական ՍՍՌ Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ է նշանակվում Ալեքսանդր Մյասնիկյանը, իսկ Ժողտնտխորհի նախագահ՝ հին բոլշևիկ Սրապիոն Սրապիոնյանը (Լուկաշինը), որն ուներ տեխնիկական բարձրագույն կրթություն և սոցիալիստական արդյունաբերությունը կազմակերպող գործչի հմտություն ու փորձ։

Այդ Հայաստանում սովետական կարգեր հաստատելու առաջին տարիներին էր, երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման շրջանում։ Հետագայում, երբ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան բռնեցին զարգացման բուռն վերելքի ուղին, մասնագետների ավելի մեծ պահանջ զգացվեց։ Այն բավարարելու նպատակով Պետական համալսարանի մի շարք ֆակուլտետների բազայի վրա ստեղծվեցին Պոլիտեխնիկ, Գյուղատնտեսական, Բժշկական և այլ ինստիտուտներ, որոնց թիվն այժմ 10-ից ավելի է։ Այսպիսով, մեր ռեսպուբլիկայում հենց սկզբից ամուր հիմք դրվեց քիմիական արդյունաբերության զարգացման համար, ստեղծելով ականավոր քիմիկոսների մի ամբողջ կաճառ՝ Ա. Մնջոյան, Է. Տեր-Ղազարյան, Ա. Բաբայան, Մ. Մանվելյան, Ա. Գասպարյան, Ն. Կարապետյան, Կ. Ռուխկյան, Է. Հակոբյան և շատ ուրիշներ։

Նախագծող ճարտարապետների մի սերունդ պատրաստեց Ալեքսանդր Թամանյանի գլխավորած ամբիոնը, որը ո՛չ միայն նոր, սովետական կադրեր էր դաստիարակում, այլև հետազոտում ու նախագծում էր մեր ռեսպուբլիկայի քաղաքները, կարևորագույն կառույցները, ճանապարհ բացելով սովետական ճարտարագիտության հետագա զարգացման համար։

Էներգետիկների հրաշալի խումբ ստեղծեց Հ. Տեր-Աստվածատրյանը։ Պատահական չէ, որ մեր ռեսպուբլիկայում առաջինը Տեր-Աստվածատրյանին է շնորհվել Լենինի շքանշան։

Էլեկտրատեխնիկայի, մեքենաշինության և սպասքաշինության արդյունաբերությունը մեզ մոտ ավելի ուշ զարգացավ. Կոմունիստական պարտիայի ձեռք առած միջոցների շնորհիվ արագ կերպով զարգացավ այդ ճյուղերի տեխնիկական ինտելիգենցիան։ Այդ գործին զգալի չափով նպաստեց Պոլիտեխնիկական ինստիտուտը, որը վերջին տարիների ընթացքում միայն 600 ինժեներ-մեխանիկ է տվել, չհաշված մյուս մասնագետները։

Հայաստանում մեքենաշինության, էլեկտրատեխնիկական և սպասքաշինական արդյունաբերության զարգացման գործին մեծ չափով նպաստեց Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի կազմակերպումը 1943 թվականին, որի վիցե-պրեզիդենտ, ապա պրեզիդենտ է ընտրվում աշխարհահռչակ տիեզերագետ ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը։

Օրեցօր զարգացող մեքենաշինական արդյունաբերությանն ավելի գործնական օգնություն ցույց տալու նպատակով հետագայում կազմակերպվեց Ակադե-



միայի տեխնիկական գիտությունների բաժանմունքը, որի անդամներ ընտրվեցին ավագ սերնդի ներկայացուցիչներ՝ Ա. Հակոբյանը, Ս. Ղամբարյանը, Կ. Պաֆենգոլցը, Ի. Եղիազարյանը և ուրիշներ, նրանց հետ միասին նաև երիտասարդ գիտնականներ՝ Ա. Իոսիֆյանը, Ն. Հարությունյանը, Ս. Մերգելյանը, Ա. Շահինյանը, Ա. Ալիխանյանը, Ի. Մաղաքյանը, Ս. Մկրտչյանը, Մ. Մանվելյանը, Լ. Տեր-Ղազարյանը, Արաքսյա Բաբայանը, Մ. Կասյանը, Վ. Ալեքսեևսկին և շատ ուրիշներ։

Մեր ռեսպուբլիկայի հաջողությունները տեխնիկական առաջադիմության ասպարեզում հսկայական են։ Ամեն օր լաբորատորիաներում, նախագծային ինստիտուտներում, ձեռնարկություններում է ծնվում նորը, առաջավորը, որը խինդ ու բերկրանք է բերում սովետական մարդուն։ Միայն այս տարվա տասն ամսում ստեղծված, կատարելագործված ու յուրացված են մի քանի տասնյակ մեքենաներ, հորինված են մի շարք առանձնահատուկ սպասքներ ու հարմարանքներ, ավտոմատ ու կոնվեյերային գծեր և բազմաթիվ նոր մեխանիզմներ։

Գործարաններում սկսել են օգտագործել բնական գազը։ Արմատավորվում են եռքի նոր եղանակները, բարձր հաճախականության հոսանքի օգտագործումը՝ մետաղների ջերմային մշակման ասպարեզում, դետալների խմբային մշակման մեթոդը և շատ այլ առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսներ։

Այս հաջողություններին հասել ենք շնորհիվ այն բանի, որ պարտիական կազմակերպությունները, ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի ու գերատեսչությունների, գիտա-հետազոտական ինստիտուտների և ձեռնարկությունների ղեկավարները սկսել են մեծ ուշադրություն հատկացնել նոր տեխնիկայի ստեղծմանը։

ՍՄԿՊ XXI համագումարի և Կենտկոմի հետագա պլենումների որոշումների համաձայն ռեսպուբլիկայում ստեղծված են մի շարք նոր գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտներ, էքսպերիմենտալ բազաներ։ Զգալի չափով աճել են ինժեներա-տեխնիկական և, մասնավորապես, կոնստրուկտորական կադրերը։ Ավտոմատիկայի ինստիտուտը հիմնվեց Կիրովականում, Արտադրական հիգիենայի և սանիտարիայի ինստիտուտը տեղափոխվեց Հրազդան քաղաքը, սպասքաշինության մասնագիտացված կոնստրուկտորական բյուրո հիմնվեց Լենինականում, որտեղ ստեղծվում է նաև տեխնիկայի գծով գիտա-հետազոտական ինստիտուտ։

Գիտա-հետազոտական ինստիտուտներ ու բազաներ են ստեղծված Քաջարանում, Բասարգեչարում, Ալավերդում, Արտաշատում, Բյուրականում և այլուր։ Դա հնարավորություն տվեց ուսումնասիրությունները տեղափոխել արտադրության ոլորտը, ստեղծել նոր ինստիտուտներ, մասնագիտացված կոնստրուկտորական բյուրոներ, գիտական լաբորատորիաներ, որոնք անմիջականորեն ենթարկվում են Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհին։

Վերջին երկու տարում Հայաստանում ստեղծվել են՝ Լեռնա-մետալուրգիական ինստիտուտ, Էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի բաժանմունքը Լենինի անվան հայէլեկտրագործարանում, Անօրգանական քիմիայի ինստիտուտ, Մեքենաշինության մասնագիտացված կոնստրուկտորական ու տեխնոլոգիական բյուրո և այլն։

Հետաքրքրականն այն է, որ այդ ինստիտուտներն իրենց «շոշափիչ» բազաները տարածում են անմիջականորեն ձեռնարկություններում։ Վերջին երկու տարում գիտա-հետազոտական ինստիտուտներում, Ժողտնտխորհի ձեռնար-

կություններում տեխնոլոգների ու գործարանային հետազոտողների թիվն ավելացել է 4000 մարդով։

Որքան մոտենում ենք կոմունիզմին, այնքան ավելի է բարձրանում տեխնիկական ինտելիգենցիայի դերը հասարակական արտադրության զարգացման, երկու սիստեմների խաղաղ տնտեսական մրցության պայքարում հաղթելու գործում։ Եվ, հատկապես, մեծ ու պատասխանատու է այն ինժեներների դերը, որոնք աշխատում են մեր բազմաթիվ նախագծային կազմակերպություններում։ Կոնստրուկտորների, նախագծողների և տեխնիկական ինժեներների թիվը մեր ռեսպուբլիկայում այժմ 3500-ից ավելի է։ Նրանք գտնվում են կոմունիզմի համար մղվող պայքարի առաջավոր դիրքերում։

Եթե մեր երկրի շինարարությունը համեմատենք հսկա կոնվեյերի հետ, ապա նախագծող ինժեները նրա վրա կատարում է համար առաջին օպերացիան, որը տոն է տալիս ու որոշում ամբողջ պրոցեսի ռիթմը։ Ահա թե ինչու յուրաքանչյուր ինժեներ, երբ նա ստորագրում է մի նոր նախագծի տակ, պետք է խորհի, թե դրանով նա ինչ չափով է բավարարում նորի, գիտության ու տեխնիկայի ամենաբարձր պահանջները։

Այժմ մեր ռեսպուբլիկայի ինստիտուտներում նախագծվում է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի, Լուսավանի գործիքաշինական գործարանի, տասնյակ նոր ձեռնարկությունների, երկաթուղային ու խճուղային ճանապարհների ու նոր քաղաքների կառուցումը. նախագծվում է վերակառուցելու բազմաթիվ գործարաններ, ստեղծվում են հարյուրավոր նոր մեքենաների, մեխանիզմների, սպասքների, հարմարանքների նախագծեր։

Մեր նախագծային ու գիտա-հետազոտական ինստիտուտներում են ստեղծվել Սովետական Միությունում առաջին ստորերկրյա էլեկտրակայանների (Սևանի, Արզնիի) և Աթարբեկյանի, Գյումուշի ու այլ նախագծեր։ Այժմ նախագծվում են Որոտանի և մյուս կասկադների էլեկտրակայանները։

Հայէլեկտրագործարանի ինժեներները Համամիութենական էլեկտրամեխանիկայի գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի կոնստրուկտորների հետ միասին 1959 թվականին ստեղծեցին ու յուրացրին 14 տիպի մեքենաների արտադրություն, իսկ 1960 թվականին՝ յուրացնում են 20 նոր տիպի մեքենաների արտադրություն։ Տեխնոլոգիական, տեխնիկական առաջադիմության գործում իրենց ավանդն են մուծում գործարանի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Միայն այս տարվա անցած 10 ամիսներում նրանք ներկայացրել են 650 առաջարկ, որից 300-ը ներդրվել են արտադրությունում, և 3 միլիոն ռուբլի տնտեսվել է։ Այդպես է նաև մեր գրեթե բոլոր մեքենաշինական գործարաններում, լեռնահանքային ձեռնարկություններում, քիմիական գործարաններում, սննդի և թեթև արդյունաբերության ֆաբրիկաներում։

Մեր ռեսպուբլիկայի տաղանդավոր տեխնիկական ինտելիգենցիան ջանք չի խնայում ներքին ռեզերվները լայնորեն օգտագործելու և յոթնամյակը ժամկետից շուտ ավարտելու համար։ Ժողովուրդը սիրով է խոսում այն ինժեներների մասին, որոնք ոչ միայն բանվորների տեխնիկական ղեկավարներն են, այլև նրանց ուսուցիչը, դաստիարակը։ Ռեսպուբլիկայում աճել են արտադրության փորձված հրամանատարներ, որոնք բանվորների շրջանում մեծ հեղինակություն են վայելում։

Ռեսպուբլիկայում խոշորագույն մեքենաշինական ձեռնարկության՝ Հայէլեկտրագործարանի տեխնիկական ղեկավար, գլխավոր ինժեներ Ռ. Օհանյանի



մասին մեծ սիրով ու ջերմորեն են արտահայտվում բանվորները։ Նա ամեն կերպ աջակցում է գործարանում ծնվող նորի զարգացմանը։ Ռ. Օհանյանի ղեկավարությամբ գործարանի մասնագետներն ու բանվորները մեծ ջանքեր գործադրեցին՝ ժամկետից շուտ գործարկելու կոնվեյերը։

Վերջին տարիներին հայէլեկտրագործարանը Սովետական Միության էլեկտրամեքենաշինական ձեռնարկություններից առաջինն է, որ կառուցել է մոտ չորս կիլոմետր երկարության կոնվեյեր ու տարբեր տիպի փոխադրիչներ։ Այստեղ այժմ յուրաքանչյուր բանվորի էլեկտրազինվածությունը հավասար է 4,6 կվտ-ի։ Այդ առումով գործարանը Սովետական Միության ամենաառաջավոր ձեռնարկություններից մեկն է։ Գործարանում օրեցօր ավելանում է աշխատանքային պրոցեսների ավտոմատացումը. ամբողջ ձեռնարկության կոլեկտիվը ընթանում է դեպի արտադրության կատարյալ ավտոմատացում։

Տեխնիկական առաջադիմության հարցերը գործիմաց կերպով է վճռում Կիրովի անվան գործարանի գլխավոր ինժեներ Ն. Կարապետյանը։ Այստեղ գյուտարարական և ռացիոնալիզատորական ամեն մի առաջարկություն մանրազնին կերպով քննարկվում է տեխնիկական խորհրդում և ընթացք ստանում։ Ինժեներն օժտված է կոլեկտիվի նկատմամբ տածած անսահման հավատով, աշխատողին հուզելու ունակությամբ, նորի, առաջավորի համար պայքարելու վճռականությամբ։

Իր լավագույն աշխատանքով աչքի է ընկնում Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի ինժեներա-տեխնիկական երիտասարդ կոլեկտիվը։ Կոմբինատի տեխնիկական ինտելիգենցիայի մի զգալի մասը ընտրված է պարտիական վերահսկողության հանձնաժողովներում։ Այսպես՝ տեխնիկական առաջադիմության հանձնաժողովի ղեկավարն է Իվան Միրոշնիկովը։ Հանձնաժողովը ուսումնասիրել է մեխանիզմների ու սարքավորումների վիճակը հանքում, հարստացուցիչ ֆաբրիկայում, դիզելային պարկում և արել է մի շարք գործնական առաջարկություններ։ Հանձնաժողովը, հետևողականորեն պայքարելով հանուն տեխնիկական առաջադիմության, պրպտում է նոր ուղիներ ձեռնարկության ռեզերվները լավագույն ձևով օգտագործելու համար։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում աշխատում է անվանի էքսկավատորավար, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գերասիմ Պետրոսյանը։ 1—1,5 րոպեում նա բարձում է 25 տոննանոց ինքնաթափը։

Եթե նախառևոլյուցիոն Ղափանում աշխատող ինժեներների թիվը երբեք 5-ի չի հասել, ապա այժմ շրջանում աշխատում են 500 ինժեներներ։

Տեխնիկական ինտելիգենցիայի հզոր ջոկատ կա Ալավերդում, Լենինականում և այլուր։ Ինժեներների մեծ բանակ է աշխատում Կիրովականում, որտեղ տեխնիկական պրոգրեսի առաջավորներից մեկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, քիմիկոս, բազմաթիվ տեխնիկական կատարելագործումների հեղինակ ինժեներ Թևոսյանն է։

Շատ հաճախ ինժեներա-տեխնիկական աշխատողները նոր առաջարկություն մտցնում են բանվորների համագործակցությամբ։ Օրինակ՝ ներտաշ հաստոցի յուրացման գործում մեծ աշխատանք կատարեցին Լուսավանի հաստոցաշինական գործարանի բանվորները։

Ինժեներների, տեխնիկների և բանվորների համագործակցությունը մեծ ուժ է։ Այն արտահայտում է տեխնիկական ինտելիգենցիայի և բանվորների

կությունններում տեխնոլոգների ու գործարանային հետազոտողների թիվն ավելացել է 4000 մարդով։

Որքան մոտենում ենք կոմունիզմին, այնքան ավելի է բարձրանում տեխնիկական ինտելիգենցիայի դերը հասարակական արտադրության զարգացման, երկու սիստեմների խաղաղ տնտեսական մրցության պայքարում հաղթելու գործում։ Եվ, հատկապես, մեծ ու պատասխանատու է այն ինժեներների դերը, որոնք աշխատում են մեր բազմաթիվ նախագծային կազմակերպություններում։ Կոնստրուկտորների, նախագծողների և տեխնիկական ինժեներների թիվը մեր ռեսպուբլիկայում այժմ 3500-ից ավելի է։ Նրանք գտնվում են կոմունիզմի համար մղվող պայքարի առաջավոր դիրքերում։

Եթե մեր երկրի շինարարությունը համեմատենք հսկա կոնվեյերի հետ, ապա նախագծող ինժեները նրա վրա կատարում է համար առաջին օպերացիան, որը տոն է տալիս ու որոշում ամբողջ պրոցեսի ռիթմը։ Ահա թե ինչու յուրաքանչյուր ինժեներ, երբ նա ստորագրում է մի նոր նախագծի տակ, պետք է խորհի, թե դրանով նա ինչ չափով է բավարարում նորի, գիտության ու տեխնիկայի ամենաբարձր պահանջները։

Այժմ մեր ռեսպուբլիկայի ինստիտուտներում նախագծվում է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի, Լուսավանի գործիքաշինական գործարանի, տասնյակ նոր ձեռնարկությունների, երկաթուղային ու խճուղային ճանապարհների ու նոր քաղաքների կառուցումը. նախագծվում է վերակառուցելու բազմաթիվ գործարաններ, ստեղծվում են հարյուրավոր նոր մեքենաների, մեխանիզմների, սպասքների, հարմարանքների նախագծեր։

Մեր նախագծային ու գիտա-հետազոտական ինստիտուտներում են ստեղծվել Սովետական Միությունում առաջին ստորերկրյա էլեկտրակայանների (Սևանի, Արգնիի) և Աթարբեկյանի, Գյումուշի ու այլ նախագծեր։ Այժմ նախագծվում են Որոտանի և մյուս կասկադների էլեկտրակայանները։

Հայէլեկտրագործարանի ինժեներները Համամիութենական էլեկտրամեխանիկայի գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի կոնստրուկտորների հետ միասին 1959 թվականին ստեղծեցին ու յուրացրին 14 տիպի մեքենաների արտադրություն, իսկ 1960 թվականին՝ յուրացնում են 20 նոր տիպի մեքենաների արտադրություն։ Տեխնոլոգիական, տեխնիկական առաջադիմության գործում իրենց ավանդն են մուծում գործարանի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Միայն այս տարվա անցած 10 ամիսներում նրանք ներկայացրել են 650 առաջարկ, որից 300-ը ներդրվել են արտադրությունում, և 3 միլիոն ռուբլի տնտեսվել է։ Այդպես է նաև մեր գրեթե բոլոր մեքենաշինական գործարաններում, լեռնահանքային ձեռնարկություններում, քիմիական գործարաններում, սննդի և թեթև արդյունաբերության ֆաբրիկաներում։

Մեր ռեսպուբլիկայի տաղանդավոր տեխնիկական ինտելիգենցիան ջանք չի խնայում ներքին ռեզերվները լայնորեն օգտագործելու և յոթնամյակը ժամկետից շուտ ավարտելու համար։ Ժողովուրդը սիրով է խոսում այն ինժեներների մասին, որոնք ոչ միայն բանվորների տեխնիկական ղեկավարներն են, այլև նրանց ուսուցիչը, դաստիարակը։ Ռեսպուբլիկայում աճել են արտադրության փորձված հրամանատարներ, որոնք բանվորների շրջանում մեծ հեղինակություն են վայելում։

Ռեսպուբլիկայում խոշորագույն մեքենաշինական ձեռնարկության՝ Հայէլեկտրագործարանի տեխնիկական ղեկավար, գլխավոր ինժեներ Ռ. Օհանյանի



մասին մեծ սիրով ու ջերմորեն են արտահայտվում բանվորները։ Նա ամեն կերպ աջակցում է գործարանում ծնվող նորի՝ զարգացմանը։ Ռ. Օհանյանի ղեկավարությամբ գործարանի մասնագետներն ու բանվորները մեծ ջանքեր գործադրեցին՝ ժամկետից շուտ գործարկելու կոնվեյերը։

Վերջին տարիներին Հայէլեկտրագործարանը Սովետական Միության էլեկտրամեքենաշինական ձեռնարկություններից առաջինն է, որ կառուցել է մոտ չորս կիլոմետր երկարության կոնվեյեր ու տարբեր տիպի փոխադրիչներ։ Այստեղ այժմ յուրաքանչյուր բանվորի էլեկտրազինվածությունը հավասար է 4,6 կվտ-ի։ Այդ առումով գործարանը Սովետական Միության ամենաառաջավոր ձեռնարկություններից մեկն է։ Գործարանում օրեցօր ավելանում է աշխատանքային պրոցեսների ավտոմատացումը. ամբողջ ձեռնարկության կոլեկտիվը ընթանում է դեպի արտադրության կատարյալ ավտոմատացում։

Տեխնիկական առաջադիմության հարցերը գործիմաց կերպով է վճռում Կիրովի անվան գործարանի գլխավոր ինժեներ Ն. Կարապետյանը։ Այստեղ գյուտարարական և ռացիոնալիզատորական ամեն մի առաջարկություն մանրազնին կերպով քննարկվում է տեխնիկական խորհրդում և ընթացք ստանում։ Ինժեներն օժտված է կոլեկտիվի նկատմամբ տածած անսահման հավատով, աշխատողին հուզելու ունակությամբ, նորի, առաջավորի համար պայքարելու վճռականությամբ։

Իր լավագույն աշխատանքով աչքի է ընկնում Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի ինժեներա-տեխնիկական երիտասարդ կոլեկտիվը։ Կոմբինատի տեխնիկական ինտելիգենցիայի մի զգալի մասը ընտրված է պարտիական վերահսկողության հանձնաժողովներում։ Այսպես՝ տեխնիկական առաջադիմության հանձնաժողովի ղեկավարն է Իվան Միրոշնիկովը։ Հանձնաժողովը ուսումնասիրել է մեխանիզմների ու սարքավորումների վիճակը հանքում, դիզելային պարկում և արել է մի շարք գործնական առաջարկություններ։ Հանձնաժողովը, հետևողականորեն պայքարելով հանուն տեխնիկական առաջադիմության, պրպտում է նոր ուղիներ ձեռնարկության ռեզերվները լավագույն ձևով օգտագործելու համար։

Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում աշխատում է անվանի էքսկավատորավար, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գերասիմ Պետրոսյանը։ 1—1,5 րոպեում նա բարձում է 25 տոննանոց ինքնաթափը։

Եթե նախառևոլյուցիոն Ղափանում աշխատող ինժեներների թիվը երբեք 5-ի չի հասել, ապա այժմ շրջանում աշխատում են 500 ինժեներներ։

Տեխնիկական ինտելիգենցիայի հզոր ջոկատ կա Ալավերդում, Լենինականում և այլուր։ Ինժեներների մեծ բանակ է աշխատում Կիրովականում, որտեղ տեխնիկական պրոգրեսի առաջավորներից մեկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, քիմիկոս, բազմաթիվ տեխնիկական կատարելագործումների հեղինակ ինժեներ Թևոսյանն է։

Շատ հաճախ ինժեներա-տեխնիկական աշխատողները նոր առաջարկություն մտցնում են բանվորների համագործակցությամբ։ Օրինակ՝ ներտաշ հաստոցի յուրացման գործում մեծ աշխատանք կատարեցին Լուսավանի հաստոցաշինական գործարանի բանվորները։

Ինժեներների, տեխնիկների և բանվորների համագործակցությունը մեծ ուժ է։ Այն արտահայտում է տեխնիկական ինտելիգենցիայի և բանվորների

նոր հարաբերություններ՝ կոլեկտիվիզմի, ընկերականության և փոխադարձ օգնության հարաբերություններ, որոնք սովետական կարգերի ծնունդ են։

Ավտոմասերի գործարանի էներգետիկ Համլետ Կարախանյանը, ցեխի պետ Գրիգոր Մկրտչյանի հետ միասին, կարողացավ մեծ հաջողությամբ յուրացնել բարձր հաճախականության էլեկտրական հոսանքի կիրառությունը ո՛չ միայն դարբնոցային պրոցեսներում, այլև մետաղների տերմիկական մշակման բնագավառում։ Այժմ Կարախանյանն ու Մկրտչյանը իրենց կուտակած գիտելիքներն ու փորձը ամբողջովին ներդնում են Լուսավանում կառուցվող խոշոր մասնագիտացված գործարանի ստեղծման գործում։

Սովետական տեխնիկական ինտելիգենցիան, հավատարմորեն ծառայելով սոցիալիստական մեծ Հայրենիքին և ակտիվորեն մասնակցելով կոմունիզմի շինարարությանը, պարտիայի առաջադրանքով միաժամանակ օգնում է ժողովրդական դեմոկրատիայի երկրներին առաջավոր տեխնիկան յուրացնելու, սեփական կադրեր ստեղծելու գործում։ Վաղուց արդեն կանոն է դարձել, որ Հայաստանի բազմաթիվ մասնագետներ անմիջականորեն վարում են արդյունաբերական օջախների կառուցման գործը ՍՍՌՄ սահմաններից դուրս։

Էկոնոմիկայի ասպարեզում մեր հաջողությունները մեծ չափով կախված են ինժեներա-տեխնիկական աշխատողներից, մեր սքանչելի տեխնիկական ինտելիգենցիայի հսկայական բանակից, որն անսահման նվիրված է Կոմունիստական պարտիային, սոցիալիստական Հայրենիքին։ Տարեցտարի աճում է մասնագետների դերը սովետահայ հասարակության կյանքում։ Մեր արագորեն աճող տեխնիկական ինտելիգենցիան շրջապատված է պարտիայի ու կառավարության ջերմ հոգատարությամբ։

Մեր կենցաղի մեջ են մտել այնպիսի նոր երևույթներ, ինչպիսիք են՝ տրնտեսական ակտիվի ժողովները, գիտա-տեխնիկական կոնֆերանսները, ռացիոնալիզատորների և գյուտարարների հավաքները, կոնստրուկտորների, տեխնոլոգների, վարպետների, էներգետիկների սեմինարները։

1958 թվականի փետրվարի 8-ին Կրեմլի Մեծ պալատում սովետական ժողովրդական ինտելիգենցիայի ներկայացուցիչների ընդունելության ժամանակ Ն. Ս. Խրուշչովն ասել է, որ մենք, խոսելով սովետական գիտության նվաճումների մասին, երբեք չպետք է մոռանանք միջնակարգ և բարձրագույն դպրոցները, որտեղ ժողովրդական տնտեսության համար պատրաստվում են բոլոր կադրերը։ Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում այսօր աշխատում են բարձրագույն կրթություն ունեցող ավելի քան 50 հազար մասնագետ։

Այժմ բուհերը ո՛չ միայն դարբնոց են որակյալ մասնագետ կադրեր պատրաստելու համար, այլև կարևոր գիտա-հետազոտական գործունեության կենտրոններ են։ Բուհերում կենտրոնացված են մեծ ուժեր, որոնք ընդունակ են լուծելու տեխնիկական առաջադիմության կարևոր պրոբլեմներ։

Սովետական Հայաստանի աշխատավորությունը հիմք ունի հպարտանալու Կոմունիստական պարտիայի հոգատարության շնորհիվ աճած տեխնիկական կադրերի այն ստվար բանակով, որի անձնվեր մարտիկները անդուլ և ազնիվ աշխատանքով կոմունիզմ են կերտում։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ օջախները

## ԳՈՒԳԱՐՔԻ ՍԻՐՏԸ


**Ս. ԹԵՎՈՍՅԱՆ**

Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան կոմբինատի դիրեկտոր


Քաղաքներն ու խոշոր բանվորական ավաններն աճում են ու զարգանում խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների շուրջը։

Այդպես էլ աճել է մեր Կիրովականը՝ պատմական Գուգարքի սիրտը։

Համարձակորեն կարելի է ասել, որ նա այսօր ոչ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև Անդրկովկասի գեղեցկագույն քաղաքներից մեկն է. բնությունը նրան ոչնչից չի զրկել, նվիրել է նրան այն ամենագեղեցիկը, ինչ ինքն է ունեցել։

Հոյակապ, անկրկնելի պեյզաժներ, հարուստ ու փարթամ սաղարթախիտ անտառներ, զով ծմակներ ու թավուտներ, արցունքի պես վճիտ ու հստակ սառնորակ աղբյուրներ, բազմաթիվ մեծ ու փոքր ջրվեժներ ու գետակներ, փոքրիկ, գողտրիկ սարահարթեր ու հովիտներ... Դժվար է նկարագրել այն բոլորը, ինչով այնպես շռայլորեն զարդարել է նրան մայր բնությունը։

Աշխատասեր ու շինարար հայ ժողովուրդը Սովետական իշխանության գոյության այս կարճ ժամանակամիջոցում, բնության այս չքնաղ վայելքները համեմել է իր ճարտարապետական տաղանդի անկրկնելի կոթողներով ու կառույցներով, հոյակապ լայնանիստ մայրուղիներով, կուլտուրական օջախներով, բազմաթիվ պարտեզներով, պուրակներով ու այգիներով։ Նրա շրջակայքում վեր են խոյացել բազմաթիվ արտադրական ձեռնարկությունների կորպուսները, որոնց թագն ու պսակը Կիրովականի Ալեքսանդր Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատն է, նրա անցյալի ու ապագայի զարգացման գրանիտե անկյունաքարը։

***

1920 թվականի նոյեմբերին Հայաստանում սովետական կարգերի հաստատմամբ սկսվեց հայ ժողովրդի կյանքի հավերժական գարունը։ Մեծատաղանդ հայ ժողովուրդը ձեռք բերեց իր իսկական ազատությունն ու անկախությունը, թևակոխեց իր պատմության բուն ոսկե դարը։

Ստեղծագործ հայ ժողովուրդը ձեռնամուխ եղավ երկրի վերաշինմանը։ Եվ ու զեռ ամենուրեք. այնտեղ՝ մայրաքաղաքում, վեր են խոյանում տասնյակ արտադրական ձեռնարկությունների կորպուսներն ու ծխնելույզները, զրնգում

է մոնտաժվող սարքավորումների մետաղը, գործում են թողարկված ղազգահ-
ները։ Դաշտերում սկսում է լսվել նոր երևացող տրակտորների ավետաբեր
հոինդը։

***

Որոշ ժամանակ դեռ նիրհած էր Լոռին... Հովվերգական անդորրություն էր
տիրում Ղարաքիլիսայում։ Ղարաքիլիսա... սև եկեղեցի. որքա՛ն տհաճ է հնչում
այն, ինչպիսի՛ սոսկալի ու ողբալի օրեր է հիշեցնում այդ սև անունը...

Ասում են, որ թագավորանիստ գեղատեսիլ բլրակի լեռնալանջերում դիր-
քավորված են եղել հայկական չորս գնդերը, նրա դեմ առ դեմ, Սուլեյման
սարի վրա՝ թշնամու հրոսակախմբերը։

Սկսվել է սոսկալի ճակատամարտը. անհավասար գոտեմարտում հայկա-
կան այրուձին կրել է հսկայական կորուստներ։ Մարդկանց և երիվարների
դիակույտերը հսկայական բլուր են կազմել։ Հայ երախտագետ ժողովուրդը
հենց դիակույտերի այդ վայրում հուշաեկեղեցի է կառուցում և այն անվանում
Սև եկեղեցի (Ղարաքիլիսա...)

Այսպիսի ավանդությունները բազմաթիվ են։ Թողնենք Ղարաքիլիսա վայ-
րի գիտապատմական անվանման քննությունը պատմաբաններին. մեզ հետա-
քրքրում են նրա պատմության միայն վերջին տասնամյակները։ Տասնամյակ-
ներ, որոնք բյուր անգամ ավելի շատ բան են տվել մեր ժողովրդին, քան անց-
յալի հազարամյակները։

Եվ իրոք, 1920 թվականի Ղարաքիլիսան ունեցել է մոտ չորս ու կես հա-
զար ազգաբնակչություն։ Քաղաքի արտադրական ձեռնարկությունները եղել են
մի քանի մասնավոր արհեստանոցներ՝ դարբնոցներ, կոշկակարանոցներ, ա-
տաղձագործների խանութներ։

Ղարաքիլիսայի ամբողջ ինտելիգենցիան բաղկացած էր մի քանի ինժեներ-
ներից, բժիշկներից և մոտ երկու տասնյակ ուսուցիչներից։ Քաղաքը զուրկ էր
որևէ կուլտուրական օջախից, եթե չհաշվենք մի քանի թերի միջնակարգ հան-
րակրթական դպրոցները։ Երկհարկանի շենքերի թիվը չէր անցնում տասնյա-
կից. փողոցներն անբարեկարգ էին, ծուռումուռ։

Հայաստանի բոլշևիկները ոչ մի րոպե չէին մոռանում մեծ Լենինի ցու-
ցումները՝ երկրի վերաշինության, տնտեսության զարգացման և բուռն վերելքի
մասին։ Ահա 1927 թվականին մեր պարտիան որոշում է կառուցել Ձորագէսի
ջրահանգույցը, որն այն ժամանակվա համար համարձակ քայլ էր։

Վրդովվում է նաև գեղատեսիլ Լոռվա դարավոր անդորրը։ Օր ու գիշեր
հռնդում են մեքենաները, պայթյուններից դղրդում են լեռներն ու ձորերը։ Ին-
չե՞ր չէր գրի մեր մեծ լոռեցին, եթե նա վկա լիներ այդ վիթխարի իրադար-
ձություններին։

Եվ այսպես, երկունք էր ապրում Ձորագետը, ծնվում էր Ձորագէսը...
Ուրեմն, պետք է որոշվեր՝ որտեղ օգտագործել էլեկտրական էներգիան։
Հենց նույն թվականին էլ միութենական կառավարությունը որոշում է ըն-
դունում կառուցել կալցիում-ցիանամիդի մի նոր գործարան Քոլագիրան կա-
յարանի շրջակայքում։ Սակայն տեղանքի հարմարությունները այդ թույլ չեն
տալիս և նշանակված հատուկ հանձնաժողովը որոշում է այն տեղափոխել Կի-
րովական։ Սկսվում է նրա կառուցումը հենց այդտեղ, որն այն ժամանակ հա-
մարվում էր Ղարաքիլիսայի ամենահեռավոր արևմտյան ծայրամասը։



Կոմունիստական պարտիայի կամքով սովետական մարդիկ սկսում են
քայլ առ քայլ ետ մղել բնության տարերքը, հաղթահարել լեռնային պայման-
ների դժվարությունները։ Հիմա, գուցե դա նույնիսկ ծիծաղելի թվա, սակայն
այդ այժմ՝ տեխնիկայի այս դարում։ Իսկ այն ժամանակ՝ 1929 թվականի գար-
նանը, երբ միակ գործիքը բրիչն էր, բահը, փայտյա թին, արորը... իսկ
տրանսպո՞րտը... Միակ տրանսպորտը գոմեշի և եզան սայլերն էին. նույնիսկ
ձին չէր ծառայում որպես փոխադրամիջոց. այլևս չենք խոսում մեքենայի մա-
սին։ Ավելին. եզները կատարում էին վերամբարձիչների պատվավոր դերը.
ծանրաքարշ տրանսֆորմատորները, մեքենաներն ու հաստոցները սարերն էին
բարձրացնում լծված եզներով։

Մոտ երեք տարի է տևել մարդկանց գոտեմարտը բնության հետ և ահա,
1932 թվականի գեղածիծաղ գարնանը տոնական օր է ապրում «Քիմշինը»։ Կրի
ցեխի առաջին վառարանի վերասլաց ծխնելույզից բարձրանում են առաջին
քուլաները, ավետելով հայ ժողովրդին, թե ծնունդ է առել Հայաստանի և ողջ
Անդրկովկասի ֆեդերացիայի քիմիական առաջնեկը՝ միութենական առաջին
հնգամյակի առաջնեկներից մեկը։

Հպարտության ոգրպիսի՛ մեծ զգացմունքով են խոսում այդ օրվա մասին
մեր պատվարժան վետերանները. նրանցից ոմանք դեռ աշխատում են՝ բոլորի
կողմից սիրված ու հարգված, նախկինում փականագործ, այժմ ցեխի մեխանիկ
Արտավազդ Առաքելյանը, վերջերս միայն թոշակի անցած Կամսար Եղշատյա-
նը, Թադևոս Մանուկյանը, Գալուստ Վարդանյանը, Ռուբեն Մացակյանը և շատ
ու շատ ուրիշ ընկերներ։ Չի կարելի չնշել նաև այն ժամանակվա գլխավոր ին-
ժեներ Հմայակ Մելիք-Աղամիրյանի անունը։ Ալեհեր այդ ծերունին մինչև այժմ
էլ աշխատում է մեր քիմիական արդյունաբերության բնագավառում։

Սակայն դա միայն ծնունդն էր. բայց ինչպիսի՜ արագությամբ է փարթա-
մանում այդ նորածինը։

Իսկ ի՞նչ է ներկայացնում իրենից այսօրվա Կիրովականը։ Մի նորակերտ
քաղաք՝ իր հոյակապ կոթողներով, գեղեցիկ, լայնատարած փողոցներով, երե-
վելի պարկերով ու պուրակներով։

Ո՞վ է տվել մեր քաղաքին այդ ամենը. առանց սխալվելու կարելի է ա-
սել՝ Ալեքսանդր Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, Կիրովականի
այդ գրանիտյա ֆունդամենտը։

Նրան են պատկանում քաղաքային նորակառույց բնակարանային ֆոնդի
ավելի քան 70 տոկոսը, կուլտուրայի պալատը, հիվանդանոցային թաղամասը,
քաղաքի հիմնական բարեկարգ շենքերը։ Նրա շուրջը որպես արբանյակներ ա-
ճել են գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտները, Պոլիտեխնիկ
ինստիտուտի երեք ֆակուլտետները։ Չէր ծնվի ացետատային մետաքսի գործա-
րանը, չէին վերակառուցվի տրիկոտաժի և այլ ֆաբրիկաներ, վերելք չէր ապրի
քաղաքի մեքենաշինությունը, չէին կարող զարգանալ ավտոմատիկայի առաջ-
նեկները, եթե չլիներ քիմիական կոմբինատը։ Կիրովականն այսօր ռեսպուբ-
լիկական ենթակայության քաղաք է և դրա պատճառը դարձյալ Կիրովականի
քիմիական կոմբինատն է։

Այո, մեծ է կոմբինատի նշանակությունը և ոչ միայն Կիրովականի, մեր
ռեսպուբլիկայի համար, այլև մեր Միության ողջ ժողովրդական տնտեսության
համար։

Ահա մի քանի փաստ. մինչև 1936 թվականը կոմբինատն արտադրում էր

երկրի կարբիդի բալանսի զգալի մասը. այսօր էլ դեռ նրա տեսակարար կշիռը բավական բարձր է։ Որակի տեսակետից, մեր արտադրած կալցիումի կարբիդը գերազանց տեղ է գրավում ողջ Սովետական Միությունում և այդ է պատճառը, որ Միությունից արտահանվող կարբիդի «առյուծի բաժինը» առաքվում է Կիրովականից։

Կիրովականի քիմիական կոմբինատը Միության մեջ արտադրվող կալցիում-ցիանամիդի արդյունաբերության բնագավառում գրավում է առաջնակարգ տեղ, ցիանամիդի փոշին, որը կիրառվում է բամբակի դաշտերի դեֆոլատացիայի (տերևաթափման և կնգուղների բացումը արագացնելու) համար, արտադրվում է միայն մեզ մոտ։ Հաշվված է, որ ցիանամիդի այն քանակը, որը հատկացվում է այդ նպատակին, միայն Միջինասիական ռեսպուբլիկաների բամբակագործներին տալիս է 5.000.000 բանվորական ձեռքի խնայողություն։ Այլևս չենք խոսում այն մասին, որ արագացվում է բամբակի հավաքման պրոցեսը և բերքը փրկվում է կորստից։

Կոմբինատն արտադրում է ցիանական միացություններ, այսպես կոչված՝ նատրիումի ցիանական աղ։ Սա թունավոր քիմիկատ է. մեծ քանակությամբ օգտագործվում է տեխնիկական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարելու համար։ Առանց այդ քիմիկատի, հատկապես թեյի և ցիտրուսային մշակույթների պլանտացիաները կմատնվեն կորստի։ Ցիանական այդ միացության միջոցով պայքարում են չումայի դեմ, այն օգտագործվում է դեղագործության մեջ։ Հատկապես խոշոր է նրա նշանակությունը ոսկու արդյունաբերության ասպարեզում։ Չի կարելի պատկերացնել ոսկու արդյունաբերության ինդուստրացում, առանց ցիանական այդ միացության։

Այսպիսին է ոչ լրիվ ցանկը այն բնագավառների, ուր կիրառվում է ցիանական այդ քիմիկատը։ Եվ այդ պրոդուկտի արտադրության գերակշռող տոկոսը թողարկում է Կիրովականի քիմիական կոմբինատը։

Անցյալ տարի գործարկվեց Կոմբինատի սինթետիկ կորունդի արտադրությունը։ Կորունդը արհեստական թանկագին քար է, որի կարծրությունը մոտենում է ալմաստին։ Այսպես, եթե ալմաստի «կարծրությունը» համապատասխան աղյուսակներում ունի «10» թվանշան, ապա մեր արտադրած կորունդի կարծրությունը հասնում է 8-ից մինչև 9,3 թվանշանի։ Այլ կերպ ասած, տեխնիկայի շատ բնագավառներում նա փոխարինում է ալմաստին և այդ դասին պատկանող այլ կարծր նյութերի։ Գունավոր կորունդները հաջողությամբ են կիրառվում նաև զարդարվեստի ասպարեզում. բնական լալը կամ ադամանդը դժվարությամբ է տարբերվում արհեստականից։ Խոշոր է, շատ խոշոր կորունդի նշանակությունը ժամացույցների արտադրության, բոլոր տեսակի գործիքների սարքերի արտադրության բնագավառում։ Մեր արտադրած կորունդի միայն մի մասի բազայի վրա Նոր Հաճնում կառուցվում է տեխնիկական քարերի վերամշակման մի ձեռնարկություն, ուր պետք է աշխատեն 2800 բանվոր-ծառայողներ։

Եվ այսպես, կարողությունները լրիվին շահագործման հանձնելուց հետո (1962 թվականի վերջերին) կոմբինատը կարտադրի Միությունում արտադրվող ողջ քարերի քանակության 60 տոկոսից ավելին. այս թիվը ինքն է խոսում իր մասին։

Կառուցման պրոցեսում է և 1961 թվականի երկրորդ կեսից արտադրանք կտա նաև կոմբինատի սիստեմում գտնվող մի այլ ձեռնարկություն, որը



կարտադրի դիցիանդիամիդ և մելամին։ Վերջինս Սովետական Միությունում արդյունաբերական մասշտաբներով արտադրվելու է մեզ մոտ՝ Կիրովականի քիմկոմբինատում (կիսագործարանային եղանակով. այն այժմ արտադրվում է Գորկու տնտեսական ռայոնում)։

Մելամինը հիանալի ելանյութ է բարձրորակ պլաստիկ մասսաների արտադրության համար. սակայն ընթացիկ յոթնամյակում այն չենք կարող օգտագործել պլաստիկ մասսաների արտադրության մեջ, քանի որ նրա պահանջը շատ ավելի մեծ է ժողովրդական տնտեսության մի այլ բնագավառի համար։ Այդ թեթև արդյունաբերության և, հատկապես, տեքստիլ ու գործվածքային այլ արտադրությունների բնագավառն է։

Գործվածքեղենի ներկումը առանց մելամինի առկայության ստացվում է անորակ. կտորները շատ շուտ խունանում են և կորցնում իրենց գեղեցկությունը։

Այստեղից էլ ինքնին հասկանալի է դառնում մելամինի դերը վերոհիշյալ բնագավառների համար և այն հանգամանքը, որ, չնայած պլաստիկ մասսաների արտադրության նույնպիսի հրամայական պահանջի, Միութենական Պետպլանը, անուամենայնիվ, մելամինը լրիվին հատկացնում է թեթև արդյունաբերությանը։

Հետագայում, իհարկե, երբ մելամինի արդյունաբերությունը կզարգանա նաև միութենական այլ ռեսպուբլիկաներում, մենք հնարավորություն կունենանք այն լայնորեն օգտագործել պլաստիկ մասսաների արտադրության մեջ։ Խոշոր նշանակություն ունի նաև, ինչպես նշեցինք, դիցիանդիամիդի արտադրությունը. այն նույնպես կիրառվում է թեթև արդյունաբերության, ֆաներայի, դեղագործության և քիմիական արդյունաբերությունների մի շարք բնագավառներում։

Ինչպես նշեցինք, այս երկու նյութերի արտադրությունն էլ ընթացիկ յոթնամյակում կազմակերպվելու է մեզ մոտ՝ Կիրովականի քիմիական կոմբինատում։

Սակայն մյուս արտադրությունները նույնպես խոշոր նշանակություն ունեն, բայց, առաջին հերթին, մեր ռեսպուբլիկայի և Անդրկովկասյան եղբայրական մյուս ռեսպուբլիկաների համար։

Կոմբինատում արտադրվող ամիակային սելիտրան հիմնականում սպառվում է մեզ մոտ՝ Հայաստանում և եղբայրական Ադրբեջանում։ Առանձին դեպքերում այն արտահայտվում է Անդրկովկասի սահմաններից դուրս՝ Հյուսիսային Կովկաս և Միջին Ասիա։

Թե ինչպիսի վճռական նշանակություն ունի այդ պարարտանյութը մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բարգավաճման համար, ցույց են տալիս հետևյալ թվական տվյալները. մեկ կիլոգրամ կապված ազոտը (կամ մոտ երեք կիլոգրամ սելիտրան), որով պարարտացվում են գյուղատնտեսական կուլտուրաները, բարձրացնում է հողի բերքատվությունը հետևյալ չափերով.

Շաքարի ճակնդեղ — 90 կգ-ով, կարտոֆիլ — 100 կգ-ով, բամբակ — 15 կգ-ով, հացահատիկ — 6—10 կգ-ով, բանջարեղեն—տասնյակ կիլոգրամներով։

Հիշենք՝ այդ մեկ կիլոգրամի դիմաց. սակայն ագրոկանոնների լիարժեք կիրառման ժամանակ հողի յուրաքանչյուր հեկտարին կարելի է տալ մոտ 200 կգ կապված ազոտ կամ մոտ 600 կգ ամիակային սելիտրա և յուրաքանչյուր հեկտարից ստացված միայն լրացուցիչ բերքը կկազմի.

Շաքարի ճակնդեղ—180 ցենտներ, կարտոֆիլ—200 ցենտներ, բամբակ—30 ցենտներ, հացահատիկ—10—12 ցենտներ։

Բացատրությունները ավելորդ են. թվերն իրենք են խոսում իրենց և այն նշանակության մասին, թե ինչ կդառնա մեր գյուղատնտեսությունը, երբ յոթնամյակի վերջում կոմբինատը չնայած ոչ լրիվին, բայց հիմնականում բավարարի մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մինիմալ պահանջները։ Գյուղատնտեսության վերելքի մասին խոսելիս չի կարելի չնշել ևս մեկ նյութի դերի և նշանակության մասին։

Յոթնամյակի վերջում, ավելի շուտ 1964 թվականին մենք եռապատկելու ենք ամիակի արտադրությունը. դրա մեծ մասը ծախսվելու է ամիակային սիլիտրայի արտադրության համար, սակայն հիմնականում այն ծախսվելու է, այսպես կոչված, կարբամինի (միզանյութի) արտադրության համար։

Ամենից առաջ միզանյութը շատ ավելի լավ պարարտանյութ է, քան սիլիտրան, եթե վերջինիս մեջ կապված ազոտի (հիմնական պարարտանյութի) տոկոսը հասնում է մոտ 33-ի, ապա միզանյութը պարունակում է ավելի քան 47 տոկոս կապված ազոտ։ Այսպիսով, հողերը պարարտացնելիս, ավելի քիչ կողմնակի նյութեր են մտցվում հողերի մեջ և դրանով իսկ չեն վատթարացնում հողի ստրուկտուրան։ Սակայն դա չէ հիմնականը մեր գյուղատնտեսության համար։ Բանից պարզվեց (այժմ էլ շարունակվում են գիտա-հետազոտական աշխատանքները), որ միզանյութը նրևելի անասնակեր է, ավելի շուտ ոչ թե անասնակեր, բառիս բուն իմաստով, այլ անասնակերի հետ նրա խառնուրդը զգալիորեն դյուրացնում է անասունների մարսողական օրգանների աշխատանքը, հետևապես և կերի լիարժեք յուրացումը։

Այսպիսով, տեղի է ունենում անասունների և, առաջին հերթին, խոշոր եղջերավոր անասունների արագացնող բտում։ 1964 թվականին մենք արտադրելու ենք 70000 տոննա միզանյութ. հաշվված է, որ եթե ամբողջ այդ քանակությունը մենք ծախսենք միայն անասունների բտման նպատակների համար, ապա 1965 թվականին մեր ռեսպուբլիկան կարող է լրացուցիչ արտադրել մոտ 40000 տոննա ապրանքային միս, այսինքն՝ մենք կարող ենք մսի արտադրությունը կրկնապատկել։

Քաղաքի ու կոմբինատի տնտեսական հզոր վերելքին համապատասխան աճել են նաև կադրերը։ Բավական է միայն նշել, որ վերջին 5 տարիների ընթացքում կոմբինատն օգնության կարգով այլ ձեռնարկություններ է ուղարկել ավելի քան 150 երիտասարդ կադրեր։ Նրանք այժմ աշխատում են մեր անծայրածիր Միության զանազան տնտեսական շրջաններում և մեր ռեսպուբլիկայում որպես սովխոզների դիրեկտորներ, կոլտնտեսությունների նախագահներ, ցեխերի և արտադրության պետեր, մեխանիկներ, կոնստրուկտորներ։

Այս հսկայական ու բարդ կոմբինատի կադրերն ամբողջովին աճեցրել ենք կոմբինատում և նրանք բոլորն էլ Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտի երիտասարդ սաներն են։

Մեր կոմբինատի նախկին մեխանիկ ընկ. Ժան Փյուսկուլյանը ներկայումս աշխատում է որպես Կիրովականի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի դիրեկտոր։ Այդ ձեռնարկության կազմակերպման օրից ընդամենը երկու տարի է անցել, բայց այն հայտնի է դարձել ողջ Սովետական Միությունում։

Ահա գլխավոր ինժեներ Սուրեն Օհանյանը։ Նա ընդամենը 31 տարեկան է.



ավարտել է Պոլիտեխնիկ ինստիտուտը 1952 թվականին. նա վայելում է կոմբինատի բոլոր աշխատողների սերն ու հարգանքը։

Գլխավոր էներգետիկ Էռնստ Մալյանը 35 տարեկան է, սակայն այդ բարդ բաժինը նա ղեկավարում է 1952 թվականից։ Պետք է հիշել, որ կոմբինատը էներգոտարության տեսակետից և էներգոսարքավորումների բարդությամբ առաջինն է ողջ Անդրկովկասում և քչերից մեկն է ողջ Միությունում։ Իսկ կոմունիստական աշխատանքի ցեխի պետ Մացակ Թումանյանն արդեն հայտնի է ողջ ռեսպուբլիկայում. նա ավարտել և մեզ մոտ է եկել նույնպես 1951 թվականի աշնանը, նրա 34 տարին նոր է բոլորել։

Բազմաթիվ են այդ անունները. նրանց մասին կարելի է գրել բազմաթիվ էջեր։

Սակայն, մեր կարծիքով, շատ ավելի լավ է իմանալ ապագայի մասին։ Յոթնամյակների ֆոնի վրա այդ ապագան այնքան պայծառ է ու հրապուրիչ, որ մենք կկամենայինք այդ մասին խոսել, պատկերացնելով ոչ շատ հեռու ապագան։

Վերցնենք 1970 թվականը։ Մենք նախամտածված ընտրեցինք այդ պատմական թիվը. չէ՞ որ բոլորում է մեր ազգային տոնի հիսնամյակը՝ կես դարը։

Ահա մի զրույց, որը տեղի է ունենալու 1970 թվականի նոյեմբերի 29-ին։ Դա մեզ իրավունք է տալիս պատմել անցյալ կատարյալ ժամանակով։ Խնդրում եմ համոզվեք, որ դա ոչ ֆանտազիա է, ոչ ֆանտաստիկ պատմվածք և ոչ էլ, նույնիսկ, գիտա-ֆանտաստիկ ակնարկ։ Սա սոսկ իրականություն է, մոտալուտ իրականություն։

***

Պարտիական կազմակերպությունը հիսնամյակի փառապանծ տոնակատարությունից 2—3 ամիս առաջ լսում է կոմբինատի գլխավոր ինժեների զեկուցումը՝ «Կոմբինատի դերն ու նշանակությունը ռեսպուբլիկայի համար՝ ազգային մեծ տոնի նախօրյակին»։

— Թեման չափազանց բարդ է. ինձ երկար ժամանակ է հարկավոր նման մի պատասխանատու զեկուցման համար։

— Ոչ միայն երկար ժամանակ, մեզ հարկավոր են փաստական մեծ մատերիալներ և ֆոտո-դոկումենտներ. պարտիական կազմակերպությունը որոշել է, որ դուք շրջագայեք ողջ ռեսպուբլիկան։ Դուք գիտե՞ք, որ մենք երեկ հենց ստացանք մեզ նվիրած երեք ավտոմեքենաները. դա շատ լավ է, վերցրեք դրանցից մեկը։

— Չեմ առարկում, այդպես նպատակահարմար կլինի. իսկ գեղեցի՞կ են մեքենաները։

— Ձեզ, ի՞նչ, գեղեցկությո՞ւնն է ավելի հետաքրքրում, թե՞...

— Դուք իրավացի եք, իհարկե, դե, լավ, ես կպատրաստվեմ մեկնելու, թեկուզ հենց վաղը։

«Գեղեցկուհին», այսպես էր կոչում վարորդը այդ մեքենան, որ կանգնած էր կոմբինատի շքամուտքի մոտ. գլխավոր ինժեները վերջին նախապատրաստությունններն էր կատարում։ Մեքենայի շուրջը հավաքված էին բազմաթիվ բանվորներ, ինժեներներ և այլ հետաքրքրասեր հաճախորդներ ու անցորդներ։ Մեքենայի աննկարագրելի գեղեցկությունը հրապուրել էր բոլորին. նրա բաց կաթնագույն թափքը հմայել ու իր վրա էր բևեռել բոլորի հայացքը։

— Ի՞նչ կասեք.— բաղմանշանակալից նայեց պարտկոմի քարտուղարը մոտեցող գլխավոր ինժեներին։

Նրանց հայացքները մի պահ լուռ հանդիպեցին։

— Արժանի է այդ անվան,— հպարտության վեհ զգացմունքով ու արժանավայել պատասխանեց գլխավոր ինժեները։

— Դե՜, խնդրում եմ բացատրեք ողջ իմաստը, թող մեր բանվորները տեսնեն իրենց աշխատանքի արդյունքը։

— Ինչպես տեսնում եք, սիրելի ընկերներ, մեքենայի թափքը ամբողջովին պլաստիկ մասսայից է պատրաստված. պլաստիկ մասսաների մեր ցեխը արտադրում է տասնյակ հազար տոննա նյութ. սինթետիկ այդ նյութը խոշոր նշանակություն ունի մեր երկրի ժողովրդական տնտեսության համար։ Մանրամասնորեն չեմ ուզում պատմել պլաստիկ մասսաների արտադրության մասին, քանի որ այն ձեզ քաջ հայտնի է։ Մյուս ընկերների համար, որոնք այն չգիտեն, կարճ կասեմ. պլաստիկ մասսաների արտադրությունը մենք կազմակերպել ենք մելամինի և միզանյութի բազայի վրա։ Մինչև 1964—65 թվականները մենք այդ անել չէինք կարող, քանի որ ելանյութերը քիչ էին։ Իսկ հիմա մենք ունենք գազի (բնական գազի, մեթանի) հսկայական աղբյուրներ (ինչպես գիտեք, բացի Ղարադաղի գազից, որի պաշարները զգալիորեն ընդլայնվել են, այժմ արդեն գազ է սկսել արտադրել նաև մեր ռեսպուբլիկան)։

Գազի այդպիսի հսկայական քանակությունների առկայությունը մեզ հնարավորություն տվեց զգալիորեն ավելացնելու միզանյութի արտադրությունը, լիովին բավարարելու ռեսպուբլիկայի գյուղատնտեսության պահանջները և մնացած մասն էլ հատկացնելու պլաստիկ մասսաների արտադրությանը։ Ինչպես դուք արդեն գիտեք, մինչև 1965 թվականը մենք այդ նպատակի համար չէինք ծախսում նաև մելամինը։ Գիտեք նաև, որ սկզբներում մելամինը ստանում էինք ցիանամիդից, որի արտադրությունը խիստ էներգատար էր և ոչ ձեռնտու։ Հիմա մելամինը ստանում ենք նույնպես միզանյութից, այսինքն՝ վերջին հաշվով, բնական գազից։ Ուստի և մենք մեծ չափերով լայնացրինք մելամինի արտադրությունը և հնարավորություն ստեղծեցինք նրա մի զգալի մասը հատկացնելու պլաստիկ մասսաների արտադրության համար։

— Իսկ որտե՞ղ է ծախսվում պլաստիկ մասսան, միայն մեքենաների թափքերի արտադրությա՞ն համար,— հարցրեց լսողներից մեկը։

— Ոչ, սիրելիս, այդ հարցին շատ դժվար է պատասխանել։ Գիտնականներից մեկն ասում է. «Հեշտ է պատասխանել այն հարցին, թե ո՞ր բնագավառներում չի կիրառվում պլաստիկ մասսան»։ Այն կիրառվում է բոլոր բնագավառներում, ուր ծախսվում է մետաղը։ Այն ՝լիովին փոխարինում է փայտին, հոյակապ քիմիական նյութ է, արհեստական մանրաթելերի եղբայրը և շատ ու շատ տեղերում փոխարինում է նրան։

— Մի հարց ևս, կարելի՞ է։

— Մեծ հաճույքով. սակայն մենք շեղվում ենք մեր բուն նյութից. ժամանակը կարճ է. եթե մենք այսքան խոսեցինք պլաստիկ մասսայի մասին, մյուս ցեխերի ընկերներն իրավացիորեն կվիրավորվեն։ Ապա, նայեցեք դողերին. կաուչուկը Երևանի Կիրովի գործարանինն է, պատրաստված Երևանի ավտոդողերի գործարանում։ Այս դողերը, ի տարբերություն մյուսների, կրկնակի չափով ավելի վազք կկատարեն։

— Հասկանում եմ, կորդը կապրոնային է,— միջամտեց ցեխի պետը։



— Այո, դա էլ ձեր պարծանքն է,— գովաբանեց գլխավոր ինժեները։ —Սակայն դուք դեռ լիովին չեք տիրապետել նրա տեխնոլոգիային։ Ճիշտ է, ինձ համար հասկանալի է, որ ֆոտո-սինթետիկ եղանակով ստացվող կապրոլակտամը միակն է ողջ Միության մեջ, բայց իմացե՛ք, նման ցեխերի ու արտադրությունների շինարարություն են սկսել նաև մյուս տնտեսական շրջանները։ Նայեցեք, որ նրանք ձեզ չգերազանցեն։ Բացի դրանից, ինչպես դուք գիտեք, շուտով սկսվում է երրորդ յոթնամյակը, և մենք մտադիր ենք լայնացնելու այն, և կրկնապատկելու նրա արտադրողականությունը։ Դուք գիտե՞ք, թե ինչ է նշանակում կապրոն։

— Ընկեր գլխավոր ինժեներ, մի մեքենայի մեջը նայեք, սա հո հեքիաթային է, որպիսի՜ դրապապատում։

— Սա արդեն կապրոնից չէ. դա մեր ցեխի արտադրանքն է,— անմիջապես միջամտեց զրույցին արհեստական բրդի ցեխի պետը և շարունակեց.— մի հաշվեք, դե 25000 տոննա արհեստական բուրդ, 25 միլիոն կիլոգրամ, առնվազն 50 միլիոն մետր. քանի՜, քանի նման մեքենաներ կդրապապատվեն։

Այնուհետև գլխավոր ինժեներն անդրադառնալով ռեսպուբլիկայի սահմաններում ճահճային և աղուտ հողերի յուրացմանը՝ նշեց.

— 1963—64 թվականներին սկսվեց քիմիայի արշավը նաև այդ աղուտների և ճահճուտների վրա։ Արշավանքներն սկսել էին ԳԱ Հողագիտական ու Ագրոքիմիական ինստիտուտները, համագործակցելով Ժողտնտխորհի անօրգանական քիմիայի ինստիտուտի հետ։ Այդ թվականներին վերջինս սկսել էր արտադրել «Քիմիկատը», արդեն մեծ մասշտաբներով։ «Քիմիկատը» զարմանալի անողոքությամբ չեզոքացնում էր աղուտները, վերածելով դրանք միանգամայն բերրի հողատարածությունների։

Սակայն առանց կենսատու ազոտի այդ հողերը բերքատու չէին դառնա։ Իզուր չէ, որ ժողովուրդը միզանյութին և սիլիտրային անվանում է «հողի պենիցիլին»։

Կոմբինատի գլխավոր ինժեները այցելել էր սովխոզներից մեկը ստուգելու այդ «պենիցիլինի» զորեղ ազդեցությունը։

Սովխոզի դիրեկտորը հյուրերին ընդունեց գրկաբաց. գլխավոր ինժեների հետ կային նաև ինստիտուտների ներկայացուցիչներ։

Մեծ էր հյուրերի զարմանքը, երբ նրանք ոտք դրին անասունների և բամբակյանի շենքը։ Ամենից առաջ աչքի էր զարնում արտակարգ մաքրությունը. գոմն այնպես լուսավոր էր, և օդն այնտեղ այնպես թարմ, ինչպես դրսում։

Դիրեկտորի դեմքը փայլում էր մի ինքնագոհ ժպիտով։

— Ներեցեք, որքա՞ն է կշռում № 10 խցիկի ցուլը։

— 1200 կիլոգրամից մի քիչ ավելի, բայց, գիտեք ինչ, զարմանալին դա չէ, նրա երեք տարին դեռ չի բոլորել։

— Կարելի՞ է նկարահանել, դա ինձ շատ անհրաժեշտ է։

— Ինչո՞ւ եք հարցնում. չէ՞ որ սա որքանով մերն է՝ սովխոզինը, այնքանով էլ ձերն է՝ կոմբինատինը։ Այդ գիրացումը միայն մեր շնորհքը չէ, միայն լավ ու ժամանակին կերակրելու արդյունք չէ։ Դա, ինչպես ասացինք, ամենից առաջ ձեր կոմբինատի արտադրած միզանյութի շնորհքն է։

Բայց դա ևս միակը չէ։ Դուք, երևի զարմացաք օդի մաքրության վրա, իսկ մաքուր օդը, ինչպես գիտեք, անասունին նույնքան անհրաժեշտ է, ինչպես և կերը։

Անասունները մենք արածացնելու չենք տանում. նրանք մշտապես գտնըվում են գոմերում: Իսկ դուք գիտե՞ք ինչ է նշանակում մերձարաքսյա ամառը: Անասունները գոմերում շնչահեղձ կլինեին, եթե մենք չսառեցնեինք օդը: Ահա այն խցիկում գտնվում են սառեցնող մեքենաները: Ձեր ամիակի հզորությունը դուք լավ գիտեք: Բացի դրանից, ամիակը (սառեցնող մեքենաները) մեզ հնարավորություն է տալիս չվախենալ շոգից, կառուցել մեծ մասշտաբի գոմեր, որոնք շատ էժան են նստում: Ահա այս գոմում մենք ունենք 500 խոշոր եղջերավոր անասուն, այսպիսի գոմերը, ինչպես տեսնում եք, բազմաթիվ են:

— Իսկ անասնակերով ապահովվա՞ծ եք:

— Հիմնականում ցանում ենք առվույտ և եգիպտացորեն: Ագրոկանոնների պահպանության պայմաններում, ձեր արտադրած քիմիական պարարտանյութերի շնորհիվ դաշտերի մեկ հեկտարից ստանում ենք՝ 1200-ից 1400 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա: Առվույտի ցանքերից կլիմայական նպաստավոր պայմանների շնորհիվ հնձում ենք 6—7 անգամ, ամեն անգամ ստանալով 180—200 ցենտներ, 55—60 ցենտներ բամբակ, 1000 և ավելի ցենտներ կերի ճակնդեղ, իսկ խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից՝ ավելի քան 400 ցենտներ բերք:

— Չե՞ք զարմանա, եթե ես ցույց տամ խաղողի մի վազ, որն անցյալ տարի տվեց 70 փութ քաղցրահամ խաղող:

Բոլորը զարմացած հետևեցին նրան:

— Մի զարմացեք. այդ վազը մենք չենք թաղում և կատարում ենք հատուկ էտում. ձմեռը նրան հագցնում ենք շապիկ, որը պատրաստված է ձեր արտադրանքներից՝ կապրոնի, արհեստական բրդի և պլաստիկ մասսայի ինչ-որ խառնուրդից. պատռել այն անհնար է, իսկ դիմացկունությունը՝ մշտնջենական: Գիտե՞ք, թե ինչպիսի հեղաշրջում կկատարեն նման նյութերը գյուղատնտեսության մեջ: Պատկերացրեք, որ նման վրաններով մենք հսկայական դաշտեր ծածկենք ու թեյ աճեցնենք, ցիտրուսներ... Տեսնում եք այն վրանը, մեր շարժական սաոցակայանն է: Վրանն էլ ձերն է, ձեր պլաստիկ մասսաներից ու կապրոնից պատրաստած, հիանալի ջերմամեկուսիչ հատկություններով (քաշն էլ շատ մեծ չէ): Շնորհակալություն ձեր կոլեկտիվին:

— Շնորհակալությունը պետք է ուղղել մեր կարգերին, մեր պարտիային...»

---

# ԱՌԱՋԻՆ ԾԻԾԵՌՆԱԿԸ

## Գ. ԿԱՐԳԱՆՅԱՆ

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի դիրեկտոր

Պատմության գիրկն է անցել նախառևոլյուցիոն Հայաստանի Ալեքսանդրոպոլը, որն իրենից ներկայացնում էր գետնափոր, կավածեփ տներով, նեղ, ոլորապտույտ փողոցներով ու նրբանցքներով մի քաղաք: Ամբողջ «արդյունաբերությունը» բաղկացած էր 17 տնայնագործական արհեստանոցից՝ 98 բանվորով: Դա 1920 թվականն էր, դաշնակների տխրահռչակ տիրապետության վերջին շրջանը, սովետական կարգերի հաստատման արշալույսը:

Վլադիմիր Իլյիչ Լենինը Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին անհրաժեշտ համարեց Հայաստանում ստեղծել թեթև արդյունաբերություն և այդ մասին համապատասխան ցուցում տվեց: Ղեկավարվելով լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներով և Հայաստանի աշխատավորներին օգնելու ցանկությամբ, Իվանովոյի մարզի Վիչուգա քաղաքի բանվորները 1922 թվականին Ալեքսանդրոպոլ (Լենինական) ուղարկեցին տեքստիլ սարքավորումների մի կոմպլեկտ:

«Թանկագին հայ ընկերներ, ընդունեցեք մեզնից այս համեստ նվերը և զարկ տվեք Հայաստանում տեքստիլ արդյունաբերության զարգացմանը: Թող լենինյան պարտիայի և ռուս մեծ ժողովրդի օգնությամբ ծաղկի ու բարգավաճի մեր սոցիալիստական Հայրենիքը»:

Իվանովցիների ուղարկած թանկագին նվերների բազայի վրա մեր քաղաքի հյուսիսային մասում, ուր մի ժամանակ ամայի դաշտ էր, դրվեց Հայաստանում տեքստիլ արդյունաբերության առաջնեկի՝ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի հիմքը:

Երախտագիտությամբ պետք է նշել, որ երիտասարդ ձեռնարկության կառուցմանը մասնակցեց ամբողջ երկիրը: Մոսկվայից, Իվանովոյից, Սերպուխովոյից և Ռուսաստանի Ֆեդերացիայի այլ քաղաքներից Լենինական եկան փորձված շինարարներ ու մոնտաժողներ: Միաժամանակ մեր քաղաքի շատ աշխատողներ ուղարկվեցին երկրի տեքստիլ ձեռնարկությունները՝ ռուս տեքստիլագործների մոտ մասնագիտություն ձեռք բերելու: Կարճ ժամանակ անց նրանք վերադարձան իբրև ջուլհակներ, մանածագործներ, ենթավարպետներ, սարքավորումների նորոգման ու մոնտաժման մասնագետներ: 1924 թվականին թողարկվեցին գործվածքի առաջին մետրերը: Գործվածքային ֆաբրիկան իր ամբողջ կարողությամբ շահագործման հանձնվեց 1928, իսկ նոր մանվածքային ֆաբրիկան՝ 1938 թվականին:

Կոմբինատի հիմնադրման օրվանից անցել է 38 տարի։ Այդ ժամանակամիջոցում աճել ու ընդլայնվել են նրա ֆաբրիկաները, ցեխերն ու բաժինները։ Կոմբինատը, իրավամբ, դարձել է հայրենական նորագույն տեխնիկայով հագեցած ձեռնարկություն, որն իր պատշաճ տեղն ունի ոչ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև մեր Միության առաջավոր ձեռնարկությունների շարքում։

Արտադրական տարածությունների անընդհատ ընդարձակումը, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը պայմաններ ստեղծեցին տարեցտարի ավելացնելու արտադրանքի թողարկման ծավալը։ Բավական է նշել, որ 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, պատրաստի գործվածքի աճը կազմում էր 214, իսկ 1959 թվականին, նույն տարվա համեմատությամբ՝ 266 տոկոս։

Արտադրանքի այսպիսի աճը հիմնականում ապահովվել է տեխնիկական-կազմակերպական մի շարք միջոցառումների, երկրի առաջավոր ձեռնարկությունների փորձի փոխանակման, ներքին հնարավորությունների հայտաբերման և օգտագործման շնորհիվ։

Լենինականի տեքստիլագործները միշտ էլ սերտ կապ են պահպանում Լենինգրադի Կիրովի անվան, Մոսկվայի մարզի Դոդովսկի, Քութայիսիի մետաքսի, Կիրովաբադի և մի շարք այլ քաղաքների տեքստիլ կոմբինատների հետ։ Մոսկվացիների օրինակով մանվածքային ֆաբրիկայի տեսակավորման բաժնի քրքրող ագրեգատները լրացվեցին նորագույն սնիչ-քրքրիչ մեքենաներով, տեղակայվեցին ուգարի սնիչներ, ժապավենային բաշխիչները փոխարինվեցին փոցխավոր բաշխիչներով, վերակառուցվեցին մեկ պրոցեսանի գզող մեքենաներ։

Միայն վերջին երկու տարում կոմբինատի ֆաբրիկաներում տեղադրվել է 600 նոր սարքավորում, մոդեռնացվել են 800 մեքենաներ ու հաստոցներ։ Նույն ժամանակամիջոցում մեքենայացվել են 20 տարբեր տեխնոլոգիական պրոցեսներ, որոնք երկար ժամանակ կատարվում էին ձեռքով։

Բավական է նշել, որ միայն անցած տարի տեխնիկական մտքի առաջամարտիկներն արել են ավելի քան 600 արժեքավոր առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 441-ը։ Դա կոմբինատին հնարավորություն տվեց խնայելու երկու միլիոն 250 հազար ռուբլի։

Ռացիոնալիզատորները և նորարարները, նշանաբան ունենալով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի Հունիսյան և 1960 թվականի Հուլիսյան պլենումների որոշումները, ստեղծագործական բուռն թափով են աշխատում։ Այս օրերին աշխատատար պրոցեսների կատարելագործմանն են ձեռնամուխ եղել ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու արտադրության առաջավորները։

Օրինակ, կոմբինատի գլխավոր ինժեներ Ա. Խազանովը, էլեկտրիկներ Ս. Միքայելյանը և Վ. Սավենկոն առաջարկեցին ներկման-վերամշակման ֆաբրիկայի եռացման կաթսաների վրա տեղադրել ավտոմատ կարգավորիչ, որի ներդրումով կոմբինատը կտնտեսի 600 հազար ռուբլի։ Լավագույն առաջարկություններ են արել և դրանք կենսագործվել են մանվածքային ֆաբրիկայում։ Նորարարներ Գ. Ավասյանը, Մ. Գևորգյանը և Ա. Մանուկյանը նախամանող մեքենայի վրա ստեղծել են մի հարմարանք, որը կանխում է կտորվածքները և հեշտացնում բանվորի աշխատանքը, ավելացնում է մեքենայի արտադրողականությունը։ Հիշատակման արժանի է նաև գլխավոր մեխանիկի



կողմից ստեղծված մասրաների վրայից մնացուկները մաքրող մեքենան, որը տարեկան տալիս է 86942 ռուբլու տնտեսում. Հնարավորություն է ստեղծվել 30 օժանդակ բանվորների տեղափոխելու հիմնական աշխատանքի և պահպանելու մասրաների նորմալ վիճակը։

Տեխնոլոգիայի կատարելագործման, եղած սարքավորումների մոդեռնացման աշխատանքներին ակտիվ կերպով մասնակցում են 400-ից ավելի ռացիոնալիզատորներ ու նորարարներ, որոնց տեխնիկական մտքի արդյունքն են տնտեսական մեծ օգուտ տվող բազմաթիվ առաջարկությունները։

Տեքստիլագործների, հատկապես վերամշակողների հիշողության մեջ դեռևս թարմ է 1955 թվականի ապրիլ ամիսը, երբ ի նշանավորումն մարդկության մեծագույն հանճար Վ. Ի. Լենինի ծննդյան 85-ամյակի, ներկման-վերամշակման ֆաբրիկան թողարկեց չթի և սպիտակեցված գործվածքի առաջին մետրերը։

Այդ ֆաբրիկան հագեցված է նորագույն տեխնիկայով։ Այստեղ բոլոր աշխատանքները մեքենայացված են։ Երիտասարդ կոլեկտիվի ուժերով, ազնիվ աշխատանքով մշակվում և ստեղծվում են 15 տեսակի չիթ և այլ գունագեղ գործվածքներ։ Կոմբինատը բազմաթիվ թելերով կապված է Ուկրաինայի, Վրաստանի, Ադրբեջանի և այլ ռեսպուբլիկաների քաղաքների ու շրջանների հետ։ Այնտեղ է ուղարկվում մեր կոլեկտիվի արտադրած գործվածքը և արագ կերպով սպառվում։ Մինչև տեքստիլ կոմբինատի հիմնադրումը քաղաքում և ռեսպուբլիկայում գրեթե ոչ մի արդյունաբերական ձեռնարկություն չկար, իսկ այժմ կոմբինատը հիմնական նյութով (բամբակեղենի գործվածք) ապահովում է մեր ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերական շատ ձեռնարկությունների։ Կոմբինատը գործվածք է մատակարարում Լենինականի Չկալովի անվան, Երևանի № 1, Կրուպսկայայի անվան կարի ֆաբրիկաներին։

Կոմբինատը պատրաստի մանվածք է մատակարարում Երևանի կաբելի գործարանին, նուրբ մահուդի, մետաքսի կոմբինատներին, տեղական արդյունաբերության գրեթե բոլոր ձեռնարկություններին, Լենինականի մանվածքային ֆաբրիկային, խուլ-համրերի արտադրական կոմբինատին և այլ ձեռնարկությունների։ Կոմբինատի արտադրական մնացուկների բազայի վրա է աշխատում նաև Լենինականի «Շիրակ» արտելը, որն ամեն տարի թողարկում է մի քանի միլիոն ռուբլու լայն սպառման առարկաներ։

Կոմբինատի արտադրական վերելքը պայմանավորված է ոչ միայն տեխնիկայի բարելավմամբ, առաջավորի արմատավորմամբ, այլև այն հայրենանվեր աշխատանքով, որ կատարում են տեքստիլագործները ի փառս մեր Հայրենիքի։ Դրա մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ վերջին տարիների ընթացքում մեր կոմբինատը 6 անգամ առաջնություն է շահել համամիութենական սոցիալիստական մրցության մեջ։ Հայրենիքին մատուցած աչքի ընկնող ծառայությունների համար 20 մարդ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով, 1700 մարդ՝ մեդալներով։

Կոմբինատի եղբայրական ընտանիքում համերաշխ ստեղծագործում, աշխատանքային նորանոր սխրանքների են ձգտում հայերն ու ռուսները, ուկրաինացիներն ու բելոռուսները, ադրբեջանցիներն ու քրդերը։ Իրենց նվիրված աշխատանքով աչքի են ընկնում ՀԿՊ կենտկոմի անդամության թեկնածու, ռուս ջուլհակուհի Մ. Անտոնովան, մանվածքային ֆաբրիկայի վարպետի օգնական, ուկրաինացի Տ. Սերաֆիման, ներկման-վերամշակման ֆաբրիկայի խոտանող,

ցեխի կոմունիստական աշխատանքի բրիգադավար քրդուհի Վ. Շամիլովան։

Աշխատանքը կոմբինատում դարձել է փառքի, պատվի ու արիության գործ։ Արտադրության մեջ աշխատող բանվոր-բանվորուհիների, ինժեներա-տեխնիկական աշխատողների 28 տոկոսն ընդգրկված է սոցիալիստական մրցության մեջ։ Նրանց մեծ մասը կատարում ու գերակատարում է պլանները։ Շատերն են արտադրության առաջավորներ, որոնց համբավը դուրս է եկել Լենինականից և լայնորեն տարածվել ռեսպուբլիկայում։ Ահա նրանցից մի քանիսը. ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Լենինի շքանշանակիր Աստղիկ Առաքելյանը, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, ջուլհակուհի Աստղիկ Պետրոսյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, գործող բանվորուհի Աստղիկ Շարոյանը, ջուլհակուհի Սիրուշ Հովհաննիսյանը, ենթավարպետ Գարեգին Տոնոյանը, մանածագործուհի Կիմա Մարյանը և շատ ուրիշներ։

Կոմբինատում Կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչման են արժանացել մանվածքային ֆաբրիկայից Վարսիկ Հովհաննիսյանի, գործվածքային ֆաբրիկայի վարպետի օգնականներ Գարեգին Տոնոյանի և Դեբենիկ Բադոյանի աշխատախմբերը։

Կոմունիստական աշխատանքի տեղամասի համար եռանդուն պայքարի են դուրս եկել 36 բրիգադա։ Նրանց աշխատանքի նշանաբանն է՝ ամեն գնով հաղթող դուրս գալ մրցությունից։

Կոմբինատի հետ միասին աճում է նրա ոսկե ֆոնդը՝ ձեռնարկության հիանալի կոլեկտիվը, նրա մարդիկ։ Որպեսզի մեքենաներով ու հաստոցներով հագեցած ձեռնարկության բոլոր սարքավորումները աշխատեն լրիվ կարողությամբ, բարձր արտադրողականությամբ, որպեսզի ստացվի անհրաժեշտ քանակությամբ գերազանց որակի արտադրանք, ամենից առաջ պետք է ունենալ որակյալ կադրեր, հոգ տանել նրանց տեխնիկական զինվածության մակարդակի անընդհատ բարձրացման մասին։

Նորագույն տեխնիկան պահանջում է լավ կադրեր։

Երբ շահագործման հանձնվեց ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության առաջնեկը, նրա ցեխերում ոչ մի տեղական ինժեներ ու տեխնիկ չէր աշխատում։ Այժմ մեզ մոտ աճել է տեխնիկական ինտելիգենցիան, ձեռնարկությունում աշխատում են 30 ինժեներ, 200 տեխնիկ, որոնց հետ միասին շարքային բանվորից բարձրացել, արտադրության հրամանատարներ են դարձել հարյուրավոր տեքստիլագործներ։ Նրանցից հիշատակության են արժանի կոմբինատի պարտիական կոմիտեի քարտուղար Աշոտ Կոստանյանը, մանվածքային ու գործվածքային ֆաբրիկաների վարիչներ՝ Միշա Գյոլեցյանը, Վաղարշակ Ավագյանը, ֆաբրիկայի տեխնիկական ղեկավարներ՝ Մկրտիչ Ղարիբյանը, Մնացական Գևորգյանը, ցեխերի պետեր՝ Սաղաթել Համբարձումյանը, Արիստակես Ահարոնյանը, Ջանլաթ Թորոսյանը, կոմբինատի գլխավոր մեխանիկ Արտաշես Մկրտչյանը և շատ ուրիշներ։

Նրանք մեծ հեղինակություն են վայելում իրենց աշխատանքային ընկերների, շարքային մարդկանց մոտ։ Կուտակված մեծ փորձի և մասնագիտության մեջ բազմակողմանիորեն խորանալու շնորհիվ կարողանում են հմտորեն ղեկավարել իրենց վստահված աշխատամասը, արդարացնել պարտիայի վստահությունը։

Կադրերի պատրաստման խիկական դարբնոց են հանդիսանում գոյություն ունեցող տեխնիկական դպրոցները։ Դեռևս 1929 թվականին մեր քաղաքում



հիմնադրվեց տեքստիլ տեխնիկում, որն իր գոյության տարիներին տվել է հարյուրավոր մասնագետներ։ Շրջանավարտներն աշխատում են մեր կոմբինատում և ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում։

Կադրերի աճեցման գործում շնորհակալ աշխատանք է կատարում մասնագիտական-տեխնիկական դպրոցը, որը ստեղծվել է 1944 թվականին և մինչև հիմա տեքստիլ արդյունաբերությանը տվել է 800-ից ավելի ենթավարպետներ։ Աշակերտների հանրակրթական ուսուցումը, որը տևում է 2—3 տարի, կապվում է մասնագիտական ուսուցման հետ։

Անցած տարիների ընթացքում կոմբինատում զգալի աշխատանք է կատարվել բանվոր-ծառայողների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի բնակարանային, կենցաղային պայմանների բարելավման, կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Բարեկարգվել և ընդարձակվել է տեքստիլագործների բանվորական ավանը։ Այստեղ երկհարկանի ու եռահարկ բնակելի շենքերի թիվը 80-ից անցնում է։ Պետության օգնությամբ և իրենց խնայած միջոցների հաշվին հարյուրավոր տեքստիլագործներ կառուցել են հարմարավետ սեփական բնակարաններ։ Միայն բնակելի ֆոնդի պահպանության վրա տարեկան ծախսվում է ավելի քան մեկ միլիոն 200 հազար ռուբլի։

Բանվորական ավանում վեր են խոյացել տեխնիկումի, միջնակարգ դպրոցի, մանկապարտեզի, մանկամսուրի վարչական շենքերը, բանվորական ակումբը, առևտրի կետերը և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։ 1948 թվականից անընդմեջ գործում է գիշերային սանատորիան, ուր ամեն տարի, առանց արտադրությունից կտրվելու, հանգստանում են 300 տեքստիլագործներ։ Տեքստիլագործների կենցաղի մեջ է մտել մեկօրյա հանգստի կազմակերպումը։ Ամառը քաղաքի և ռեսպուբլիկայի տեսարժան վայրերում հաճախակի կազմակերպվում են ժամանցներ, որոնց ակտիվ կերպով մասնակցում են բանվոր ծառայողները։ Այդ նպատակով տարեկան ծախսվում է ավելի քան երկու միլիոն ռուբլի։ Ամեն տարի հարյուրավոր տեքստիլագործներ բուժվում և հանգստանում են Միության և ռեսպուբլիկայի սանատորիաներում և հանգստյան տներում։

Մշտական հոգատարություն է ցուցաբերվում նաև կոմբինատի աշխատողների երեխաների հանգստի կազմակերպման նկատմամբ։ Երեք տարի առաջ մեր երեխաները հիանալի նվեր ստացան՝ Կիրովականի Վանաձորում հիմնվեց պիոներական ճամբար։ Այստեղ երկու հերթի ընթացքում ամեն տարի հանգստանում են մոտ 400 պիոներ-դպրոցականներ։

Բոլոր ֆաբրիկաներում, օժանդակ ցեխերում կազմակերպված են առողջապահական կետեր, գործում են հիգիենայի սենյակներ, որոնք ապահովված են սպասարկող անձնակազմով։

Հետաքրքրական ու բովանդակալից է անցնում տեքստիլագործների ընտանիքների առօրյան բանվորական ակումբում։ Այնտեղ ամեն օր ցուցադրվում են կինոնկարներ, գործում են մի քանի ինքնագործունեության խմբակներ. ակումբն ունի հարուստ գրադարան, ավելի քան 20 հազար գրքով։

Ինժեներա-տեխնիկական աշխատողների, արտադրության առաջավորների մշտական այցելության վայրն է տեխնիկական գրադարանը, որը հագեցված է ժամանակակից տեխնիկական գրականությամբ։ Բանվորական ակումբին կից գործում են երգի-պարի, ժողգործիքների, փողային, թատերական, կար ու ձևի և այլ ինքնագործ խմբեր, որոնցում ընդգրկված են 300-ից ավելի

երիտասարդ աշխատողներ։ Վերջին շրջանում զգալի չափով բարելավվել են ֆիզկուլտ աշխատանքները։ Ակումբին կից գործում է ֆիզկուլտ դահլիճը, որն ունի բոլոր հարմարությունները երիտասարդների ֆիզիկական դաստիարակության համար։ «Աշխատանք» սպորտ ընկերության մեջ ընդգրկված են 800-ից ավելի ֆիզկուլտուրնիկներ, սպորտի 11 սեկցիաներ։ Կոմբինատի սպորտսմենները ռեսպուբլիկայի 2-րդ սպարտակիադայում արժանավոր տեղեր գրավեցին և մի քանի ձևերից արժանացան ՀԱՄԽ-ի տեքստիլ և թեթև արդյունաբերության բանվորների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեի գավաթներին։ Կառուցվում և շուտով օգտագործման է հանձնվելու 5000-տեղանոց ստադիոնը։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը հարազատ ու մոտ է բոլոր մարդկանց սրտերին։ Այդ հոյակապ պլանի իրագործման համար ուժ ու եռանդ չեն խնայում նաև Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի բանվոր-բանվորուհիները, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները։ Նրանք գիտեն, որ նոր պլանով պատրաստի գործվածքի արտադրանքը 1958 թվականի 57 միլիոն մետրից 1965 թվականին հասնելու է 77 միլիոն մետրի։ Այլ կերպ ասած՝ յոթնամյակում արտադրանքը, նախորդ յոթ տարիների համեմատությամբ, ավելանալու է 42 տոկոսով։

Այդ առաջադրանքի կատարումն ապահովելու համար մինչև 1965 թվականը կապիտալ ներդրումների գումարը հասնելու է 30 միլիոն ռուբլու։ Ավարտվելու են ներկման վերամշակման ֆաբրիկայի կենտրոնական կաթսայատան շինարարության, գործող սարքավորումների մոդեռնացման՝ հները նորերով փոխարինելու աշխատանքները։ Գործվածքային ֆաբրիկայում 700 հին հաստոցներ փոխարինվելու են նորերով, ավելի կատարելագործվածներով։

Անցած տարվա աշխատանքի արդյունքները վկայում են, որ մեր կոլեկտիվը տոգորված է իր առջև դրված խնդիրները հաջողությամբ կատարելու վճռականությամբ։ Հետևողական աշխատանքի շնորհիվ անցյալ տարվա համեմատությամբ այս տարի զգալի չափով ավելացել է ինչպես թողարկվող մանվածքի, այնպես էլ պատրաստի գործվածքի քանակը։

Սակայն այդ հաջողությունները մեզ հանգստացնել չեն կարող, որովհետև դեռևս զգալի թերություններ կան։ Մեր կոմբինատը դեռևս ետ է մնում Միության առաջավոր նույնանման ձեռնարկություններից, անբավարար է օգտագործվում սարքավորումների արտադրական կարողությունը։

Ավելի լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունն ի պատիվ Սովետական Հայաստանի 40-ամյակի, տեքստիլագործները ձգտում են ժամկետից շուտ կատարել ընթացիկ տարվա պլանները և աշխատանքային սխրագործություններով նշել իրենց ծաղկող ռեսպուբլիկայի վերածննդի տոնը։

---

# ՎԱՂՆ ԱՎԵԼԻ ԳԵՂԵՑԻԿ Է ԼԻՆԵԼՈՒ


**Հ. ՍԱՐԳՍՅԱՆ**

Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի դիրեկտոր


Եթե ուզում եք իմանալ, թե անցած քառասուն տարում մեր ռեսպուբլիկայում ինչպես է արագաթափ զարգացել գունավոր մետաղաձուլությունը, ինչպես են այսօր երջանիկ ապրում ու կոմունիզմի համար ակտիվ մարտնչում պղնձաշխարհի մարդիկ, մեզ մոտ՝ Ալավերդի այցի եկեք, սիրելի ընթերցող։ Ձեզ հիացմունք կպատճառեն Լոռվա խոր ձորերի նոր բնանկարը, ժամանակակից տեխնիկայով այնտեղ սարքավորված մեր հանքահորերն ու գործարանները, գեղեցիկ ու բարեկարգ բանվորական ավանները, պղնձագործների ու քիմիագործների վարդագույն քաղաքը՝ Ալավերդին։ Բայց գիտեմ, ամենից շատ դուր կգան ու ձեզ վրա անջնջելի տպավորություն կթողնեն պղնձաշխարհի պարզ ու կորովի մարդիկ, աշխատանքային սխրանքներով լի նրանց գործերը։

Այն, ինչ Դուք մեզ մոտ կտեսնեք, այդ ամենը բոլորովին նոր է, նոր են մարդիկ ու նրանց ստեղծագործ մտքի ու աշխատանքի արդյունքները։

Որպեսզի պարզ պատկերացնենք անցած քառասուն տարում մեր ձեռք բերած հոյակապ հաջողությունները և վաղվա է՛լ ավելի պայծառ օրը, հարկ կլինի հետադարձ մի հայացք նետել անցյալի վրա։

Քառասուն-հիսուն տարի առաջ ֆրանսիական կապիտալիստները գիշատիչ կերպով արդյունահանում էին մեր հայրենի երկրի բնական հարստությունները, դաժան կերպով շահագործում բանվորներին։ Ծանր ու մղձավանջային էր հանքագործների վիճակը։ Սիսի-Մադանի, Շամլուղի, Ախթալայի հանքերում ու Մանեսի պղնձաձուլարանում աշխատանքները՝ սկսած հորատումից, վերջացրած հանքի ձուլմամբ կատարվում էին ձեռքի ուժով։ Դժոխայի՜ն պայմաններ։ Հանքերում լեռնագործներն աշխատում էին ջրի, ցեխի, իսկ հաճախ խավարի մեջ, շնչահեղձ էին լինում թունավոր գազերից. աղետների պատճառով մարդիկ կենդանի-կենդանի թաղվում էին հողի տակ։ Պրիմիտիվ, փոքրիկ կարողություն ունեցող վառարաններում ձուլվում էր պղնձաքարը. բանվորները հաճախ ծանր վնասվածքներ էին ստանում հնոցի առաջ կամ թունավորվում։ Ո՛չ հանգիստ, ո՛չ արձակուրդ։ Բանվորական օրը տևում էր 12—14 ժամ, բացի այդ, ամեն մի հանքագործ պարտավոր էր շաբաթը մեկ անգամ՝ կիրակի օրն աշխատել 18 ժամ։ Իսկ բանվորի վաստակը շատ չնչին էր, միայն գռոշներ, որով չէր կարելի անգամ կուշտ փորով հաց ուտել։

Հին բանվորները պատմում են, թե ծանր ու հոգեմաշ աշխատանքը, սոցիալական ու տարափոխիկ հիվանդությունները ամեն տարի գերեզման էին

տանում մարդկային բազմաթիվ կյանքեր։ Հանքագործներն իրար գլխի թափված ապրում էին գետնափոր, մութ ու խոնավ բարաքներում, առանց ջրի ու լույսի։ Չկար դպրոց, կուլտուրական որևէ օջախ, բժշկական կետ։ Շատերն իրենց չարքաշ կյանքի միակ սփոփանքը գտնում էին գինետներում։

Բայց Ալավերդու հանքագործների ինտերնացիոնալ ջոկատը չէր կարող հաշտվել ստեղծված դրության հետ, նա բազմիցս ընդվզել, հերոսական կռիվ է մղել օտարերկրյա հարստահարողների, ցարական սատրապների դեմ։ Նա բազմաթիվ հերոսական էջեր է գրել Հայաստանի ռևոլյուցիոն շարժման տարեգրության մեջ։ 1905 թվականի հոկտեմբեր-նոյեմբեր ամիսներին բոլշևիկների ղեկավարությամբ գործադուլ են անում հանքագործները, գործադուլ, որը պսակվեց բանվորների հաղթանակով։ 1906 թվականի ամռանը բռնկվեց նոր, հզոր գործադուլ, որն անմիջականորեն ղեկավարում էին Ստեփան Շահումյանն ու Սուրեն Սպանդարյանը։ Շուրջ մեկ ամիս շարունակ 4500 մարդ՝ հայ, պարսիկ, հույն, վրացի ու ռուս բանվորներ, չնայած մեծ զրկանքին ու կարիքին, ուս -ուսի տված անձնազոհ կռիվ էին մղում տիրող կարգերի դեմ։ Առանձնապես փոթորկալից էր 1917 թվականի օգոստոսյան քաղաքական գործադուլը, որը մեծ ազդակ հանդիսացավ Լոռվա բանվորների ու աշխատավոր գյուղացիների ռևոլյուցիոն շարժման ծավալման գործում։

Վերջապես Հոկտեմբերի մեծ դրոշը ծածանվեց հայկական լեռնաշխարհի վրա, բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն հերոսական պայքարով ճառագեց ազատության արշալույսը... Հայաստանը սովետական էր։

Ծանր ժառանգություն մնաց դաշնակների տխրահռչակ տիրապետությունից։ 1918 թվականին փակվել էր Ալավերդու պղնձաձուլական գործարանը, դադարել աշխատանքը հանքահորերում, ամբողջովին քայքայվել էին պղնձարդյունաբերության ձեռնարկությունները։

Անհրաժեշտ էր այդ ամենը շտապ վերականգնել։ Իսկ դա շատ դժվարին գործ էր։ Չկային միջոցներ, մասնագետներ, ցրված էին որակյալ բանվորական կադրերը։ Հարկ եղավ շատ զրկանքներ կրել, կոմունիստների ու կոմերիտականների օրինակով բազմիցս դուրս գալ կոմունիստական շաբաթօրյակների։ Շուտով բանվորների աշխատանքով սկսեցին աստիճանաբար կյանք մտնել լքված հանքահորերը, պղնձաձուլական գործարանը, էլեկտրակայանը։

Ձեռնարկվեցին երկրաբանական-հետախուզական մեծ աշխատանքներ, հերքեցին հանքաքարի պաշարները սպառվելու վերաբերյալ եղած խոսակցությունները։ Տարեցտարի աճում էր արդյունաբերական հանույթը և պղնձի ձուլումը։ Չնայած մեծ տեղաշարժին ու խոշոր ձեռնարկումներին, այնուամենայնիվ, պղնձարդյունաբերության տեխնիկական ցածր մակարդակը հնարավորություն չէր տալիս ամբողջ թափով զարգացնել այն։

Պարտիայի ու կառավարության որոշմամբ 1932 թվականից սկսվեցին հանքարդյունաբերության վերակառուցման աշխատանքները։ Այդ նույն թվականին շարք էր մտել Ձորագէսը, որը լայն հնարավորություններ էր ընձեռում պղնձի ու քիմիայի արագ զարգացման համար։ Ալավերդու պղնձաձուլական գործարանում ընդլայնվեցին հին ցեխերը, դրանք սարքավորվեցին ժամանակակից սարքավորումներով, կառուցվեցին նոր ցեխեր։ Նախկինում եղած վատերժակետային պրիմիտիվ վառարանների փոխարեն կառուցվեց արտացոլիչ հզոր վառարան, ինչպես և նորագույն տեխնիկայով հագեցված կոնվերտորային ու անոդային բաժանմունքներ։ Վերջապես 1948 թվականին շահագործման



հանձնվեց էլեկտրոլիզի ցեխը։ Եթե առաջներում արտադրվում էր միայն սև պղինձ, ապա վերոհիշյալ ցեխի կառուցումով հնարավոր եղավ իրագործել պղնձի ձուլման լրիվ ցիկլը՝ ստանալ վայերբարային պղինձ։ Մեծ գործ կատարվեց ձուլման պրոցեսի մեքենայացման, բանվորների աշխատանքի թեթևացման ուղղությամբ։

Պղնձաձուլական գործարանի արտադրական բազայի վրա Ալավերդում կառուցվեց քիմիական մեծ գործարան, որն սկսեց թողարկել պղնձարջասպ, ծծմբաթթու, սուպերֆոսֆատ և այլ քիմիկատներ։ Հետագայում այդ գործարանները միացվեցին և ստեղծվեց պղնձաքիմիական հզոր կոմբինատ։

Քառասուն տարիների ընթացքում մեծ առաջընթաց է ապրել մեր գործարանի արտադրությունը։ Բազմաթիվ անգամ աճել է սև ու զտած պղնձի (էլեկտրոլիտային) ձուլումը, ծծմբաթթվի ու սուպերֆոսֆատի արտադրությունը։ 1913 թվականի համեմատությամբ մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունն ավելացել է 6,5 անգամ։

Սովետական իշխանության տարիներին Ալավերդու արդյունաբերությունը աճել է ռեսպուբլիկայի ընդհանուր վերելքին համընթաց։ Այսօր էլ ռեսպուբլիկայի տնտեսական կյանքում Ալավերդին գրավում է կարևոր տեղերից մեկը։ Յոթնամյա պլանի կենսագործմամբ Ալավերդին իրոք կդառնա մեր արդյունաբերական առաջավոր օջախներից մեկը։ Այն մեր Հայրենիքին կտա ավելի շատ արտադրանք, որով կնպաստի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարմանը։

Անկասկած խոշոր են հաջողությունները, բայց ավելի մեծ ու հոյակապ են կոմբինատի զարգացման հեռանկարները։ Առաջիկա յոթնամյակի տարիներին Ալավերդու պղնձաձուլական կոմբինատի համախառն արտադրանքը, 1958 թվականի համեմատությամբ աճելու է 4,1 անգամ, ընդ որում, արտադրանքի առանձին տեսակներինը ավելանալու է 1,7—6,4 անգամ։

Յոթնամյակի բնագծերը հաջողությամբ նվաճելու վճռական պայմանը հանդիսանում է տեխնիկական պրոգրեսը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։ Այն հնարավորություն կտա յոթնամյակում աշխատանքի արտադրողականությունը մեզ մոտ բարձրացնել 91,5 տոկոսով, մեծապես բարձրացնել արտադրանքի որակը և իջեցնել դրա ինքնարժեքը։ Միաժամանակ մեծ չափով կբարձրանա հանքաքարից պղնձի ու հազվագյուտ մետաղների կորզման տոկոսը, կօգտագործվեն արտադրական մնացուկները, ինչպես և պայմաններ կստեղծվեն օժանդակ ցեխերում ձեռքի աշխատանքն իսպառ վերացնելու համար։

ՍՄԿՊ XXI համագումարից հետո պղնձաքիմիական կոմբինատում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման ուղղությամբ զգալի գործ է արվում։ Նորագույն տեխնիկայի խոսքով կառուցվել են պղնձարջասպի նոր ցեխը, էլեկտրոլիզի ցեխի երկրորդ կորպուսը. Ներկայումս ավտոմատացվում է էլեկտրոլիզի ցեխը։ Արդեն ավտոմատացվել է ձուլարանի ցեխում արտացոլիչ վառարանի տեխնոլոգիական պրոցեսների մեծ մասը (բացի հումքի բարձումից)։ Աշխատանքներ են տարվում պղնձարջասպի արտադրական պրոցեսի ավտոմատացման բնագավառում։ Սովետական Միության մեջ առաջին անգամ մեր կոմբինատի կոնվերտորային բաժանմունքում ավտոմատացվել են մի շարք տեխնոլոգիական պրոցեսներ. այդ նույնը կարելի է ասել անոդային ու վայերբարային բաժանմունքների մասին։

Անցած քառասուն տարում մեր ձեռք բերածն ու կատարածը սկիզբն են
այն վիթխարի աշխատանքների, որ մենք կատարելու ենք առաջիկայում: Այս
յոթնամյակում հիմնովին կփոխվի կոմբինատի և Ալավերդի քաղաքի դեմքը:
Այլևս չեն լինի օդ ցնդող այն գազերը, որոնք բավական տհաճություն են
պատճառում բանվորներին ու քաղաքի բնակչությանը: Կոմպլեքսային կերպով
լրիվ կօգտագործվի ամբողջ հումքը: Այդ նպատակով արդեն սկսված է ծծմբա-
թթվի նոր ցեխի շինարարությունը: Այս ցեխի կառուցումով ծծմբաթթուն ներ-
կայիս աշտարակային եղանակի փոխարեն կարտադրվի ավելի առաջավոր՝
կոնտակտային եղանակով:

Կառուցվելու է էլեկտրոլիզի երրորդ խոշոր կորպուսը, որն ավելի մեծ է,
քան մինչև այդ գոյություն ունեցող երկու կորպուսները միասին վերցրած:
Ջուլարանի ցեխն ամբողջովին անցնելու է էլեկտրաձուլման, որով զգալիորեն
կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը տվյալ տեղամասում:
Միաժամանակ ներկայումս օդ ցնդող գազերը լրիվ կօգտագործվեն ծծմբա-
թթվի արտադրության համար:

Կոմբինատի կոլեկտիվը սերտ կապի մեջ է գիտության աշխատողների
հետ: Արտադրության ու գիտության մարդիկ համատեղ լուծում են ժողովրդա-
տնտեսական շատ կարևոր հարցեր: Նրանց համատեղ ջանքերով պարզվեց, որ
կոմբինատի արտադրական ցեխերից հեռացող գազերի հետ օդն է ցնդում նաև
բավականաչափ փոշի, որն իր մեջ պարունակում է ցրված ու հազվագյուտ
մետաղներ: Մոսկվայի գունավոր մետալուրգիայի գիտա-հետազոտական ինստի-
տուտի օգնությամբ ու մասնակցությամբ մշակվեցին այդ մետաղների
կորզման ու ստացման եղանակները: Այժմ նախագծեր են մշակվում փոշիների
մշակման ու օգտագործման ցեխ կառուցելու համար:
Երևանի լեռնա-երկրաբանական գիտա-հետազոտական ինստիտուտի և
կոմբինատի աշխատողների միացյալ ջանքերով լուծվեց անօդային շլամից
հազվագյուտ մետաղների կորզման եղանակը: Այժմ արդեն ավարտվում է այդ
նպատակով կառուցվող փորձնական ցեխի շինարարությունը:
Տարիներ շարունակ պղնձաձուլական ցեխի խարամը համարվել է անպետք
և թափվել Դեբեդ գետը: Վերջին տարիների ուսումնասիրությունները և գիտու-
թյան աշխատողների հետ համատեղ փորձերը ցույց տվեցին, որ այդ խարամն
ունի հիանալի հատկություններ և կարելի է օգտագործել ժողովրդական տնտե-
սության մեջ: Խարամից պատրաստված ջրատար խողովակների, փողոցների
հատակապատման սալիկների, էլեկտրական մեկուսիչների և այլ առարկա-
ների նմուշները որակով բարձր են և բավական էժան: Աշխատանքներ են տար-
վում խարամի օգտագործման մեծ ցեխ կառուցելու ուղղությամբ:
Գիտության ու արտադրության մարդկանց համագործակցությունը նպաս-
տում է նաև կոմբինատում տեխնիկական պրոգրեսի զարգացմանը: Մեզ մոտ
դեռևս չի լուծված մետալուրգիական վառարանների բարձման ու կոնվեր-
տորային հնոցներին օդ մատակարարելու աշխատանքների մեքենայացման
հարցը: Ուսումնասիրություններ են կատարվում արտադրական այդ պրոցես-
ները նույնպես մեքենայացնելու և ավտոմատացնելու ուղղությամբ: Այս խըն-
դիրների լուծումն է՛լ ավելի արդյունավետ կդարձնի ձուլողների ու քիմիա-
գործների աշխատանքը, կբարձրացնի նրանց աշխատանքի արտադրողակա-
նությունը:
Այն, ինչ կատարված է ու մտածում ենք անել, վկայում են մեր բանվոր-



ների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների ամենօրյա փութաջան, իրոք
սխրանքներով հարուստ գործերի մասին: Նրանց ստեղծագործ աշխատանքով
կոմբինատը վերցնում է բնագիծ-բնագծի ետևից, ամիս առ ամիս կրճատում
յոթնամյակում անցնելիք տարածությունը: Ծծմբաթթվի ցեխի կոլեկտիվը զե-
կուցեց, որ արտապլանային արտադրանքի թողարկման 1960 թվականի սո-
ցիալիստական պարտավորությունը կատարել է յոթ ամսում. այժմ պայքար է
գնում, որպեսզի մինչև Հայաստանի սովետականացման 40-ամյակը կոմբինա-
տը կատարի յոթնամյակի երկրորդ տարվա արտադրական ծրագիրը:

Կոմբինատում ծավալվում է կոմունիստական աշխատանքի ու հարվա-
ծայինների հայրենասիրական շարժումը, որ ընդգրկում է աշխատանքային
նորանոր տեղամասեր: Կոմունիստաբար աշխատելու և ապրելու համար պայ-
քարող արտադրական ութ բրիգադաներից ու երեք ցեխերից պատվավոր կոչ-
ման են արդեն արժանացել էլեկտրոլիզի ցեխից կոմունիստ Ռաֆիկ Մարգար-
յանի ղեկավարած բրիգադան և կոնվերտորային բաժանմունքը, որի պետն է
Կարլեն Թումանյանը:

Արտադրության կատարելագործման ու աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացման գործում նշանակալից դեր են խաղում մեր գյուտարարնե-
րը և ռացիոնալիզատորները:

Ալավերդու ձուլողների ու քիմիագործների աշխատանքային հաջողու-
թյունների գործում մեծ ազդակ է հանդիսանում եղբայրական Վրաստանի Զես-
տաֆոնի քաղաքի ֆերրոձուլվածքների գործարանի կոլեկտիվի հետ մեր տրա-
դիցիոն սոցիալիստական մրցությունը:

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման անցած քառա-
սուն տարիներին ձեռք բերած մեր հոյակապ հաջողությունների մեջ ամենամե-
ծը՝ դա մեր կադրերն են: Մեզ մոտ, կոմբինատում աճել են բարձրորակ բան-
վորական կադրեր, շնորհալի ինժեներներ և տեխնիկներ: Բանվորների մեծ մա-
սը ձեռներեց և տեխնիկապես գրագետ մարդիկ են. Ներկայումս տիրապետողը
միջնակարգ կրթություն ունեցող բանվորական երիտասարդ կադրերն են, որոնք
առաջ են մղում արտադրությունը, քամում առաջավոր տեխնիկայով հագեց-
ված սարքավորումների կարողությունը:

Մեծ ձգտում կա դեպի ուսումը, տեխնիկական գիտելիքները. կոմբինատին
կից բստ հերթափոխությունների գործում է բանվոր երիտասարդության դըպ-
րոցը, որ միջնակարգ կրթություն են ստանում արտադրության մեջ աշխատող
84 երիտասարդ. կոլեկտիվի անդամներից 16 հոգի հեռակա կերպով սովորում
են տեխնիկումներում, իսկ 25-ը՝ բարձրագույն ուսումնական հաստատություն-
ներում: Ռացիոնալիզատորների դպրոցում սովորում են 32 մարդ, ինչպես և
հարյուրավոր բանվորներ ու ինժեներա-տեխնիկական աշխատողներ իրենց
որակավորումը բարձրացնում են կազմակերպված դասընթացներում ու տեխ-
նիկական խմբակներում:

Արժե նշել մի հրաշալի տրադիցիայի մասին: Մեր կադրային բանվորների
շատ զավակներ շարունակում են իրենց հայրերի մասնագիտությունը՝ պղինձ
են ձուլում, նրանք արտադրություն են գալիս գիտելիքներով զինված, նորի,
առաջադիմության ձգտումով: Ուշագրավն այն է, որ նրանցից շատերն աշխա-
տելով իրենց հայրերի հետ կողք-կողքի, ձգտում են խելացիորեն օգտագործել
նրանց արտադրական փորձը, բարձր պահել բանվորի արժանապատվությունը:

Մեր կոմբինատի արտացոլիչ վառարանի ավագ վարպետ տեխնիկ Հարու-

թյուն Սովյանը ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ է, իսկ կոնվերտորային բաժանմունքի հերթափոխության պետ Հայկ Սոխակյանը՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ. մեր բանվորներից ու ինժեներա-տեխնիկական աշխատողներից 9-ը շրջանային Սովետի, իսկ 12-ը Ալավերդու քաղսովետի դեպուտատներ են։ Երկարամյա անբասիր աշխատանքի համար կոմբինատի աշխատողներից 81-ը պարգևատրված են Լենինի, 95-ը՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշաններով և 217-ը՝ մեդալներով։

Սովետական իշխանությունը պղնձագործների համար ստեղծել է բարեկեցիկ ու կուլտուրական կյանք։ Ներկայումս միջին հաշվով ամեն մի ձուլող բանվոր ամսական ստանում է 1500—2000 ռուբլի, չհաշված պարգև-հավելումները։ Միայն անցյալ տարի սանատորիա և հանգստյան տներ են գնացել 184 մարդ, իսկ կոլեկտիվի անդամների 250 երեխաներ հանգստացել են պիոներական ճամբարներում։ Արդեն 5—6 տարի է գոյություն ունի կոմբինատի պրոֆիլակտորիումը, ուր աշխատանքից դուրս ամեն տարի կազդուրվում և ուժեղ սնունդ են ստանում 300 բանվորներ։

Մեր կոլեկտիվի տրամադրության տակ է կուլտուրայի գեղեցիկ պալատը. կոմբինատում, չհաշված քաղաքում եղածները, գործում են երեք մանկապարտեզ, բժշկական երկու կետ, թաղամասում թոշակառու բանվորների համար բացված է երկու կարմիր անկյուն։ Ամեն մի ցեխ ունի իր բաղնիքը, լվացքատունը, կարմիր անկյունը, կառուցված է սպորտային մեծ ստադիոն։

Անցած տարիներին կոլեկտիվի անդամների համար պետական միջոցներով կառուցվել են բնակելի տներ՝ 37 հազար քառակուսի մետր տարածությամբ, ըստ որում միայն վերջին 2—3 տարում շահագործման է հանձնվել բնակելի 6 շենք՝ 300 բնակարաններով։ Բացի այդ, շատ աշխատողներ իրենց միջոցներով կառուցվել են սեփական գեղեցիկ ու հարմարավետ բնակարաններ։ Քաղաքում եղած միջնակարգ ու երաժշտական դպրոցները, կուլտուրական և առողջապահական օբյեկտները, առևտրական ձեռնարկությունները սպասարկում են նաև մեր կոմբինատի աշխատողներին ու նրանց ընտանիքներին։

Սիրելի ընթերցող։ Դուք շրջել եք մեր սոցիալիստական նոր՝ Ալավերդի քաղաքի թաղամասերով, հիացել նրա գեղեցիկ բնակելի, հասարակական, կուլտուրական շենքերով։ Դա պղնձագործների ու քիմիագործների քաղաքն է, ուր ամեն ինչ տրամադրված է նրանց բարեկեցիկ ու կուլտուրական կյանքի համար։ Բայց ավելի գեղեցիկ, ավելի շքեղ կլինի մեր բանվորական քաղաքը առաջիկա տարիներին։ Յոթնամյակի ընթացքում կոմբինատը կատարելու է 61 միլիոն ռուբլու բնակարանային ու կոմունալ-կենցաղային շինարարություն այսինքն՝ այնքան, որքան կառուցված է քաղաքում։ Օդային ճոպանուղին քաղաքը կկապի Սանահինի սարահարթի հետ, Ուզունլարում կառուցվելու են պիոներական ճամբարի համար նոր շենքեր. կոմբինատը կունենա իր պոլիկլինիկայի հարմարավետ շենքը, իր կաթնախոհանոցը և այլն։

Գեղեցիկ ու հարուստ է մեր կյանքը, էլ ավելի շողշողուն կլինի պղնձագործների վաղվա օրը։ Այստեղ տեղին է ասել՝ իզուր չի անցել Սովետական իշխանության հաղթանակի համար մեր հայրերի թափած առատ արյունը։

---

# ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ԲԱՆԲԵՐՆԵՐԸ

## Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

Մի քանի ամիս առաջ էր։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի նիստերի ընդարձակ դահլիճն էին հավաքվել գործարանների ու ֆաբրիկաների, հանքահորերի ու կառույցների, տրանսպորտի ու համայնական բերքառատ դաշտերի լավագույն մարդիկ, մեր ժողովրդի խիզախ որդիներն ու դուստրերը։ Տեղի էր ունենում կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների կոչման մրցության առաջավորների ռեսպուբլիկական հավաքը։

Ահա նրանք՝ յոթնամյակի առաջամարտիկները, ապագայի հետախույզները, որոնց մոտ կոմունիզմը դարձել է առօրյայի գործ, կենդանի ստեղծագործություն։ Աշխատել ու ապրել կոմունիստաբար — այդ է նրանց պայքարի նշանաբանը, որն այնքան լիահնչուն է մեր ապրած հերոսական օրերին։ Այդ նրանք են, որ աշխատանքային իրենց սխրանքներով, իրենց անսպառ էներգիայով ու մտքի խոյանքներով կարճում են ժամանակը, ճանապարհ հարթում դեպի մարդկության լուսաշող ապագան՝ կոմունիզմը։

Նայում եմ խանդավառ դահլիճին, ունկնդրում կորովի ու մտքով հասուն այն մարդկանց վստահ ու խելամիտ ելույթները, որոնք գործարար կերպով քննարկում են իրենց կյանքի ու աշխատանքի այսօրվա հարցերը, խոսում իրենց պլանների ու ստեղծագործական մտահղացումների մասին։ Լսում եմ նրանց ու ինձ համար այնքան շոշափելի, այնքան պարզորոշ են դառնում մեծ Լենինի հանճարի լույսով ճառագած իմ գեղածիծաղ հայկական լեռնաշխարհի հոյակապ նվաճումներն անցած քառասուն տարում, նրա գեղեցիկ, երջանկաշող վաղը։

Ի՜նչ հրաշալի մարդիկ են աճել մեր օրերում, ինչպիսի՜ հայրենասեր, ջերմ սրտեր են բաբախում նրանց կրծքի տակ։ Մտածում եմ, որքա՜ն կուրախանար Իլյիչը, եթե ներկա լիներ այս հավաքին, տեսներ ու լսեր նոր կյանք, նոր կենցաղ կառուցողներին։ Նա, անշուշտ, այստեղ է, մեզ մոտ, լենինյան ոգին թևածում է այս դահլիճում, ապրում ու հաղթանակում մեր ժամանակակիցների հերոսական գործերում։ Եվ որպես երդում դահլիճով մեկ հանդիսավոր հնչում են Լենինի ոգեշունչ, մարգարեական խոսքերը՝ մենք կհասնենք կոմունիստական աշխատանքի հաղթանակին։

Դա կոմունիզմի փառավոր հիմնն է, միլիոնների հաղթական դրոշը։

***

Հավաքն ավարտվեց, նրա մասնակիցները վերադարձան իրենց տները, իրենց առօրյա բեղմնավոր գործին։ Բայց ուզում եմ մոտիկից՝ իրենց աշխա-

տանքի վայրում տեսնել այդ մարդկանց, ծանոթանալ կոմունիզմի բանբերների կյանքին ու կենցաղին։

Ահա Ալավերդում եմ, պղնձաքիմիական կոմբինատի կոմունիստական աշխատանքի այն բրիգադայում, որի ղեկավարն է Ռաֆիկ Մարգարյանը։ Առաջին այց, առաջին հարուստ տպավորություններ։

Աշխատանքային ընդմիջման ժամ է։ Պղնձի ռաֆինացման ցեխի կարմիր անկյունում բրիգադան գտա իր լրիվ կազմով. դրանք քսաներկու էնտուզիաստ տղաներ ու աղջիկներ են, մի համերաշխ կոլեկտիվ, ուր հայերի հետ ուս-ուսի տված մաքառում են նաև ռուսը, ադրբեջանցին և հույնը։ Բրիգադավարն ընթերցում էր Մոսկվայից ստացված մի նամակ. իրենց մրցակիցներին են գրում մայրաքաղաքի պղնձաձուլական-էլեկտրոլիտային գործարանից Նիկոլայ Լոբաչևի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները։ Նամակում նրանք պատմում էին իրենց աշխատանքի և ապրելակերպի, հաջողությունների ու դժվարությունների մասին, եղբայրաբար հարցնում նրանց կարծիքը՝ ինչպե՞ս ավելի լավ կազմակերպել աշխատանքը բրիգադայում. ինչպե՞ս են ապրում ու աշխատում արևաշող Հայաստանի իրենց բարեկամները։

Իսկ պատասխան նամակում մրցակիցներին շատ բան կա հաղորդելու։ Մյուս հերթափոխությունների համեմատությամբ նրանք կարողացել են 15—20 տոկոսով կրճատել էլեկտրոլիզային վաննաների պարապուրդի ժամանակը. զգալիորեն տնտեսում են հումքը, էլեկտրաէներգիան. պայքարում են տարեկան առաջադրանքը ժամկետից շուտ, Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 40-ամյակին կատարելու համար։ Այդ նամակում նրանք կգրեն, որ քաջարի աշխատանքի համար իրենց բրիգադայից Սիրուշ Մուրադյանը պարգևատրվել է Լենինի շքանշանով...

Հերթափոխից հետո, երեկոյան, կրկին հանդիպում եմ բրիգադայի մի խումբ անդամների, զրուցում նրանց հետ։

— Արդեն մի տարի է, որ էլեկտրոլիզնիկների մեր բրիգադան նվաճել է կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչումը,— պատմում է բրիգադավարը։— Մենք երդվեցինք այն ժամանակ բարձր պահել այդ կոչումը, արժանի լինել այդ կոչման։ Եվ աշխատում ենք չդրժել մեր խոստումը։ Համատեղ աշխատանքն էլ ավելի համախմբեց մեր կոլեկտիվը, բարձրացրեց նրա հեղինակությունը։ Մեզ մոտ աշխատելու ցանկություն հայտնեցին յոթ մարդ, այդ թվում բանակից զորացրված երեք երիտասարդ, միջնակարգ դպրոցի մի շրջանավարտ. ընդունեցինք։ Բրիգադա եկավ նաև կալանքից ազատված Արարատ Պողոսյանը, որ գողության համար դատապարտվել էր. «Ես ուզում եմ աշխատել ձեր բրիգադայում, ասաց նա, հավատացեք ինձ ու փորձեցեք. անցյալի վրա խաչ եմ քաշել և ուզում եմ բոլորովին նոր կյանքով ապրել, այն կյանքով, ինչով դուք եք ապրում»։ Տղաները հավատացին նրա անկեղծ խոսքին, օգնեցին Արարատին՝ սկսելու այդ նոր կյանքը։ Եվ նրանք չհուսախաբվեցին իրենց սպասումների մեջ. բրիգադայի նոր անդամը ձգտում է ետ չմնալ աշխատանքային իր ընկերներից, տիրապետել գործին. ազատ ժամերին նա հաճախում է գրադարան, ցանկություն ունի շարունակելու կիսատ թողած կրթությունը։ Բայց դրանք առաջին քայլերն են միայն...

Զրույցի ընթացքում պարզվեց, թե ինչպես այդ ջահելները ջանում են իրենց մեջ մշակել ապագա հասարակության մարդու լավագույն առաքինությունները, արմատավորել կոլեկտիվիզմը, կոմունիստական կենցաղը։



Բրիգադայի անդամներից Հրաչիկ Բոզոյանի տան կառուցումը դանդաղ էր ընթանում։ Բրիգադայի անդամները որոշեցին օգնել իրենց ընկերոջը. նրանց խնդրանքով կոմբինատի ղեկավարությունը շենքի համար առանձնացրեց շինանյութեր. գործից դուրս, իրենց ազատ ժամերին նրանք հերթով սկսեցին աշխատել շենքի կառուցման վրա, ինչպես կաշխատեին իրենց սեփական տան վրա։ Նորակառույցն ավարտվեց։ Դա իսկական ընկերություն էր, որը ցեմենտվեց մի քարով ևս։

Բայց երբ այդ նույն Հրաչիկը խանգարեց աշխատանքային կարգապահությունը, ընկերները չքաշվեցին ժողովում նրա երեսին ասել դառն ճշմարտությունը, այն, որ չի կարելի խախտել կամովին ստանձնած կոմունիստական պարտավորությունը, խաղալ կոլեկտիվի պատվի հետ։ Այդպես անաչառ, ուշադիր ու հոգատար են կոլեկտիվի անդամները իրար նկատմամբ, ձգտելով փոխադարձաբար միշտ օգնել իրար աշխատանքում և անձնական կյանքում։ Երբ Սիրուշը հիվանդացավ, օգնության ձեռք մեկնեցին նրա ընկերները, իսկ երբ Զաքարյանների ընտանիքում երեխա ծնվեց, ապա ծնողների հետ ուրախությունը հավասարապես բաժանեցին բրիգադայի բոլոր անդամները։

Աշխատատեղում հանդիպեցինք Բորիս Գրուցինին։ Հայրն անցել է կենսաթոշակի, իսկ տղան նույն ցեխում շարունակում է հոր գործը։ Բորիսը լավ ընկեր է, նորարար, սպորտսմեն — այդպես են արտահայտվում նրա մասին ընկերները։ Նրա առաջարկությամբ էլեկտրոլիզի վաննաներում դրվեցին որոշ հարմարանքներ, որոնց շնորհիվ զգալիորեն տնտեսվեց էլեկտրաէներգիան։

Բրիգադայի համարյա բոլոր անդամները նորարարներ են. նրանցից ամեն մեկն արել է 2—3 ռացիոնալիզատորական առաջարկություն, իսկ բրիգադայի ղեկավարը՝ յոթ։ Սարգիս Նասիբյանի առաջարկությունը թույլ տվեց մեքենայացնել կաթոդների հարաշերտերի տեղադրումը, իսկ Գուրգեն Հակոբյանի առաջարկության արմատավորումով շլամի մեջ նկատելիորեն կանխվում է ոսկու կորուստը։ Անցյալ տարի բրիգադայի անդամների կողմից առաջարկված նորարարական առաջարկությունների արմատավորումից ստացված տնտեսական օգուտը կազմել է 63 հազար ռուբլի, իսկ այս տարի այն ավելի մեծ կլինի։

Կոլեկտիվի անդամներից շատերն արդեն տիրապետել են երկու-երեք, անգամ չորս մասնագիտության։ Ոմանք սովորում են բանվոր երիտասարդության, ոմանք էլ՝ կոմբինատին կից նորարարների դպրոցներում։ Բրիգադայի անդամներն ընդգրկված են քաղխմբակներում, հասարակական կարգը պահպանող դրուժինայի մեջ, շատերը մասնակցում են սպորտային խմբակներին, կատարում են հասարակական ակտիվ աշխատանք։ Արժանի է ուշադրության երիտասարդների մի նախաձեռնությունը ևս՝ նրանք շրջկենտրոնի Մ. Նալբանդյանի անվան միջնակարգ դպրոցի բարձր դասարանների տասը աշակերտներին անվճար սովորեցնում են էլեկտրոլիզնիկի մասնագիտությունը։

Ու այսպես, ամենօրյա համատեղ աշխատանքում ձևավորվում, կոփվում է նոր, կրթված ու բարձր գիտակցության տեր մարդը։

* * *

Ահա և ռեսպուբլիկայի սոցիալիստական նոր քաղաքներից մեկը՝ Կիրովականը։ Արդյունաբերական ձեռնարկություններում լայն ծավալ է ստանում մրցությունը կոմունիստական աշխատանքի համար, ընդգրկելով նորանոր

մարդիկ. այս քաղաքում է ծնունդ առել ու տարածվում է կոմունիստական կենցաղավարության համար ծավալվող հայրենասիրական շարժումը։

Քիմիական կոմբինատի № 1 ցեխում ենք, այն կոլեկտիվում, որն իրավունք է նվաճել կոչվելու կոմունիստական։ Երբ ծանոթանում եք ցեխի արտադրական գործունեությանը, խոսում մարդկանց հետ, ապա տեսնում եք, թե ինչպես այստեղ ծնունդ է առել ու անհաղթելիորեն զարգանում է մարդու գիտակցական կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, թե ինչպես ստեղծվում են նոր փոխհարաբերություններ կոլեկտիվի անդամների միջև, լարված պայքար է գնում նոր կենցաղի, կոմունիստական բարոյականության համար։

Զրուցում ենք ցեխի տեխնիկական ղեկավար, ինժեներ Եվգենյա Բասարգինայի հետ։ Պետք էր տեսնել, թե այդ հեզահամբույր կինը ինչպիսի ոգևորությամբ ու հմայքով է պատմում կոլեկտիվի ջանասեր ու համերաշխ աշխատանքի, նրա ստեղծագործական պրպտումների ու որոնումների մասին։

— Երկրորդ տարին է,— ասում է ընկ. Բասարգինան,— որ մեր կոլեկտիվն իր ձեռքում է պահում կոմբինատի միջցեխային փոխանցիկ դրոշը. մյուս կոլեկտիվները փորձել են այն վերցնել մեր ձեռքից, բայց ապարդյուն։ Մենք ոչ միայն մշտապես գերակատարում ենք արտադրական պլանը, այլև անընդհատ բարելավում տեխնիկական-տնտեսական ցուցանիշները։ Այսպես. եթե 1958 թվականին ցեխը տվել էր 31 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի գերածախս, ապա 1959 թվականին տնտեսվել է 21 հազար, իսկ ընթացիկ տարվա 8 ամսում՝ 600 հազար կիլովատ-ժամ։ Գերակատարվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման ու արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները։ Այդ ամենը արդյունք է այն բանի, որ կոլեկտիվի անդամները մեծ ուշադրություն են հատկացնում տեխնոլոգիական ռեժիմի ճիշտ պահպանմանն ու բարելավմանը, բարձր որակով են կատարվում սարքավորումների կապիտալ վերանորոգումները։ Ներկայումս ամիակի սինթեզի կալոններն աշխատում են ավտոմատ կերպով, ապարատների վազքը կրկնապատկվել է։

Կոմունիզմի բանբերները ո՛չ միայն արտադրության առաջավորներ են, նորարարական բազմաթիվ ու արժեքավոր առաջարկությունների հեղինակներ, այլև սովորում են, հարստացնում իրենց հանրակրթական ու տեխնիկական գիտելիքները։ Ներկայումս կոլեկտիվի մեկ երրորդը սովորում է միջնակարգ դպրոցներում, ինստիտուտներում ու տեխնիկումներում։ Շատերն իրենց մասնագիտական որակը բարձրացնում են տեխնիկական խմբակներում ու դասընթացներում։ Նախկին բանվոր, այժմ հերթափոխության պետ Ս. Անտոնյանը Պոլիտեխնիկ ինստիտուտի II կուրսի ուսանող է, իսկ Վ. Մկրտումյանը հաճախում է ինստիտուտի նախապատրաստական դասընթացները։

Ցեխի պարտիական բյուրոյի քարտուղարը պատմում է, թե կոմունիստներն ինչ միջոցառումներ են ձեռնարկում աշխատողների քաղաքական ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու, հասարակական աշխատանքներին նրանց ակտիվորեն ներգրավելու, կոլեկտիվի ու նրանց ընտանիքի անդամների հանգիստը կոլեկտիվ կերպով կազմակերպելու ուղղությամբ։ Ցեխի կոլեկտիվը վերցրել է քաղաքի № 4 դպրոցի շեֆությունը, օգնում է աշակերտների արտադրական ուսուցման գործի հաջող կազմակերպմանը, պատրաստում դպրոցին անհրաժեշտ սարքավորումները։

— Կոմունիստական համատեղ աշխատանքը,— ասում է նա,— բարձրաց-



րել է յուրաքանչյուրի պատասխանատվությունը ամբողջ կոլեկտիվի ու նրա ամեն մի անդամի գործունեության նկատմամբ։ Օրինակ, ապարատավար Վ. Գրիգորյանը խախտել էր աշխատանքային կարգապահությունը. կարելի էր նրան վարչական տույժ տալ, պատժել, բայց կոլեկտիվն այդ ճանապարհով չգնաց. նա հետևողականորեն զբաղվեց վերջինիս դաստիարակությամբ։ Կոլեկտիվը միջամտեց երիտասարդ փականագործ Մ. Սուքիասյանի ընտանեկան գործին և կարգավորեց այն։

Այստեղ, Կիրովականում հանդիպեցինք նաև տրիկոտաժի ֆաբրիկայի մետաքսագործ բանվորուհի Հեղինե Ծգնավորյանին, որն այժմ իր բազմաթիվ հետևորդներն ունի ոչ միայն այս քաղաքում, այլև ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում։

Անուրախ են անցել այս աղջկա մանկությունն ու պատանեկությունը։ Մեծ եղեռնի օրերին ազատվելով թուրքական ենիչերիների յաթաղանից, կրելով անլուր զրկանքներ ու տառապանքներ, Ծգնավորյանների ընտանիքը, վերջապես, ապաստանեց ֆրանսիական Մարսել քաղաքում։ Ծանր էր պանդուխտի վիճակը օտարության մեջ՝ զրկված տուն ու տեղից, քաղաքացիական իրավունքներից, Հեղինեի հայրն իր բազուկի ուժով կարողանում էր մի կերպ օրվա հացը հայթայթել, իսկ ընտանիքի անդամների թիվը օր-օրի պակասում էր։

1947 թվական։ Շատերի հետ օտար ափերից Հայրենիք՝ Սովետական Հայաստան վերադարձավ Ծգնավորյանների ընտանիքը. ավելի ճիշտ ամբողջ ընտանիքից ողջ մնացած հայրն ու տասնհինգամյա աղջիկը։ Բնակություն հաստատեցին անտառային այս գեղատեսիլ քաղաքում, սեփական տուն կառուցեցին՝ պետության տրամադրած վարկով. հայրը աշխատանքի մտավ, իսկ աղջիկը գնաց դպրոց։

Բայց վշտից ու տառապանքից վաղաժամ ծերացած հայրն այլևս չէր կարող աշխատել. նա անցավ կենսաթոշակի։ Աղջիկը՝ Հեղինեն, գործի մտավ տրիկոտաժի ֆաբրիկայում. կոլեկտիվի օգնությամբ երիտասարդ աղջիկը սովորեց մետաքսագործի մասնագիտությունը, տիրապետեց գործող դազգահների տեխնիկային։

Անցան տարիներ։ Հեղինեն դարձավ իր գործի հմուտ վարպետը. ջանասեր ու եռանդուն այդ աղջկա մասին սկսեցին խոսել մեծ գովեստով։

...ՀԿՊ Կիրովականի քաղկոմի բյուրոյի ընդլայնած նիստն է. մասնակցում են նաև քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ակտիվը, շատ նորարարներ։ Այստեղ է և անպարտիական բանվորուհի Հեղինե Ծգնավորյանը։

Բյուրոյի նիստում Հեղինեն զեկուցում է իր աշխատանքի փորձի մասին, հանգամանորեն պատմում, թե ինչպես է կարողացել կրճատել արտադրական օպերացիաների նախատեսած տևողությունը և դրա հաշվին հերթափոխության ընթացքում տնտեսել 26—28 վայրկյան։

— Մեծ բան չէ իմ արածը,— ասում է նա,— աշխատում եմ որքան հնարավոր է լիարժեք դարձնել աշխատանքային վայրկյանները, այն օգտագործել բարձր արտադրողականությամբ։ Ինչ ես եմ անում, կարող են անել և աշխատանքային իմ բոլոր ընկերուհիները։

Զեկուցման շուրջը ելույթ ունեցան շատերը, գովաբանելով նրա արժեքավոր նախաձեռնությունը։ Պատկերացրեք, ասում էին նրանք, եթե տրիկոտաժի ֆաբրիկայում բոլորն աշխատեն Հեղինեի օրինակով, ապա միայն աշխատան-

քային վայրկյանների տնտեսման հաշվին ֆաբրիկան տարեկան լրացուցիչ կերպով կթողարկի մեկ միլիոն 240 հազար ռուբլու արտադրանք։

Քաղկոմի բյուրոն պաշտպանեց Հեղինե Ծգնավորյանի նախաձեռնությունը, առաջարկելով քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ լայնորեն տարածել ու արտադրության մեջ արմատավորել «լիարժեք վայրկյանի համար» նրա աշխատանքի փորձը։

Այսպես ծնունդ առավ ու տարածվեց մեր օրերի մի հիանալի նախաձեռնություն ևս։ Խնայողաբար օգտագործել մեր մեծ ժամանակի վայրկյանները, նշանակում է ավելի արագ կառուցել կոմունիզմը. այսպես են խորհում ու գործում այդ նոր հայրենասիրական նախաձեռնության հետևորդները։

***

1960 թվականի մայիսի 19-ին, Երևանի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվն առաջինը որոշեց ամբողջ կազմով ապրել ու աշխատել կոմունիստաբար։ Պայքար ծավալվեց կոմունիստական աշխատանքի ձեռնարկության կոչման համար։

Յոթնամյակի հենց սկզբից բարձր տեմպ վերցրին կիրովցիները։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, նորագույն տեխնոլոգիայի արմատավորման հիմքի վրա նրանք պայքար ծավալեցին աշխատանքի բարձր արտադրողականության հասնելու և յոթնամյակը վեց տարում կատարելու համար։ Ծավալվեց գործարար մրցություն. կոմունիստական հերթափոխի կանգնեցին բազմաթիվ բրիգադներ, տեղամասեր և № 1—5—6 ցեխի կոլեկտիվը։ Արտադրության մեջ արմատավորվեցին գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, ձեռնարկվեցին միջոցներ քլորոպրենային կաուչուկի ու լատեքսների նոր տեսակների ներդրման ուղղությամբ։

Աշխատանքի արդյունքներն ակնբախ են։ Կիրովցիները ամիս-ամիս հաջողությամբ նվաճում են յոթնամյակի բնագծերը, մշտապես գերակատարում պետական առաջադրանքները։ Այդ հսկա գործարանում այժմ չկա մի ցեխ, բրիգադա կամ բանվոր, որ չկատարի արտադրական ծրագիրը։ Պլանի կատարումն այստեղ դարձել է ոչ միայն օրենք, այլ պատվի ու փառքի գործ։ Հումքի ու էլեկտրաէներգիայի տնտեսում, արտադրանքի ինքնարժեքի իջեցում, բարձրորակ արտադրանք — ահա թե ինչն է բնութագրում այս փառապանծ կոլեկտիվին։ Սխրագործ աշխատանքով գործարանը եռամսյակից եռամսյակ շահում է առաջնությունը, նվաճում ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշը։

Անցնում ենք ցեխերով։ Ահա այն տեղամասը, ուր աշխատում է կոմունիստական աշխատանքի բարձր կոչման արժանացած ապարատավարների փառապանծ բրիգադան։ Ահա և նրա ղեկավարը՝ Սերյոժա Ամիրխանյանը. նա մասնակցել է Կրեմլում կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների կոչման մրցության առաջավորների համամիութենական խորհրդակցությանը, արժանացել ամենաբարձր պատվին՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։

— Ղափանի պղնձահանքային կոմբինատի № 5—6 հանքի հորատողների կոմունիստական աշխատանքի բրիգադայի ղեկավար Աշոտ Մելքոնյանի հետ



միասին եղանք Կրեմլում,— ասում է Ս. Ամիրխանյանը,— երկուսս էլ կառավարությունն արժանացրեց բարձր պատվի՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման։ Վերադառնալիս նա իր ղեկավարած բրիգադայի անունից հրապարակորեն մրցության հրավիրեց մեզ։ Մենք ոչ միայն ընդունեցինք այդ մրցահրավերը, այլև պայքարում ենք հաղթող դուրս գալու այդ մրցությունից։

Կարբիդի ցեխում հանդիպեցինք անվանի վարպետ Պատվական Ռուշանյանին, որը հետևելով Վալենտինա Գագանովայի հայրենասիրական օրինակին, ստանձնեց ցեխի ետ մնացող բրիգադներից մեկի ղեկավարությունը և կարճ ժամկետում այն հասցրեց առաջավորների մակարդակին։

№ 1—5—6 ցեխն անցյալ տարի պայքար սկսելով կոմունիստական աշխատանքի կոչման համար, պատվով կատարեց իր ստանձնած պարտավորությունները։ Յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքը նա կատարեց ժամկետից 25 օր շուտ, տնտեսելով 52 տոննա հիմնական հումք, պլանով նախատեսվածի դիմաց երկու տոկոսով իջեցրեց արտադրանքի ինքնարժեքը. թողարկվեց բացառապես գերազանց որակի արտադրանք։ Ցեխի կոլեկտիվն արժանացավ կոմունիստական աշխատանքի կոչման։ Ամրապնդելով ձեռք բերածը, նոր բնագծեր է նվաճում նա յոթնամյակի երկրորդ տարում։

Կոմունիստական աշխատանքի պրոցեսում փոխվում են և հենց իրենք՝ կոլեկտիվի անդամները, փոխվում են նրանց հոգեբանությունը, սովորույթները, ուժեղանում է կոլեկտիվ աշխատանքով ու կյանքով ապրելու ձգտումը։

Կիրովի անվան գործարանում մեծ թափ է առել գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժումը՝ օրավուր ընդգրկելով ավելի ու ավելի շատ բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Եթե 1958 թվականին նորարարական առաջարկությունների արմատավորումից ստացված տնտեսական օգուտը կազմել է 5,4 միլիոն ռուբլի, ապա անցյալ տարի այն հասավ 7,2 միլիոն ռուբլու։

Կուլտուրայի համալսարանում, Նորարարների ինստիտուտում, առաջավոր փորձի դպրոցում ու տեխնիկական դասընթացներում ընդգրկված է գործարանի կոլեկտիվի մեծ մասը։ Համատեղելով աշխատանքը և ուսումը, ավելի քան երեք հարյուր մարդ ուսանում են միջնակարգ հանրակրթական դպրոցներում, բարձրագույն ու միջնակարգ տեխնիկական ուսումնական հաստատություններում։

***

Կաբելի գործարանում մեծ գովեստով են խոսում Հայկ Այվազյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի տղաների ու նրանց գործերի մասին։ Այդ երիտասարդները ձգտում են միշտ առաջինը լինել աշխատանքում, ուսման մեջ, իրենց վարքագծով օրինակ ծառայել մյուսներին։

Բրիգադան, որ կազմված է չորս հոգուց, կատարում է ութ մարդու գործ։ Առաջներում էմալապատման չորս ագրեգատի վրա մեկ հերթափոխում աշխատում էին ութ բանվոր, իսկ այժմ այդ նույն գործը կատարում է բրիգադան։ Եվ ուրախալին այն է, որ այդ բոլորից հետո էլ բրիգադան միշտ գերակատարում է օրվա առաջադրանքը, տնտեսում պղնձալարն ու լաքը։

Տղաներից Ալբերտը ինստիտուտի երրորդ կուրսի ուսանող է, Հրաչիկը սովորում է բանվորի դպրոցում, Վարդգեսը ձեռք է բերել միջնակարգ կրթություն, իսկ բրիգադավարը՝ Հայկը, պատրաստվում է Պոլիտեխնիկ ինստիտու-

տում սովորելու։ Բոլորն էլ ընդգրկված են քաղխմբակներում։ Հաճախ կարելի է նրանց տեսնել միասին փողոցում՝ հասարակական կարգը պահպանելիս, կամ կուլտուրայի օջախներում։

Ամառային մի կիրակի օր բրիգադայի անդամներին գտանք Հրազդանի ձորում, նրանց հետ էին էմալապատման ցեխից այն հերթափոխության տղաներն ու աղջիկները, որոնք պայքարում են կոմունիստական աշխատանքի հերթափոխի կոչման համար։ Հորդում էր ուրախությունը, թնդում երգն ու նվագը, սրտաբուխ ծիծաղը։

Նշում էին բրիգադայի ամենակրտսեր անդամի՝ Հրաչիկ Աթոյանի ծննդյան քսանամյակը։ Ամեն մեկն իր պարտքն էր համարում ջերմ խոսք ասել կասկարմիր կտրած հոբելյարին, հյուրասիրել նրան համեղ պատառով։ Հապա նվերնե՜րը...

Հրաչիկը երջանկությունից հուզված, դժվարանում էր խոսել։ Նրա աչքերը, որոնք շուտ-շուտ թրջվում էին հուզմունքից, երախտագիտությամբ էին նայում խնջույքի մասնակիցներին։ Այդ աչքերը մատնում էին նրա խռովահույզ հոգին ու կարծես ասելիս լինեին՝ ես երջանիկ եմ, որ նման ազնիվ ու սրտակից ընկերներ ունեմ։

— Ապրեն մեր տղաները,— ասաց հերթափոխի պետ Ռազմիկ Հովհաննիսյանը,— նրանք կարողացան Հրաչիկին դարձի բերել։ Երիտասարդը, որ նոր էր աշխատանքի ընդունվել, իրեն վատ էր պահում՝ թուղթ էր խաղում, անկարգություն անում, աշխատավարձը տուն չէր տանում։ Մեր տղաները կարողացան ազդել Հրաչիկի վրա, համոզել և աստիճանաբար կանգնեցնել ուղիղ ճանապարհի վրա։ Դա դժվար գործ էր՝ հարկ եղավ նրա կամակորությունը ջարդել, երբեմն խրախուսել, օրվա մեծ մասն անցկացնել նրա հետ։ Հիմա մեր Հրաչիկը կոմերիտական է, ամեն կերպ ձգտում է աշխատանքում ետ չմնալ իր համերաշխ կոլեկտիվից. նա սովորում է երեկոյան դպրոցում, շարունակում է լրացնել կիսատ թողած կրթությունը։ Այդ ամենն ի սրտե ուրախություն պատճառեց մեր կոլեկտիվին։

Այո՛, նոր մարդու ծնունդն էր այդ, որ ես տեսա այստեղ, Հրազդանի հինավուրց ձորում։

Որքա՜ն շատ բան կարելի է ասել ու պատմել կոմունիզմ կառուցողների մեծ բանակի մյուս մարտիկների մասին, այն մարդկանց մասին, որոնք խիզախում են, պայքարում նոր կյանքի, նոր կենցաղի համար։ Այդպիսին է Նիկոլայ Աղաբեկյանի ղեկավարած ալյումինագործների բրիգադան, որն ընթացիկ տարվա անցած ամիսներին տնտեսել է տասնյակ հազարավոր կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, պլանից դուրս թողարկել մեծ քանակությամբ բարձրորակ ալյումին։ 1961 թվականի հաշվին է աշխատում Ձերժինսկու անվան մեքենաշինության գործարանի կոմունիստական աշխատանքի Մուշեղ Ավետիսյանի ղեկավարած բրիգադան։ Դրվատանքի բազում խոսքեր կարելի է ասել Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի գործվածքային № 2 ցեխի ենթավարպետ Երեմ Ասլանյանի հասցեին, որը հրաժարվելով բարձր վաստակից, կամավոր ստանձնեց ետ մնացող բրիգադայի ղեկավարությունը և այն հասցրեց կոմունիստական աշխատանքի կոչման։

Դրանք սխրանք են, խիզախություն, որ արվում են հանուն մարդկային երջանկության, հանուն կոմունիզմի հաղթանակի։

Բորբոքվում է մրցությունը ռեսպուբլիկայի համայնական դաշտերում։



կոմունիստաբար են ուզում աշխատել ու ապրել կոլտնտեսությունների ու սովխոզների հազարավոր աշխատողներ։

Արարատյան դաշտի ոսկե աշունն է։ Գնում ենք Արտաշատի շրջանի Շահումյան գյուղը։ Շրջում ենք առատ բերքի տակ ճկած Գրիգոր Բարսեղյանի ղեկավարած բրիգադայի մշակած դաշտում ու այգում։ Ո՞վ չի լսել նրա «Հարուստ հեկտարի համար» մեծ նախաձեռնության ու նրա բրիգադայի անդամների հայրենանվեր գործերի մասին։ Այժմ նրանք իրենց բազմաթիվ հետևորդներն ունեն կոլտնտեսություններում ու սովխոզներում. նրանց օրինակով «Հարուստ հեկտար» և «Հարուստ ֆերմա» ստեղծելու համար պայքարի են դուրս եկել բազմաթիվ մարդիկ։

Գրիգոր Բարսեղյանի և նրա ընկերների պայքարի նշանաբանն է՝ յուրաքանչյուր հեկտարը դարձնել լիարժեք և ավելի քիչ միջոցների ու աշխատանքի ծախսումով ստանալ բարձր բերք։ Բայց դրա համար անհրաժեշտ են գիտություն, կամք ու արիություն, որոնցով օժտված են հողի այս աշխատավորները։ Կոմունիզմը մթերքների լիություն է, հոգևոր կյանքի հարստություն. հենց դրան էլ ձգտում են Շահումյան գյուղի կոլտնտեսականները։

Ասյա Սևոյանը Ախուրյանի շրջանի Ազատանի կոլտնտեսության կոմունիստական աշխատանքի օղակի օղակավարն է, մի սովորական, բայց հերոս աղջիկ, որն իր օղակով անցյալ տարի հավաքեց շաքարի ճակնդեղի ռեկորդային բերք՝ հեկտարից 420 ցենտներ։ Բոլոր տվյալները կան, որ այս տարի օղակը հեկտարից կստանա 600—700 ցենտներ բերք։

Բարձր մթերատվության համար է պայքարում Կոտայքի կաթնաանասնապահական սովխոզի՝ Մամիկոն Բարսեղյանի ղեկավարած բրիգադան, որն արդեն կատարել է ստանձնած տարեկան պարտավորությունը՝ յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալով ավելի քան 2700 կիլոգրամ կաթ։

Գարնան վարար գետի պես հորդում է մեր ժամանակի հզոր կոմունիստական աշխատանքի բրիգադների և հարվածայինների շարժումը։ Դա աշխատանքային մասսայական հերոսություն է, համաժողովրդական շարժում։ Ապագայի բանբերները, ընթանալով չտրորված ճանապարհով, իրենց անձնվեր աշխատանքով ստեղծում են կոմունիստական հասարակության նյութա-տեխնիկական բազան. այդ պրոցեսում էլ ձևավորվում է կոմունիզմի մարդը։ Նրանք մարդկային երջանկության բանբերներն են, մեծ թռիչքի խիզախ մարդիկ։

# Նոր կյանքի ՁԱՅՆԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՆՈՐԱԴՈՒԶԸ

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Կամոյի շրջանի Նորադուզ գյուղի «Իլյիչի պատգամներ» կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս

*Սևանի գեղածիծաղ լճի ափին, Նորադուզի հովտում է գտնվում «Իլյիչի պատգամներ» կոլտնտեսությունը։*

*Հին է Նորադուզ գյուղը, շատ տխուր՝ նրա անցյալը։*

*Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը Նորադուզը հայկական մյուս գյուղերի նման անշուք, աղքատության ու խավարի մեջ խարխափող մի գյուղ էր, կիսախարխուլ, գետնափոր տներով, սովալլուկ ու տանջված գյուղացիներով։*

*Օրեցօր ավելացող հոգսերը, հարկերի ծանրությունը, քյոխվայի ու գզիրի մտրակը կուչ էին բերում անօգնական գյուղացուն, նրա հոգին լցնում ահ ու սարսափով։ Անցնում էին տարիները մեկը մյուսի հետևից, բայց աշխատավոր գյուղացու վիճակը չէր բարելավվում։*

*Այն ժամանակ Նորադուզի հողատարածությունները փոքր էին ու անբերրի։ Ցորենի հացը նորադուզցին երազում էր միայն տեսնում։ Անլուր թշվառություններով լի կյանքն ստիպել էր բազմաթիվ նորադուզցիների մշակ դառնալ հարուստների մոտ, կամ թողնել հայրենի գյուղը և մի կտոր հաց վաստակելու համար թափառել ցարական Ռուսաստանի տարբեր քաղաքներում։ Նորադուզում, ինչպես և հայկական համարյա ամեն մի գյուղում, գրագետ մարդոն «ճրագով էին ման գալիս», ինչպես ասում է ժողովուրդը։ Գյուղում տիրող հակասանիտարական վիճակի և բժշկական օգնության բացակայության հետևանքով մեծ չափի էր հասնում բնակչության մահացությունը։*

*Նորադուզցիների այդ ծանր ու տաղտկալի կյանքը փոխվեց միայն Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո։*

*1920 թվականի նոյեմբերից սկսած Նորադուզում էլ ստեղծվեց ազատ կյանք, նորադուզցիների սրտերը լցվեցին ուրախությամբ ու հրճվանքով։ Ազատագրված աշխատավորները սիրով սկսեցին նոր, ուրախ կյանքի կառուցումը, իսկ 1928 թվականին 18 չքավոր և միջակ տնտեսություններից կազմակերպվեց կոլտնտեսությունը։*

*Նախկինում սակավահող Նորադուզն այժմ ունի ընդարձակ տարածություններ, ձգվող տարբեր վարելահողեր, խոտառատ արոտավայրեր։ Պետությունը կոլտնտեսությանը հատկացրել է 4763 հեկտար տարածություն, որից վարելահողեր՝ 2401, ցանովի խոտհարք՝ 370, այգի՝ 13, արոտավայրեր 471 հեկտար։*

*Նորադուզի կոլտնտեսությունը Սևանի գոտու բազմաճյուղ խոշոր տնտեսություններից մեկն է։ Այն ունի 642 տնտեսություն, 3814 բնակչով։ Աշխատունակ կոլտնտեսականների թիվը հասնում է 1400-ի։ Կոլտնտեսությունը մշակում է՝ 1245 հեկտար հացահատիկ, 864 հեկտար կերային կուլտուրաներ, 66 հեկտար ծխախոտ, 75 հեկտար կարտոֆիլ և 20 հեկտար բանջարանոց։ Ունենք խոշոր անասնապահական ֆերմաներ, որտեղ կան 1600 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ (որից 550 կով), 6200 ոչխար (որից մայրեր 3500), խոզեր 700 (այդ թվում 50 մերուներ, իսկ միածին մերուները 60-ից գերազանցում են), թռչուններ 7500, որից բադեր 900 հատ և 400 մեղվաընտանիք։*

*Կոլտնտեսության առաջատար և հեռանկարային ճյուղը անասնաբուծությունն է, որի դրամական եկամուտները գերակշռում են մյուս ճյուղերից։ Իսկ բուսաբուծությունից առավել եկամտաբերը ծխախոտն է։ Մենք մշակել ենք միջոցառումներ տնտեսության բոլոր ճյուղերի վերելքի համար։*

*1953 թվականի հետ համեմատած մեր կոլտնտեսությունը նույնպես բուսաբուծության բնագավառում հասել է զգալի նվաճումների։ Հացահատիկի բերքատվությունն աճել է 2,4, ծխախոտինը՝ 2, բազմամյա խոտերինը՝ 4, կերի արմատապտուղներինը՝ 3 անգամ. կաթի արտադրությունն ավելացել է 90, բրդինը՝ 50 տոկոսով, ձվինը՝ 5 անգամ։ Նույն ժամանակաշրջանում կոլտնտեսության դրամական եկամուտն ավելացել է 2,5, անբաժանելի ֆոնդը՝ 3,5, իսկ կոլտնտեսականների դրամական եկամուտները՝ 5 անգամ։*

*Այս հաջողությունների մեծ մասը ձեռք է բերվել վերջին տարիներին, երբ պարտիայի ու կառավարության մի շարք միջոցառումների շնորհիվ ավելի բարձրացավ կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Յուրաքանչյուր բրիգադայի հատկացված են 2 թրթուրավոր, մեկ անիվավոր տրակտոր, 2 կոմբայն և համապատասխան գյուղատնտեսական գործիքներ։ Ամեն մի բրիգադա ունի 1350—1400 հեկտար հողատարածություն, որից 750—800-ը վարելահող է. բրիգադայում աշխատում են 370—375 կոլտնտեսական։*

*Մեր կոլտնտեսության տնտեսական կարողության պատկերը երևում է հետևյալ աղյուսակից.*

Կոլտնտեսության դրամական եկամուտներն ու նրանց բաշխումը ըստ տարիների

| | Փաստացի կատարված է | | | Պլանով նախատեսված է | |
|---|---|---|---|---|---|
| | 1953 թ. | 1958 թ. | 1959 թ. | 1960 թ. | 1965 թ. |
| Դրամական եկամուտները (հազ. ռուբ.) | 2075 | 4377 | 5081 | 7169 | 11207 |
| Հատկացված է անբաժանելի ֆոնդին (հազ. ռուբ.) | 352 | 845 | 908 | 1436 | 2760 |
| Ծախսեր արտադրական կարիքների համար (հազ. ռուբ.) | 380 | 611 | 687 | 688 | 900 |
| Կոլտնտեսականների աշխատանքի դիմաց վճարվելիք դրամական միջոցներ (հազ. ռուբ.) | 650 | 1950 | 3318 | 3768 | 5840 |

*Ինչպես տեսնում ենք, կոլտնտեսությունում աճում են դրամական եկամուտները։ Յոթնամյա պլանով նախատեսված է, 1958 թվականի համեմատու-*

թյամբ, դրամական եկամուտներն ավելացնել երեք անգամ, անբաժանելի ֆոնդը՝ 3 անգամ։

Նորադուզ գյուղի կոլտնտեսության կարևոր հեռանկարային ճյուղերից մեկը անասնաբուծությունն է. այդ ճյուղից այս տարի կստանանք 3825 հազար ռուբլու եկամուտ, իսկ 1965 թվականին՝ 5.711 հազար ռուբլու՝ 1953 թվականի 1.234 հազար ռուբլու փոխարեն։ Ահա համապատասխան աղյուսակը.

Կոլտնտեսության եկամուտներն ըստ հիմնական ճյուղերի

| | Փաստացի կատարված է | | | Պլանով նախատեսված է | |
|---|---|---|---|---|---|
| | 1953 թ. | 1958 թ. | 1959 թ. | 1960 թ. | 1965 թ. |
| Բուսաբուծությունից (հազ. ռուբ.) . | 732 | 2099 | 1790 | 3284 | 5498 |
| Տոկոսներով դրամական եկամուտների նկատմամբ . . . | 35,2 | 48 | 35,1 | 46,0 | 48 |
| Որից ծխախոտ . . . | 588 | 1867 | 657 | 2090 | 3724 |
| Տոկոսներով դրամական եկամուտների նկատմամբ . . . | 28,8 | 42,6 | 12,9 | 29,1 | 33,5 |
| Անասնաբուծությունից (հազ. ռուբ.) | 1234 | 1833 | 2787 | 3825 | 5711 |
| Տոկոսներով . . . . | 59.5 | 41.6 | 54.0 | 53 | 52 |

Խոտացանության ընդարձակման շնորհիվ ամրացավ հանրային անասնաբուծության կերի բազան։ Բավական է ասել, որ միայն այս տարի կուտակվել է 18300 ցենտներ ցանովի խոտ, այնքան, որքան նախատեսված էր կուտակել 1965 թվականին։

Կոլտնտեսականների ջանասեր աշխատանքով 1960 թվականի գարնանը 65 հեկտար եգիպտացորենի տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացանք 180—220 ցենտներ կանաչ մասսա, որը նախորդ տարիներին 100 ցենտներից չէր անցնում։

Երկրի առաջավոր կոլտնտեսությունների փորձից ելնելով, նախատեսվում է հետագա տարիներին այդ կարևոր կուլտուրայի ցանքը ավելացնել և այն կատարել քառակուսի բնային եղանակով, իսկ մշակությունը մեքենայացնել։

Այս տարվանից նախաձեռնեցինք թռչունների խոր ցամքարի եղանակով պահպանումը։ Եթե նախկին պայմաններում յուրաքանչյուր թռչնապահ հնարավորություն ուներ պահելու 200—300 հասակավոր թռչուն, ապա նոր պայմաններում մեկ թռչնապահը պահում է 1500—1800 թռչուն։

Նույնպիսի միջոցառումներ կիրառվում են տնտեսության մյուս բնագավառներում։ Վերացրինք խոզաբուծական ֆերմայում գոյություն ունեցող վանդակները, խոզանոցը վերակառուցեցինք և այժմ խոզերին կերակրում ենք խմբակային եղանակով. եթե առաջ մեկ խոզանոցում մեծ դժվարությամբ տեղավորվում էին 80—100 խոզ, որոնց սպասարկում էին 3—4 խոզապահ, ապա այժմ, երբ խոզանոցը ապահովված է ինքնակերամաններով և մի շարք այլ անհրաժեշտ պարագաներով, տեղավորել ենք 315 գլուխ խոզ, որոնց սպասարկում են երկու խոզապահ։ Այդ միջոցների կիրառումը օգնում է մսի ինքնարժեքի իջեցմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրական ծախսերի կրճատմանը։



Ներկայումս մշակում ենք կոլտնտեսության համար տնտհաշվարկային կանոնադրություն, որի հիման վրա տնտեսության բոլոր ճյուղերը կվարենք տնտհաշվարկային հիմունքներով, որն ավելի կբարձրացնի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և կնպաստի աշխատանքի որակի բարձրացմանն ու զուտ եկամտի ավելացմանը։

Կոլտնտեսությունը յոթնամյա պլանով նախատեսել է յուրաքանչյուր 100 հեկտար օգտագործվող հողատարածության դիմաց 1965 թվականին արտադրել միս՝ 84 ցենտներ, որից խոզի՝ 28, կաթ՝ 400 ցենտներ, բուրդ՝ 610 կիլոգրամ, ձու (100 հեկտ. հացահատիկային ցանքատարածության դիմաց)՝ 68000 հատ, անասնագլխաքանակը հասցնել—խոշոր եղջերավորներինը՝ 37, կովերինը՝ 18, ոչխարներինը՝ 173, խոզերինը՝ 31, թռչուններինը (100 հեկտար հացահատիկային տարածության դիմաց)՝ 580-ի։

Մտնելով սոցիալիստական մրցության մեջ՝ Նորադուզի արտելականները պարտավորվել են 1965 թվականի համար ստանձնած պարտավորությունները կատարել 2—3 տարում։ Խոզերի, ոչխարների, թռչունների գլխաքանակի ավելացման պարտավորությունները կատարվել են այս տարի։ Պարտավորվել ենք կաթի, կերային կուլտուրաների, կարտոֆիլի արտադրության բնագավառում ստանձնած պարտավորությունները կատարել 1961 թվականին, մսինը, ձվինն ու բրդինը՝ 1962 թվականին։

1959 թ. ձեռք բերած արդյունքները ցույց տվին, որ կոլտնտեսությունն իր պարտավորությունների կատարման ռեալ հնարավորություններ ունի։

Կոլտնտեսությունը ձեռք է բերել 8 թրթուրավոր, երկու տարբեր մարկաների եռանիվ տրակտորներ, որոնց ընդհանուր քարշող հզորությունը հավասար է 296 ձիաուժի։ Բացի այդ, ունենք 7 կոմբայն, 13 ավտոմեքենա, մեկ սիլոսահավաք կոմբայն, տրակտորի 9 գութան, 6 շարքացան, 3 սիլոսահատ ու այլ գյուղատնտեսական գործիքներ։ Հացահատիկի և կորնգանի մշակման ու բերքահավաքի աշխատանքները լրիվ մեքենայացված են։

1956 թվականի համեմատությամբ, 1959 և 1960 թվականներին մեքենայացված աշխատանքներն ավելի սեղմ ժամկետներում են կատարվել, որը խոշոր նշանակություն ունի լեռնային պայմաններում։

Հանրային տնտեսության զարգացման բնագավառում եղած հաջողությունները ձեռք են բերել մարդիկ, որոնք ամենուրեք աչքի են ընկնում իրենց ջանասեր աշխատանքով, նորը արմատավորելու հաստատակամությամբ։ Դրանք ո՛չ միայն ղեկավարներն են, այլև շարքային կոլտնտեսականները, որոնք իրենց կուլտուրայով շատ առաջ են գնացել։ Նրանք գործ ունեն ժամանակակից գյուղատնտեսական մեքենաների, ագրոզոոկանոնների, հողագործության առաջավոր եղանակների, հանրային խոշոր տնտեսության աշխատանքի կազմակերպման, պլանավորման ու վարձատրման պրոգրեսիվ ձևերի հետ, որոնք գնալով ավելի խոր արմատներ են գցում սոցիալիստական գյուղում։

1949 թվականին ծխախոտի բարձր բերք ստանալու համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրով Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհվեց Ասատրյան Սիրանին, Ասոյան Պարգիկին, Հարությունյան Ցենյային, իսկ Սիրուն Գրիգորյանը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ Աշխատանքի արիության համար մեդալով պարգևատրվեցին 11 կոլտնտեսականներ և կոլտնտեսուհիներ։

Բարձր ցուցանիշների են հասել և աշխատանքի մեծ փորձ ունեն տրակ-

տորիստ Սոս Անտոնյանը, որը 150—180 տոկոսով է կատարում արտադրական նորման։ Ջանասիրությամբ է աշխատում նաև Վահրամ Ստեփանյանը։

Նախրապահ Դոլյան Աթեյանի խնամած կովերի կաթնատվությունը գերազանցել է 2000 կիլոգրամից. հովիվ Ռաֆիկ Թադևոսյանը յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել է 105 գառ։ Նրա խնամած մեկ հասակավոր ոչխարի բրդատվությունը գերազանցում է՝ 3,5 կիլոգրամից։ Թռչնաբուծական ֆերմայի վարիչ Ավետիք Դանիելյանի ընտանիքի տարեկան վաստակը, պարգևատրումների հետ միասին, կազմում է 24.802 ռուբլի։

Ֆերմայի վարիչ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Սիրուն Գրիգորյանը յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը 1959 թվականին հասցրեց 1919 կիլոգրամի, իսկ այս տարի՝ 2000-ից կգերազանցի։

Խոզաբուծական ֆերմայի վարիչ Աշոտ Նավոյանի ջանքերի շնորհիվ ֆերմայի աշխատանքները վերափոխվել են։ Նա ընդօրինակել է երկրի առաջավոր խոզաբույծ Չիժի օրինակը և պարտավորվել է այնպես անել, որ խոզի մսի համախառն արտադրանքը գերազանցի 450 ցենտներից, որը 50 ցենտներով ավելի է նախատեսվածից, 3 անգամ ավելի անցյալ տարվանից։

Գյուղը աճել է նաև կուլտուրապես. գյուղացիներից բարձրագույն կրթություն ունեն 32, միջնակարգ՝ 300-ից ավելի մարդ. նրանք ո՛չ միայն Նորադուզում, այլև ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում անձնվիրաբար աշխատում են կոմունիզմի կառուցման համար։ Նորադուզն ունի միջնակարգ դպրոց, որտեղ սովորում են 750-ից ավելի աշակերտ։

Բոլորովին անճանաչելի է դարձել Նորադուզը, զգալի չափով ընդարձակվել է գյուղի տարածությունը, որի վրա բարձրացել են գեղեցիկ նորակառույց շենքեր։ Ռադիոֆիկացիայի են ենթարկված 670 տնտեսություն, իսկ 80-ը ունեն ռադիոընդունիչներ։ Գյուղի բոլոր շինարարական օբյեկտները լրիվ էլեկտրիֆիկացված են։

Գյուղն ունի ակումբ՝ ընդարձակ դահլիճով, երկու գրադարան՝ հարուստ գրականությամբ. 1959 թվականին կառուցվել են հիվանդանոց՝ բոլոր հարմարություններով, ծննդատուն, ինկուբացիոն կայան, որն այս տարի արտադրել է 60 հազար ճուտ։ Գյուղն ապահովված է լեռնային բարձրորակ սառը ջրով, որի մասին տարիներ շարունակ երազել էին գյուղի բնակիչները։ Կառուցված են 15 հանրային շենք՝ խոշոր եղջերավոր անասունների համար, 3 խոզանոց, 9 ոչխարանոց, 4 թռչնանոց, 1,4000 տոննա տարողությամբ հացահատիկի պահեստ, սիլոսի խրամատներ և աշտարակներ։

Նախատեսված է մոտակա տարիներում մասնագետ շինարարների միջոցով վերափոխել գյուղի տեսքը։ Կառուցվելու են միջնակարգ դպրոցի նոր շենք, բաղնիք, կուլտուրայի և սպորտի տուն, հյուրանոց, կասֆալտապատվեն գյուղի փողոցները։

Ոգեշնչված ՍՄԿԿ XXI համագումարի պատմական որոշումներով՝ «Իլյիչի պատգամներ» կոլտնտեսության անդամները արժանավայել կերպով են դիմավորում Սովետական Հայաստանի պանծալի 40-ամյակը։

---

# ԼՈՒՍԱԲԱՑԻՑ ՀԵՏՈ

## Գ. ԲԱԲԱՅԱՆ

Շամշադինի շրջանի Ղրղի գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ

Ղրղի գյուղը գտնվում է Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան մասում, բլրապատ լեռան լանջին։ Իր տերիտորիայով այն կից է Ադրբեջանական ՍՍՌ Թովուզի շրջանին։ Անցյալում ղըղեցիները հիմնականում զբաղվել են անասնապահությամբ, մասամբ՝ դաշտավարությամբ։ Մինչև 1930 թվականի կոլեկտիվացումը գյուղացիները բաժանված են եղել փոքր խմբերի. ոմանք ապրել են գյուղից 5—15 կիլոմետրի վրա ձգված տարածություններում՝ կիրճերում, անտառներում, որտեղ հնարավոր է եղել անասուններ պահել։ Մարդիկ բնակվել են գետնափոր տներում, իսկ գարնանը և ամռանը՝ անտառներում, անասունների մոտ։

Մինչև սովետական կարգերի հաղթանակը գյուղացիների ճնշող մեծամասնությունը տարվա մեծ մասը թափառել է գյուղից-գյուղ. աշխատել հարուստների ու աղաների հողի վրա, պահել նրանց անասունները, չարքաշ կյանքով մի պատառ հաց վաստակել։

Գյուղը (մոտ 1800—2000 բնակչով) դպրոց չի ունեցել. միակ գրագետ մարդը եղել է քահանան (Սարգիսը). որոշ չափով գրել կարդալ գիտեին և մի քանի հարուստների տղաներ։

Սովետական կարգերի հաստատումից հետո, ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեզ մոտ, հողը հանձնվեց գյուղացիներին։ 1930 թվականի ձմռանը մեր գյուղում կազմակերպվեց կոլտնտեսություն։ Աստիճանաբար բոլոր գյուղացիները համախմբվեցին գյուղատնտեսական արտելում. լեռներում, կիրճերում և դաշտերում բնակվող գյուղացիները տեղափոխվեցին գյուղ, բնակություն հաստատեցին կոլտնտեսության տերիտորիայում։ Ղրղին տարեցտարի ընդարձակվեց։

Լրացել է սովետական կարգերի հաստատման 40, կոլտնտեսության կազմակերպման 30 տարին։ Պատմության գիրկն են անցել անցյալի դառնությունները, փոխվել է կյանքը. հատկապես վերջին տարիներում հիմնովին փոխվել է գյուղը, նրա կուլտուրան, մարդկանց ապրելակերպը։

Գյուղն այժմ ունի շուրջ 750 տնտեսություն՝ 4000 շնչով. բոլոր գյուղացիները կոլտնտեսականներ են, աշխատում են հանրային արտադրության մեջ։ Կոլտնտեսությունը զբաղվում է անասնապահությամբ, այգեգործությամբ, դաշտավարությամբ, բանջարաբուծությամբ. ամեն տարի մշակվում են 600 հեկտար հացահատիկային կուլտուրաներ, 120 հեկտար ծխախոտ,

30 հեկտար կարտոֆիլ։ Կոլտնտեսությունն ունի խոշոր կաթնաապրանքային, խոզաբուծական, ոչխարաբուծական, թռչնաբուծական, մեղվաբուծական ֆերմաներ։

Ծխախոտագործությամբ կոլտնտեսությունն զբաղվում է դեռ 1932 թվականից։ Անցյալում ծխախոտից ցածր բերք էր ստացվում՝ հեկտարից 6—7 ցենտներ։ Վերջին տարիներս այդ կուլտուրան ավելի խնամքով և ագրոկանոնների համաձայն մշակելու շնորհիվ առատ բերք ենք ստանում։ Անցյալ տարի 120 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվեց 23 ցենտներ բերք։ Պետությանը վաճառած ծխախոտի դիմաց կոլտնտեսությունն ստացավ 3,2 միլիոն ռուբլու դրամական եկամուտ։ Այս տարի պարտավորվել ենք յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստանալ 26 ցենտներ բերք, ծխախոտից ստացվող դրամական եկամուտը հասցնելով 4,5 միլիոն ռուբլու։

Գառնիկ Զոբանյանի, Գարո Մատինյանի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Աբել Զարգարյանի ղեկավարած ծխախոտագործական օղակները պարտավորվել են յուրաքանչյուր հեկտարից ստանալ 30 ցենտներ բերք, իսկ ծխախոտագործներ Սիրուշ Ղանադյանը, Վարթո Ուզունյանը, Շուշիկ Լոբյանը, Ժենյա Զոբանյանը, Օլյա Դումանյանը պարտավորվել են միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից ստանալ 40 ցենտներ ծխախոտ. նրանցից շատերն արդեն կատարել են իրենց վերցրած պարտավորությունները։

Կոլտնտեսականների ջանասեր աշխատանքի շնորհիվ այս տարի մեր կոլտնտեսությունը պետությանը կվաճառի ավելի շատ ծխախոտի հումք, քան նախատեսված է 1965 թվականին։

Ծխախոտի բերքատվության բարձրացման բնագավառում աչքի ընկնող հաջողությունների համար Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը մեր կոլտնտեսությանը պարգևատրեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի կոմիտեն՝ մեկ բեռնատար ավտոմեքենայով, առաջին կարգի 3 դիպլոմներով։ Շատ առաջավորներ 3—4 անգամ պարգևատրվել են պատվոգրերով, թանկարժեք նվերներով։ Մեր ծխախոտագործները պարտավորվել են ամեն տարի պետությանը հանձնել 3000—3200 ցենտներ ծխախոտի լավորակ հումք։

Տնտեսության կարևոր ճյուղերից է այգեգործությունը։ Այգեգործությամբ լրջորեն զբաղվում ենք վերջին տարիներս, հատկապես ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից հետո։ Պլանավորված է յոթնամյակի վերջում այգիների տարածությունը հասցնել 120 հեկտարի, որից խաղող՝ 80, պտուղ՝ 40 հեկտար. տնտեսությունը ձեռնարկել է նոր միջոցներ այգիների տարածությունը ընդարձակելու պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Վերջին 2—3 տարիներում այգիների տարածությունն ընդարձակվել է. խաղողինը՝ 60 հեկտարով, պտղատու այգիներինը՝ 30 հեկտարով. այգիներում մշակվում են նաև թութ, նուռ, սերկևիլ, դեղձ, որոնց մշակությունը մեզ մոտ անցյալում զարգացած չի եղել։

Մեր կոլտնտեսության խաղողի այգիների զգալի մասը գցված է լարային սիստեմով, որը հեշտացնում է մշակությունը, հնարավորություն ստեղծում աշխատատար պրոցեսների մեքենայացման։ Այդ լրջորեն նպաստում է նաև բերքատվության բարձրացմանը, բանվորական ձեռքի, աշխատաժամանակի



կրճատմանը և արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Այգեգործության մեջ նոր մեթոդների, ագրոմիջոցառումների կիրառման շնորհիվ բարձրացել է խաղողի բերքատվությունը. կոլտնտեսության այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 100—120 ցենտներ խաղողի միջին բերք։

Այգիների տարածության ընդարձակումը և լավ բերքի ապահովումը խոշոր չափով բարձրացնում է տնտեսության եկամուտը, ամեն տարի այգիներից ստացվում է 1,5 միլիոն ռուբլու եկամուտ, իսկ յոթնամյակի վերջում այգիներից ստացվող եկամուտը կկրկնապատկվի և կհասնի 3—4 միլիոն ռուբլու։

Տնտեսության կարևոր ճյուղերից է անասնապահությունը։ Կովաբուծական ֆերման ունի 1750 գլուխ խոշոր եղջերավոր անասուն. միայն այս տարի 100 գլխով ավելացել է կովերի գլխաքանակը։ Լուրջ քայլեր են արվել անասունների մթերատվության բարձրացման ուղղությամբ։ Մինչև վերջին տարիներս ֆուրաժային կովից ստացվում էր՝ 500—600 լիտր կաթ, ցածր էր. նաև մյուս մթերքների արտադրությունը, իսկ ինքնարժեքը՝ բարձր։ Վերջին տարիներս ամբողջապես վերակառուցվեց անասնաբուծական ֆերմաների աշխատանքը։ Այժմ բոլոր անասնախմբերն ապահովված են հարմար տիպային գոմերով։ Խոշոր գործ է կատարված կերի կայուն բազա ստեղծելու ուղղությամբ։ Կոլտնտեսության ցանովի խոտերի տարածությունը հասնում է 300 հեկտարի։ Սիլոսի համար կատարվում է 150 հեկտար ցանք։ Կերի կուլտուրաների ցանքերը ագրոկանոններին համապատասխան մշակելու շնորհիվ լավ բերք է ստացվում։ Այս տարի եգիպտացորենից կպատրաստենք 30000 ցենտներ սիլոս։ Այս միջոցառումների շնորհիվ վերջին տարիներս զգալիորեն ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ 1959 թվականին ֆուրաժային կովի կաթնատվությունը հասավ 1400 լիտրի, իսկ այս տարի անասնապահները պարտավորվել են այն հասցնել 1500-ի։ Կաթի համախառն արտադրանքը որոշել ենք զգալիորեն ավելացնել, այսինքն՝ ավելի շատ, քան յոթնամյա պլանով նախատեսված է 1965 թվականի համար։ Այս տարի ամեն ամիս ավելի շատ կաթ է ստացված, քան 1952—53 թթ. ամբողջ տնտեսական տարում։ Առաջավոր կթվորուհիներ Նարգիզ Մխիթարյանը, Անահիտ Ասիլբեկյանը, Գեղեցիկ Բաբայանը, Ումիդ Մատինյանը և շատ ուրիշներ արդեն գերակատարել են կաթի արտադրության տարեկան առաջադրանքները։

Մտնելով Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-րդ տարեդարձի պատվին ծավալված մրցության մեջ՝ Ղրղիի կոլտնտեսությունը պարտավորվել է այս տարի պետությանը վաճառել 1600 ցենտներ միս՝ պլանով նախատեսված 1300-ի փոխարեն, 5600 ցենտներ կաթ՝ պլանով նախատեսված 4500-ի փոխարեն, 8,2 ցենտներ բուրդ, 140.000 ձու։ Ստանձնած այդ պարտավորությունները կկատարվեն ժամկետից շուտ։

Մսի արտադրության մեջ կարևոր տեղ է գրավում խոզի միսը։ Խոզաբուծական ֆերմայի աշխատողներն արդեն ստացել և պետությանն են վաճառել 300 ցենտներ լավորակ խոզի միս. խոզաբուծական ֆերմայում խոզերի գլխաքանակը հասնում է 1200-ի՝ պլանով նախատեսված 750 գլխի փոխարեն. առաջավոր խոզապահ Պավել Պողոսյանը յուրաքանչյուր մայր խոզից ստացել է 11 խոճկոր։ Բտող խոզապահ Շամշադ Ուզունյանի բտած խոզերը 10—11 ամսական հասակում միջին հաշվով կշռում են 75 կգ։

Մսի արտադրության մեջ արդեն իր տեղն է նվաճում թռչունի միսը։ Այս տարվա ութ ամսում արտադրվել է 3000 կգ թռչունի միս։ Միայն 1960 թվա-

կանին անասնապահները ավելի շատ կաթ են ստացել, քան անցած երկու
տարում, ավելի շատ միս, ձու, քան անցած 3 տարիներում։ Այս ամենը հնա-
րավորություն է տվել յոթնամյա պլանով նախատեսված՝ պետությանը վա-
ճառվող մսի քանակն ավելացնելու երկուսից երկուս ու կես անգամ։
Անասնապահության արտադրանքի ավելացմանը նպաստեց ֆերմաների
աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Կաթնաապրանքային ֆերմայի գո-
մերում դրված են կախովի ճանապարհներ, ավտոմատ խմոցներ։ Նավթի լամ-
պերին արդեն փոխարինում են էլեկտրական լույսերը։ Ֆերմային կից աշխա-
տում է արհեստական սերմնավորման կայանը, որը վերջին ժամանակներս է
ստեղծվել և նպաստում է անասունների ցեղի բարելավմանը։
Մեքենա-տրակտորային կայանի վերակառուցումից հետո կոլտնտեսու-
թյունն աստիճանաբար ձեռք բերեց զգալի քանակությամբ գյուղատնտեսական
մեքենաներ։ Տրակտորային բրիգադան համալրվում է նոր մեքենաներով։ Այն
ունի 11 տրակտոր, որոնցից 4-ը՝ ԴՏ 54 մարկայի, 4-ը ԿԱԴ 35, 3-ը՝ ԴՏ 28.
բրիգադան ունի 3 կոմբայն, որոնցից մեկը սիլոսի, 4-ը կալսիչ, 6-ը սիլոսա-
հատ՝ տարբեր մարկաների, 4 շարքացան, սերմաղտիչ ՎԻՄ մեքենա և այլն։
Տրակտորային պարկը տարվա ընթացքում կատարում է 4000 հեկտար փա-
փուկ վար։
Մեքենաների միջոցով աշխատանքներն ավելի որակով են կատարվում,
կրճատվել է բանվորական ձեռքը։ Եթե մի քանի տարի առաջ 5 հեկտար բան-
ջարանոցային կուլտուրաների վրա աշխատում էին 30—40 մարդ, ապա այժմ
նույնքան բանվորական ձեռքով մշակվում է կրկնակի, եռակի տարածություն
և ստացվում է ավելի շատ եկամուտ, այդ նպաստում է ինքնարժեքի իջեցմանը։
Այժմ խնդիր է դրված այգեգործական աշխատանքների 50—55 տոկոսը կա-
տարել մեքենաների օգնությամբ։
Տրակտորային բրիգադան ունի իր կայուն կադրերը։ Կոլտնտեսության մե-
խանիկ ինժեներն է Ռաֆիկ Գրիգորյանը. ինստիտուտն ավարտելուց հետո նա
աշխատում է այստեղ։ Առաջավոր տրակտորիստներ Աշոտ Գրիգորյանը, Սեր-
յոժա Թադևոսյանը, Հովհաննես Զարգարյանը ժամկետից շուտ կատարում և
գերակատարում են առաջադրանքները։
Բրիգադայի համար կառուցված է տիպային արհեստանոց՝ 3 բաժիններով.
ստեղծված են բոլոր հնարավորությունները մեքենաների վերանորոգումը տե-
ղում կատարելու համար։
Կոլտնտեսությունն ունի ավտոմեքենաների պարկ՝ 16 մեքենայով, որը
ժամանակին կատարում է բոլոր փոխադրումները։ Տնտեսության մեքենայա-
ցումը խոշոր չափով նպաստեց բարձր բերքի, անասնապահական առատ մթերք-
ների ստացմանը։ Տարիներ շարունակ կոլտնտեսությունը ստանում էր ցածր
բերք. հացահատիկ՝ հեկտարից 6—7 ցենտներ, կարտոֆիլ՝ 60 ցենտներ. վեր-
ջին տարիներում ստացվում է կայուն բերք՝ 14—15 ցենտներ հացահատիկ,
120—125 ցենտներ կարտոֆիլ։ Բերքատվության բարձրացման և անասնաբու-
ծական մթերքների արտադրությունն ավելացնելու շնորհիվ վերջին տարիներս
մեծ չափով ավելացել է կոլտնտեսության եկամուտը։ Եթե 1952—53 թթ. տըն-
տեսության դրամական եկամուտները հասնում էին մեկ ու կես միլիոն ռուբ-
լու, ապա 1958 թվականին դրանք հասան 5,5 միլիոնի, 1959 թվականին՝
6.638.000 ռուբլու։ Այսպիսով, տնտեսության դրամական միջոցները ամեն
տարի ավելացել են 600—700.000 ռուբլով։



Արտադրության մեքենայացման, բերքատվության բարձրացման և անասա-
նաբուծական մթերքների արտադրանքի ավելացման շնորհիվ զգալիորեն իջել
է արտադրանքի ինքնարժեքը։ 1954 թվականին մեկ աշխօր ծախսելով ստաց-
վում էր 70 կգ կարտոֆիլ, 10 կգ հացահատիկ, 4 կգ ծխախոտ, 30 լիտր կաթ,
իսկ այժմ մեկ աշխօր ծախսելով ստացվում է՝ 100 կգ կարտոֆիլ, 40 կգ հա-
ցահատիկ, 5 կգ ծխախոտ, 50 լիտր կաթ և այլն։ Իհարկե, մեզ մոտ գյուղա-
տնտեսական մթերքների ինքնարժեքը դեռևս զգալի չափով բարձր է։ Կոլտըն-
տեսության պարտիական կազմակերպությունն ու վարչությունը գործնական
քայլեր են անում արտադրության մեքենայացման մակարդակը բարձրացնելու
և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։
Միջոցների ավելացումը հնարավորություն ստեղծեց աշխօրերի արժեքը
բարձրացնելու։ Մի քանի տարի առաջ աշխօրի արժեքը (պետական մանրա-
ծախ գներով) հասնում էր 7—8 ռուբլու. 1958—1959 թթ. այն հասավ 22—23
ռուբլու, 1960 թվականին՝ մոտ 25 ռուբլու։
Կոլտնտեսության միջոցների մեծացման շնորհիվ ամեն տարի կապիտալ
շինարարությանը հատկացվում է մոտ մեկ միլիոն ռուբլի։ Դրամական միջոց-
ների ավելացումը հնարավորություն տվեց անասնապահական ֆերմաների հա-
մար կառուցելու 35 տիպային շենք՝ 9000 քմ տարածությամբ, որտեղ տեղա-
վորված են 6500 գլուխ անասուն։ Գյուղում կառուցված են նաև կոլտնտեսու-
թյան վարչության շենք, կինոթատրոնի դահլիճ, ընթացքի մեջ է կուլտուրայի
տան կառուցումը, որի համար նախատեսված է 2 միլիոն ռուբլի։ Այն շահա-
գործման կհանձնվի 1961 թվականին. գյուղի բնակչությունը փակ խողովակ-
ներով 14—15 կիլոմետր հեռավորությունից ստացել է խմելու լավորակ ջուր։
Գործում է հիվանդանոցը՝ 25 մահճակալով և 30 բուժ. աշխատողներով, հի-
վանդանոցն ունի վիրաբուժական բաժին և դեղատուն։ Հիվանդանոցի վարիչը և
վիրաբույժն է տեղացի երիտասարդ բժիշկ Անդրանիկ Զոբանյանը։
Գյուղն ունի կուլտուրայի տուն, հացի փուռ, ճաշարան, 4 առևտրական
կետ, գործում է փոստի բաժանմունքը, կա մանկապարտեզ, ստացիոնար կի-
նո, գրադարան, գրախանութ, միջնակարգ դպրոց, գյուղերիտ դպրոց։ Առաջի-
կայում շահագործման կհանձնվի կոլտնտեսային ճաշարանը։
Եթե նախառևոլյուցիոն շրջանում գյուղում կային կիսագրագետ մի քանա-
նա և մեկ-երկու առևտրական, ապա այժմ բարձրագույն կրթություն ունեցող-
ների թիվը հասնում է 60-ի, միջնակարգ մասնագիտական կրթություն ունե-
ցողներինը՝ 45-ի։ Ամեն տարի միջնակարգ և գյուղերիտ դպրոցները տալիս են
40—50 շրջանավարտ, որոնց զգալի մասը աշխատում է կոլտնտեսային ար-
տադրության մեջ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում այժմ
սովորում են Ղրղիից եկած 25 երիտասարդներ։
Դպրոցի դիրեկտորը ասպիրանտ Բաբկեն Աղաբաբյանն է։ Անասնաբուծա-
կան տեղամասի վարիչն է անասնաբույժ Աղամիր Զոբանյանը, խոզաբուծական
ֆերմայի վարիչը՝ անասնաբույժ Վ. Ասիլբեկյանը։
Կոլտնտեսության ղեկավար կազմի 50—55 տոկոսն ունի բարձրագույն,
թերի բարձրագույն, միջնակարգ կրթություն. միջնակարգ կրթություն ունեցող
շատ երիտասարդներ ու աղջիկներ աշխատում են արտադրության մեջ և ցույց
տալիս աշխատանքի լավ օրինակներ։ Էմմա Մխիթարյանը կթվորուհի է,
Հրանտ Զարգարյանը՝ անասնապահ, Իվան Մատինյանը՝ կեր մատակարարող,
Ժենյա Բեգյանը՝ ծխախոտագործուհի։

Հիմնովին փոխվել է գյուղը. բարձրացել են կոլտնտեսականների երկհարկանի, 3—4 սենյականոց տները: Միայն վերջին 4—5 տարում գյուղում կառուցվել են շիֆերով ծածկված 550-ից ավելի նոր, լուսավոր, երկհարկանի բնակարաններ:

Կոլտնտեսականները ջանք չեն խնայում սոցիալիստական մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները կատարելու համար: Կոլտնտեսության շատ աշխատողներ իրենց անձնվեր աշխատանքով առատ բարիքներ են ստեղծում հասարակության համար: Դրանցից են՝ օղակավար Գ. Զոբանյանը, Գ. Մատինյանը, Վ. Բաբասյանը, Ա. Զարգարյանը. իրենց ամրացված յուրաքանչյուր հեկտար ծխախոտի դաշտից նրանք տնտեսությանը տալիս են 43—44 հազար ռուբլու դրամական եկամուտ, մեկ հեկտար բանջարանոցային կուլտուրաներից 25—30 հազար ռուբլու եկամուտ: 70-ամյա Հովհաննես Լոբյանը մեկ ոչխարից ստանում է 3,5—4 կգ նրբագեղմ բուրդ: Մեղվապահ 75-ամյա Հարություն Մխիթարյանը մեկ մեղվաբնտանիքից տնտեսությանը տվել է 250—300 ռուբլու դրամական եկամուտ:

Ազնվորեն աշխատողները կոլտնտեսության կողմից լավ վարձատրվել են: Անասնապահ Գեղամ Մարդանյանը կնոջ հետ միասին վաստակած 732 աշխօրի դիմաց ստացել է 17.000 ռուբլի: Անդրանիկ Հայրապետյանը կնոջ հետ միասին ստացել է 25400 ռուբլի, ծխախոտագործ Գառնիկ Զոբանյանը կնոջ հետ միասին՝ 19500 ռուբլի և այսպես շատ ուրիշներ, որոնք դրամական բարձր եկամուտներ են ստացել, կառուցել են բնակարաններ, գնել տան համար անհրաժեշտ կահույք:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-րդ տարեդարձը մեր կոլտնտեսությունը դիմավորում է նորանոր փայլուն հաջողություններով:

---

# ԻՐԱԿԱՆԱՑԱԾ ԵՐԱԶՆԵՐ

## Ն. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Էջմիածնի շրջանի Աղավնատան «Պայքար» կոլտնտեսության վարչության նախագահ

Փոքր ու անհայտ գյուղ էր Աղավնատունը քառասուն-հիսուն տարի առաջ: Իր գետնախորշ տներով, նեղ, ծուռ ու կեղտոտ փողոցներով այն ավելի շատ ավերակի տպավորություն էր թողնում, քան շենի: Հարուստների ու աղաների այգիներն ու հողը մշակող չարքաշ գյուղացու կերածը գարե հացն էր ու սպասը, հագածը՝ կտավն ու տրեխը:

Գյուղում չի եղել դպրոց, բժշկական օգնության որևէ կայան:

Ավելի ծանր էր գյուղացիների վիճակը դաշնակցականների տիրապետության ժամանակ, երբ մոլեգնում էին սովն ու համաճարակը:

Բայց ինչպես մշուշապատ օրվան փոխարինում է պայծառ, արևաշող օրը, այնպես էլ հայ ժողովրդի համար թշվառություններով լի օրերին փոխարինելու եկավ երջանիկ կյանքը: 1920 թվականի նոյեմբերին հյուսիսային լուսաստղ փարոսն արևաշող կյանքի նոր ուղի բացեց Հայաստանի աշխատավորության համար: Աղավնատունցիների համար նոր կյանքն ավելի բերկրալի ու խոստումնալի դարձավ, երբ նրանք համախմբվեցին կոլտնտեսության մեջ և ձեռնամուխ եղան համայնական արտադրության գործին: Տարեցտարի ընդարձակվեցին խաղողի այգիները, աճեց հանրային հոտի գլխաքանակը և կոլտնտեսությունն առաջ գնաց ու հզորացավ:

Այժմ կոլտնտեսային արտադրության հիմնական ճյուղերն են՝ այգեգործությունը, բանջարաբուծությունը, անասնապահությունը, թռչնաբուծությունը:

Խաղողի այգիները գրավում են 161 հեկտար տարածություն: Այդ կուլտուրան համարվում է կոլտնտեսության հիմնական եկամտաբեր աղբյուրը, որից ստացվում է ամբողջ դրամական եկամտի մոտ 70 տոկոսը:

Այդ արժեքավոր կուլտուրան ագրոկանոններին համապատասխան մշակելու շնորհիվ 1959 թվականին ստացվեց 3 անգամ ավելի շատ բերք, քան անցած տարիներին: Միայն 1958—1959 թվականներին նորատունկ այգիները ընդարձակվել են 28 հեկտարով: Կոլտնտեսությունը յոթնամյակի վերջին տարում այգիների տարածությունը կհասցնի մոտ 290 հեկտարի. այդպիսով կկրկնապատկվի այգեգործությունից ստացվող եկամուտը:

Շատերին է հայտնի Աղավնատան կոլտնտեսության թռչնապահների հիանալի փորձը: Այժմ մեր կոլտնտեսությունում թռչնաբուծությունը դարձել է եկամտաբեր ճյուղերից մեկը և իր օգտավետությամբ չի զիջում անգամ խա-

ղողագործությանը։ Եթե 1956 թվականին կոլտնտեսությունն ուներ ընդամենը 210 թև թռչուն, ապա այժմ՝ 1960 թվականին, այն հասել է 34.000-ի։ Կոլտնտեսությունը այս տարի կստանա 750 հազար ձու և կարտադրի 12 տոննա թռչունի միս։ Կան բոլոր ռեալ հնարավորությունները, 1961 թվականից սկսած պետությանը վաճառվող մսի տարեկան պլանը կատարելու միայն թռչունի մսի միջոցով։

Բանջարա-բոստանային կուլտուրաների տարածությունը կոլտնտեսությունում կազմում է ընդամենը 16 հեկտար։ Եթե այդ կուլտուրայից ստացվող եկամուտը մի քանի տարի առաջ շատ աննշան էր, իսկ յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը չէր անցնում 40—50 ցենտներից, ապա այժմ այդ կուլտուրայից ստացվող եկամուտը կազմում է ավելի քան 450—500 հազար ռուբլի. յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը հասել է 600—650 ցենտների։

Մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու և մեքենաները կոլտնտեսություններին վաճառելու մասին պարտիայի որոշումից հետո մեր կոլտնտեսությունը գնեց ԴՏ—54, ԿԴ—35 և 3 ունիվերսալ տրակտորներ, իրենց կցվող գործիքների հետ միասին։ Միայն 1959 թվականին կոլտնտեսությունը գնել է ԴՏ—24 մեկ տրակտոր, եգիպտացորենի և հացահատիկի 2 կոմբայն, բամբակի և եգիպտացորենի 2 շարքացան, բուլդոզեր և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ Կոլտնտեսությունում սեփական ուժերով կառուցված է մեխանիկական նոր արհեստանոց՝ իր բոլոր հարմարություններով։

Եթե տարիներ առաջ բամբակի, եգիպտացորենի մշակության, առվույտի, հացահատիկի հնձի աշխատանքները կատարվում էին ձեռքով, ապա այժմ այդ կուլտուրաների մշակության և բերքահավաքի աշխատանքների մոտ 90 տոկոսը կատարվում է մեքենաների միջոցով։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունը 1959—1960 թվականներին խնայել է ավելի քան 28.000 աշխօր։

Արտադրության մեջ և հասարակական կյանքում քիչ չէ այն մարդկանց թիվը, որոնց ակտիվ ու սրտացավ աշխատանքի շնորհիվ տարեցտարի ամրապնդվում է կոլտնտեսությունն ու ավելանում նրա դրամական եկամուտը։

Կոլտնտեսականներ Արտաշ Հակոբյանը, Սահակ Բաբայանը, Կոստան Սարգսյանը, Պետրոս Խաչատրյանը, Պետրոս Հովակիմյանը, Պարսամ Թադևոսյանը, Գարսևան Գևորգյանը, Գուրգեն Սարգսյանը և շատ ուրիշներ, որոնց տարիքը 65, 75-ից անց է, արտադրության առաջավորներ են։ Նրանք աշխատանքը համարում են պատվի ու փառքի գործ, իրենց օրինակով երիտասարդության մեջ պատվաստում են սեր հայրենիքի և աշխատանքի նկատմամբ, կարգապահություն, հարգանք և ընկերասիրություն։

Երիտասարդ կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ Սարիբեկ Հարությունյանը, Հրանտ Ջոհրաբյանը, Սուրեն Շահբազյանը, Ալյոշա Հարությունյանը, Նոյեմզար Վարդանյանը, Քաղցրիկ Սիմոնյանը, Գրետա Գևորգյանը, Ցոլիկ Հայրապետյանը, Մարուսյա Մնացականյանը դարձել են կոլտնտեսության առաջավորներ, արտադրության անվանի մարդիկ։ Նրանք ո՛չ միայն գերակատարում են իրենց օրվա կամ տարեկան առաջադրանքները, այլև աշխատանքի լավագույն կազմակերպիչներ են և իրենց օրինակելի աշխատանքով վարակում են շատերին։

Կոլտնտեսականները հպարտությամբ են խոսում բրիգադավարներ Գեղամ Եղիազարյանի, Կնյազ Սահակյանի, Խաչիկ Վարդանյանի մասին։ Երկրորդ



տարին է, ինչ նրանց ղեկավարած յուրաքանչյուր բրիգադայի եկամուտը հասնում է մեկ միլիոն 200 հազարից մինչև մեկ միլիոն 500 հազար ռուբլու։ Իսկ երիտասարդ բրիգադավար Ռոզա Ավագյանը, որը ղեկավարում է բանջարաբուծական բրիգադան, այնքան է մասնագիտացել իր գործում, որ յուրաքանչյուր հեկտարից ստանում է 600—650 ցենտներ բերք։

Ինչպե՞ս չհպարտանալ կոլտնտեսության ֆերմաների վարիչներ Սուրեն Պարսամյանով և Սարգիս Մանուկյանով, որոնք մոբիլիզացնելով կոլտնտեսականների ուժերը և օգտագործելով նորանոր ռեզերվներ, տարեցտարի ավելացնում են անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Պարտիական կազմակերպությունը մոբիլիզացրել է աշխատավորության բոլոր ուժերը յոթնամյակը հինգ տարում կատարելու համար։ Յոթնամյակի առաջին տարում կոլտնտեսությունը պետք է արտադրեր 950 տոննա խաղող։ Կոլտնտեսականները, պատվով կատարելով ստանձնած սոցիալիստական պարտավորությունը, ստացան 1780 տոննա խաղող, յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ 1800 կգ-ի դիմաց 2100 կգ կաթ. 130.000-ի դիմաց արտադրվեց 157.000 ձու։ Գերակատարվեցին նաև պետությանը կաթի, մսի վաճառքի պլանը, ինչպես և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

Կոլտնտեսությունն այս տարի շրջանում առաջինը կատարեց և գերակատարեց բոժոժի արտադրության տարեկան պլանը։ Հունիսի 7-ին կատարվեց պետությանը կաթ վաճառելու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունը, նախատեսված 700 ցենտների դիմաց վաճառվեց 1140 ցենտներ կաթ։ Ժամկետից շուտ, օգոստոսի 26-ին կատարվեց նաև պետությանը մսի վաճառքի տարեկան սոցիալիստական պարտավորությունը։ Կաթի և մսի վաճառքը պետությանը շարունակվում է։ Ավելի քան կրկնակի անգամ կատարված է բանջարեղենի վաճառքի սոցիալիստական պարտավորությունը։ Ժամկետից շուտ կատարվեց նաև կաթի արտադրության սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունը։ Մեկ ֆուրաժային կովից նախատեսված 2100 կգ փոխարեն ստացվեց 2280 կգ կաթ։ Մինչև տարվա վերջը յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը կհասնի 2500—2600 կիլոգրամի։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ձվի արտադրությունն ավելացել է մոտ 6 անգամ. մինչև տարվա վերջը յուրաքանչյուր հավից կստացվի մոտ 170 ձու։

Մեր կոլտնտեսականները պատվով կատարեցին նաև կերի կուտակման տարեկան պլանը. նախատեսված 800 տոննայի դիմաց կուտակված է 1300 տոննա սիլոսի մասսա. յուրաքանչյուր հեկտարից հավաքված է 50 ցենտներ եգիպտացորենի հատիկ։ Սոցիալիստական պարտավորությամբ նախատեսված 500 տոննայի դիմաց կուտակվեց 620 տոննա խոտ։

Ապահովված է սոցիալիստական պարտավորությամբ նախատեսված ինչպես խոշոր, նույնպես և մանր եղջերավոր անասունների գլխաքանակի աճը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության բարձրացման, հանրային տնտեսության զարգացման շնորհիվ զգալիորեն աճել է կոլտնտեսության եկամուտը, անբաժանելի ֆոնդը, բարձրացել է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։ Այսպես, եթե 1957 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտը կազմում էր 2 միլիոն 876 հազար ռուբլի, ապա 1959 թվականին այն հասավ 5 միլիոն 258 հազարի։ Դրամական եկամտից անբաժանելի ֆոնդին հատկացված է 20—22 տոկոս։

*Այդ բոլորի շնորհիվ միայն վերջին 3 տարում գյուղում կառուցվել են կուլտուրական, տնտեսական շատ օբյեկտներ։ Շահագործման են հանձնված 2 նոր թռչնանոց, ավելի քան 15.000 գլուխ թռչունների համար, ոչխարանոց 1300 գլխի համար։ Ձեռնարկված է 20 մահճակալանոց նոր հիվանդանոցի շենքի կառուցումը, որը շուտով շահագործման կհանձնվի։*

*Շահագործման է հանձնված ակումբի նոր շենքը՝ 500 տեղանոց գեղեցիկ դահլիճով։ Մոտ 5 կմ տարածության վրա ասֆալտապատված է գյուղի ճանապարհը, ձեռք են բերված մոտ 300 հազար ռուբլու մեքենաներ և գյուղատնտեսական գործիքներ։ 1961 թվականին կոլտնտեսությունը կսկսի միջնակարգ դպրոցի նոր շենքի կառուցումը։*

*Սովետական իշխանության տարիներին լայն ասպարեզ բացվեց և հրաշալի նյութական պայմանները ստեղծվեցին աղավնատունցիների հոգևոր ուժերի ծաղկման համար։ Եթե նախասովետական գյուղը խարխափում էր անգրագիտության մեջ, ապա այսօր գյուղն ունի միջնակարգ մասնագիտական դպրոց՝ 268 աշակերտներով և 38 մասնագետ կադրերով։*

*Անճանաչելի է դարձել Աղավնատունը. ասֆալտապատ լայն փողոցներով անընդհատ երթևեկում են կոլտնտեսության և կոլտնտեսականների անհատական ավտոմեքենաները, կարծես թե նա փոքրիկ քաղաք է իր բազմամարդությամբ, գեղեցկությամբ և կուլտուրայի օջախներով։ Բոլորն ունեն ռադիոընդունիչներ, հեռուստացույցներ, ձեռք են բերել նոր տեսակի կահույք։ Աշխատանքից հետո կոլտնտեսականները շատ հաճախ կոլտնտեսության մեքենաներով մեկնում են շրջկենտրոն կամ մայրաքաղաք՝ իրենց կուլտուրական հանգիստն անցկացնելու։ Աղավնատունցուն կարելի է տեսնել Երևանի Օպերայի և բալետի պետական թատրոնում, Գ. Սունդուկյանի անվան և Երաժշտական կոմեդիայի թատրոններում։*

*Աղավնատունցիները հյուրասեր են. ցանկացած պահին նրանք կարող են բացել ճոխ սեղան՝ լցված մեր կոլտնտեսության բարիքներով։ Իսկ նրանց մառանները լի են պահածոներով, մրգերով և Աղավնատան ընտիր գինիներով։ Եկե՛ք մեզ մոտ և կհամոզվեք դրանում։*

---

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր).
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92 2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92 2—04—66, 2—02—24

*ՎՖ 04066* *Պատվեր 2658* *Տիրաժ 9500*

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 3/XI 1960 թ.։

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

*Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։*

